# ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

# ՀԱՅՈՑ, ՎՐԱՑ, ԱԲԽԱԶԱՑ ԵՒ ԱԼԱՆԱՑ

## Ի ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԷ.

*'Ի ռուս հրատարակութենէ, կատարելոյ ըստ արաբերէն օրինակի յուսուցչապետ Նիկողայոսէ Մառ,*

*Թարգմանեաց 'ի հայ*

*Միաբան Ս. Էջմիածնի ՅՈՒՍԻԿ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ*

*(Արտատպեալ «յԱրարատ» ամսագրէ)*




Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
Ելեքտրաշարժ տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի
1911

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Ազգ. Հայ Թարգմանչի . . . . . . . . . . . . . . 1.
Ս. Գրիգոր Լուսաւորչի չարչարանքը . . . . . . . . 4.
Հալածանք քրիստոնեաների դէմ և Ս. Հռիփսիմեայ փորձութիւնը, չարչարանքն ու նահատակութիւնը . . . 8.
Ս. Գրիգոր Լուսաւորչի վիրապից ելնելը, քարոզչութիւնը, նահատակ կոյսերի վկայարանների շինութիւնը . . 26.
Տրդատ Թագաւորը հրաւիրում է իւր տէրութեան իշխաններին, Աբխազների, Վրաց և Ալանաց Թագաւորներին գալ Վաղարշապատ . . . . . . . . . . . . . 48.
Մեհեանների կործանումն . . . . . . . . . . . . . 51.
Ս. Լուսաւորչի ընտրութիւնը և Կեսարիա գնալը Հայոց եպիսկոպոս ձեռնադրուելու համար . . . . . . . . 55.
Ս. Գրիգոր Լուսաւորչի վերադարձը. զօրքի, Թագաւորի և աւագանու մկրտութիւնը Եփրատ գետում, Բագաւանի մօտ . . . . . . . . . . . . . . . . . . 65.
Ս. Գրիգոր Լուսաւորիչը եպիսկոպոսներ է ձեռնադրում և ուղարկում վրաց, ալանաց ու աբխազաց աշխարհները և Հայաստանի զանազան գաւառները . . . . 70.
Ս. Գրիգոր Լուսաւորչի առանձնանալը. Նրա Վրթանէս և Արիստակէս որդիների Հայաստան բերուելը Կեսարիայից. Արիստակէսի տեղակալութիւնը . . . . . . . 73.
Ս. Լուսաւորչի և Տրդատ Թագաւորի Հռոմ գնալն ու վերադարձը . . . . . . . . . . . . . . . . . 74.
Արիստակէսի մասնակցութիւնը Նիկիոյ ժողովին . . 81.
Յառաջաբան ռուս հրատարակչի . . . . . . 83.
Վիրջաբան ռուս հրատարակչի—
Հայոց դարձի մասին զրոյցի զարգացումն. ազգայնական միտումն արդի հայ Ագաթանգեղոսի մէջ . . . . . . 86.
Աղճատաբանութիւններ ու վրացական բառեր հայ Ագաթանգեղոսում . . . . . . . . . . . . . . . . . 87.
Լուսաւորիչ բառի նշանակութիւնը . . . . . . . . 88.
Ագաթանգեղոսը վիպական զրոյց է, իսկ Լուսաւորիչը պատմական անձն, սահմանափակ շրջանակի գործիչ, և յայտնի է դառնում յոյն գրականութեան ու նրա միջոցով՝ արաբ գրականութեան մէջ Ի. դարից սկսած . . . . . . 90.
Ս. Գրիգորի պաշտամունքը վրաց մէջ, քաղկեդոնական և հակաքաղկեդոնական ազդեցութիւնը. Ս. Գրիգորի, որ-

պէս յոյն միսիոնների, պաշտամունքի վերաբերութեամբ յունական ազդեցութիւնը. Հայ եկեղեցու սիրիական ծագումն. 92.

Ս. Լուսաւորչի պատմութեան արաբական վերսիան 97.

Արաբական վերսիայի մէջ յիշուած ազգերը . . . . 99.

Արաբական վերսիայի լեզուական աղաւաղումները 100.

Արաբական վերսիայի ծագումն . . . . . . . . 102.

Ազգերի և ցեղերի վրացերէն յորջորջման ստուգաբանութիւնը . . . . . . . . . . . . . . . . . . . . . 105.

Յոյն եկեղեցու ազդեցութիւնը կրօնակից վրացական ցեղերի լեզուի մէջ . . . . . . . . . . . . . . . . 110.

Լազերի այլասեռումն յունական և վերջը Թուրքական ազդեցութեամբ: Վրացիների առաջին մետրոպօլիտը. Սեբաստիայի քառասուն մանկունք. Մատվիլի և Նաքալաքեվի վանքերը, Ս. Յովհաննու կարապետի պաշտամունքը վրաց մէջ . . . . . . . . . . . . . . . 112.

Արաբական վերսիայի յոյն բնագրի և Թարգմանութեան հանգամանքը ժամանակի և տարբերութեան վերաբերութեամբ: Տարբերութիւնը հայ Ագաթանգեղոսի և արաբ վերսիայի և դիտողութիւն այդ առիթով ամփոփուած 13 կէտերում . . . . . . . . . . . . . . . . . 115.

Ս. Գրիգորի վարքի արաբական վերսիայի մշակողը ըստ ազգի և դաւանութեան . . . . . . . . . . . . 123.

Հայերի ձգտումն Ագաթանգեղոսով և Ս. Մեսրոպի վարքով, պանծացնել իրանց ազգը հանդիսացնելով Ս. Գրիգորին՝ լուսաւորիչ և Ս. Մեսրոպին տառերի գտնող նաև շրջակայ ազգերի—վրաց աղուանից, աբխազաց . . 124.

Ս. Գրիգորի վարքի արաբ. վերսիայի և նրա յոյն բնագրի քաղկեդոնական Թարգմանչի նպատակը . . . . . 125.

Եզրակացութիւն . . . . . . . . . . . . . . . . 127.

Հայ Թարգմանչի ծանօթութիւնները . . . . . . . 129.

Յատուկ անունների ցանկ . . . . . . . . . . . . 134.

Վրիպակ . . . . . . . . . . . . . . . . . . 139.






## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

### Հայոց, վրաց, ափխազաց եւ ալանաց ի սրբոյն Գրիգորէ.

(Крещеніе армянъ, грузинъ, абхазовъ и алановъ Святымъ Григоріемъ)

(Արաբական վերսիա)

## ԱԶԴ

Ուսուցչապետ պ. Ն. Մառը 1902 թուին իր ճանապարհորդութեան ժամանակ Սինայի Ս. Եկատարինեայ վանքի Մատենադարանի № 460 արաբերէն ձեռագրից լուսանկարած լինելով վերև յիշուած վերնագիրը կրող հատուածը, 1905 թուին հրատարակում է ռուսերէն թարգմանութեամբ, յառաջաբանով, վերջաբանութեամբ և մանրամասն ծանօթութիւններով:

Անկասկած հայերիս համար չի կարող հետաքրքիր չը լինել այդպիսի մի հրատարակութիւն, քանի որ այն վերաբերում է մեր և մեր հարևան ազգերի քրիստոնեայ դառնալուն: Այս հրատարակութիւնը աւելի ևս հետաքրքիր է նրանով՝ որ բովանդակելով հայ Ագաթանգեղոսի պատմութեան ընդհանուր գծերը, աւելի սեղմ է և տեղ տեղ էլ բոլորովին տարբերւում է նրանից, որից պէտք է եզրակացնել, որ արաբական այս վերսիան չը լինելով հայ այժմեան Ագաթանգեղոսի թարգմանութիւնը չի կարող և նրա բնագիրը համարուել. այլ, ինչպէս պ. Ն. Մառն էլ նկատում է, եղել է Ս. Լուսաւորչի գործունէութեան մասին մի զրոյց, որը հաւանօրէն Ս. Մեսրոպ թարգմանիչը մշակել է յունասիրական ոճով և յետոյ, շատ յետոյ, հայ յունասէրները ազգային մտումներով ընդարձակել են և տուել են այժմեան խմբագրութիւնը, որ յայտնի է Ագաթանգեղոս անունով: Արաբական վերսիան էլ նոյն սկզբնագրից կատարուած յունարէն խմբագրութեան մի թարգմանութիւն է, սակայն առանց հայ ազգայնական մտումների: Այս մասին բանասէրների հարցասիրութեան լիովին բաւականութիւն է տալիս պ. Ն. Մառը իւր յառաջաբանով և վերջաբանով, որ հայ աշխարհաբառ թարգմանութեամբ դնում ենք գրքիս վերջում, որովհետև այդ յառաջաբանն ու վերջաբանը բացատրելով հրատարակութեան հանգամանքը, պարզում ու լուսաբանում են բաւական խնդիրներ մեր և մեր հարևան ազգերի անցեալի և իրար հետ ունեցած առնչութեան մասին:

«Մկրտութիւն հայոց, վրաց, աբխազաց և ալանաց ի Ս. Գրիգորէ» վերնագրով արաբական վերսիայի ռուսերէն թարգմանութիւնը վերածեցինք գրաբառ հայերէնի որպէս զի նրանք, որ չը գիտեն արաբերէն և ռուսերէն, իմանան թէ ինչ է այդ արաբական վերսիան, և ինչ առնչութիւն ունի Ագաթանգեղոսի հետ. եւ որ դիւրացնենք հայ Ագաթանգեղոսի հետ համեմատութիւնը. բացի սրանից, գրաբառը օտարերկրեայ հայ և օտարազգի բանասէրների համար աւելի մատչելի է և ընտել:

Հայերէնի վերածելիս, աշխատել ենք պահել ռուսերէն թարգմանութեան բառերի և մտքերի դասաւորութիւնը, համարելով այն հարազատ արտայայտիչ արաբ. վերսիայի, որի մասին կասկած չի կարող լինել ի նկատի ունենալով գիտնական պ. Ն. Մառի մանրազննին, և խղճական ուսումնականի յատուկ ճշդութիւնն ու զգուշաւորութիւնը: Այսպէս ղեկավարուելով՝ զանց արինք դնել ծանօթութիւնները, որ վերաբերում են ռուս թարգմանութեան հանգամանքներին և հայ ընթերցողների համար այնքան էլ կարևոր չեն, քանի որ իբրև բնագիր ծառայելու է մեզ ռուս հրատարակութիւնը. և որպէս զի ռուսերէնը որպէս բնագիր պատկերացնենք մեր թարգմանութեան մէջ, հայ ոճական գեղեցկութիւնը զոհել ենք. աշխատելով միայն չը մեղանչել լեզուի կանոնների դէմ:

Ռուս հրատարակիչը ձեռքի տակ է ունեցել 1882 թուին Թիֆլիզում հրատարակուած Ագաթանգեղոսը, և համեմատութեան համար դրել է նրա երեսահամարն ու տողաթիւը արմատի լուսանցքում. այդպէս վարուեցինք և մենք:

Արաբական վերսիան սկզբում պակաս է և սկսւում է 66-րդ երեսից: Ռուս հրատարակութեան երեսահամարները և աւելադրութիւնները մենք դրինք անկիւնաւոր փակագծերի մէջ իսկ մերը՝ կլոր: Մի քանի կարևոր ծանօթութիւններ կը դնենք գրքի վերջում: Լուսանցքի թուերից առաջ հմ. նշանակում է համեմատ:

Մեր թարգմանութիւնը հրատարակելու համար մի փոքրիկ նմուշ ուղարկելով խնդրեցինք պ. Ն. Մառի հաճութիւնը, և բաղդ ունեցանք ստանալ հետևեալ նամակը. «1909, մայիս 11. «.... Ձեր դիտաւորութեան իրագործումը, կարծեմ, շատերին, շատ շատերին բաւարարութիւն կը տայ մանաւանդ տաճկահայ գրասէրներին, որոնք բնաւ ռուսերէն չգիտեն: Խօսք չկայ, որ ես թոյլ եմ տալիս, մինչև անգամ ուրախութեամբ իմացել եմ գործից, այսինքն թարգմանութեան վերջանալը: Ի հարկէ մանրակրկիտ բանասիրական ծանօթութիւններս արաբերէն բնագրի վերաբերութեամբ են, աւելորդ են ձեր ընթերցողների համար: Թարգմանութեանդ լեզուն սահուն է և հեշտալուր . . .»

Յուսիկ արքեպիսկոպոս.

## [ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ, ՀՌԻՓՍԻՄԵԱՑ ԵՒ ԳԱՅԻԱՆԵԱՑ]

. . . . . .

. . . . . .

[Եր. 67] Պատասխանի ետ նմա երանելին և 72, 1.
ասէ. «Արդարև, աներևոյթ գործ է այդ Աստուծոյ
իմոյ։ «Սերմանի անարգութեամբ և յառնէ զօ-
րութեամբ, սերմանի տկարութեամբ և յառնէ
ողջամբ» ա։ «Լալով լայցեն, որք սփռեն զսերմն» բ,
որ մեկնի. չարչարանօք, վշտօք և տանջանօք մի-
անգամ կրեմք զայն վասն Աստուծոյ, բայց յոր-
ժամ հասանեն հունձք՝ ժողովեմք զխրձունս ուրա-
խութեան, խնդութեան և ցնծութեան։

Ցայնժամ ասէ Թագաւորն. կափեցէք զգլուխ 72, 19.
դորա։ Եւ ասէ ցերանելին. «Ա՞յս է ուրախու-
թիւնն քո, զորմէ խօսէիր։ Եւ սուրբն ասէ ցնա.
«Արդարև, այդ է ուրախութիւնն իմ։ Եթէ ոչ
քրտնիցի մշակ, ոչ համբերիցէ խորշակի արե-
գական՝ ցորենոյն իւրով ոչ կարէ ցնծալ»։ Թա-
գաւորն ասէ. «Վասն այդորիկ մնայ քեզ քրտնիլ
ի ժամուս յայսմիկ և տոչորիլ»։

Եւ ահա հրամայեաց, զի բերիցեն քացախ և 73, 7.
բորակ, և արկցեն զսուրբն ի վերայ թիկանց,
զգլուխն ճմլիցեն ի մամուլ պրկեալ, առցեն
փողս եղեգան և փչիցեն ի ռնգունս նորա աղ
և բորակ խառնեալ ի քացախ՝ առ ի լնուլ յուն-
չըս։ Եւ կատարեցին զհրամանն։

---

ա. Ա. Կորնթ. ԺԵ. 43։ | բ. Սաղմ. ՃԻԵ. 6.

73, 12. Եւ հրամայեաց բերել պարկս, և լնուլ մոխրով հնոցի, մուծանել զգլուխ նորա ի պարկն յայն և զբերան պարկին կապել շուրջ զպարանոցաւն նորա, զի մի շնչեսցէ և ի շնչելն՝ զմոխիրն ժողովեսցէ ի ռնգունս։ Եւ եթող զնա յայս տանջանս զաւուրս վեց։ Յետ այսորիկ հրամայեաց ածել զնա առ ինքն և քակել զպարկն ի պարանոցէն։

73, 22. [եր. 69] Յայնժամ թագաւորն ասէ ցնա. «Ուստի՞ եկիր։ Համարիմ եթէ եկեալ իցես յարքայութենէն, զորմէ խօսէիր մեզ»։ Ասէ Գրիգոր. «արդարև եկի յարքայութենէ՝ զորմէ պատմէի քեզ. այժմիկ Աստուածն իմ արժանի արար զիս տանջանաց վասն անուան իւրոյ։ Եւ յիրաւի, պատրաստեաց նա ինձ զարքայութիւն, որ ոչ անցանէ։ Եւ վասն մոխրոյս՝ պատրաստեաց նա ինձ անթառամ ծաղիկս, և փոխանակ քացախոյն՝ անսպառ ուրախութիւնս»։

74, 8. Յայնժամ լցաւ թագաւորն բարկութեամբ, և
75, 4. հրամայեաց կախել զնա և քերել զերկոսին կողս նորա երկաթեայ քերչօք։ Եւ լցաւ վայրն, ուր զերանելին տանջէին, արեամբ նորա։ Յայնժամ ասէ նա ցսուրբն. «Հնազանդիցիս այժմ ինձ, և առնիցես զոր կամիմս, ո՛վ Գրիգոր»։ Ետ պատասխանի երանելին և ասէ. «Պահեմ զուխտն Աստուծոյ իմոյ, զոր ուսեալ եմ ի մանկութենէ իմմէ. Աստուծոյ, որ կարէ փրկել զիս յամենայն նեղութեանց և ի վշտաց։ Իսկ դու, քանզի ոչ ճանաչես զնա, հրամայես վարիլ ընդ իս սպառնալեօք, զի հեռացեալ ի բարեպաշտութենէս և ի սիրոյս, որ առ Քրիստոս՝ մնայցեմ ի յաւիտենական տանջանս»։ Յայնժամ թագաւորն ասէ ցնա. «Ո՞ւր է Աստուածն քո։ Եկեսցէ այժմ և փրկեսցէ զքեզ ի ձեռաց իմոց»։

Եւ հրաման ետ Թագաւորն բերել և սփռել 75, 18.
տատասկս ի վերայ սալայրկին։ Եւ հրամայեաց
արկանել զուրբն ի մերկուց ի վերայ նոցա, և
ճնշել ի վերուստ զի տատասկքն անցանիցեն
ընդ մարմին նորա։ Եւ եղև այնպէս։

Եւ ի վաղիւն կոչեաց զնա [արքայ] և ասէ 76, 3.
ցնա. «Զարմանամ և յոյժ ի վերայ քո, զի դու
ցայս վայր կենդանի մնացեր և ոչ ընկճեցար ի
բազում տանջանացդ զորս պատրաստեցի քեզ,
և ոչ այսչափ միայն, այլ խօսիս դեռ յանդգնաբար
թէ ցանկաս մահուան, մինչդեռ ի բազմաց հետէ
ի տանջանս ես»։

Յայնժամ սուրբն Գրիգոր ասէ. «Ոչ իմով զօ- 76, 9.
րութեամբ է զի տանիմ ես այսց չարչարանացս, որ
ի քէն, այլ զօրանամ յԱստուած իմ ի Յիսուս
Քրիստոս։ Նա է, որ զօրացուցանէ զիս ի սէր
իմ որ առ Նա, զի գիտասցես, եթէ «ոչ ոք կա-
րէ մեկնել զիս ի սիրոյ Նորա» **, նոյնպէս և զայ-
նոսիկ, որք յուսան ի Նա. քանզի տայ Նա զօ-
րութիւն և կարողութիւն՝ որք մահուամբ չափ
տանջին վասն Նորա։ Յամօթ լիցին՝ որոց ոչ
գոն օրէնք. կեղծաւորք, որպէս եսդ, գիտասցեն
զտկարութիւն իւրեանց և ամաչեսցեն յաւուր
գալստեան Նորա»։

Եւ վասն այսորիկ յոյժ զայրացաւ Թագաւորն 76, 23.
Տրդատ և հրամայեաց դնել ընդ ոտիւք նորա
երկաթեայ սանս և երկաթեայ բեւեռօք պնդել.
և կախեալ կայր գլխիվայր զաւուրս երիս։ Եւ
եղև այնպէս։

Յառաջ քան զվախճան երրորդի աւուր հրա- 77, 4.
մայեաց [արքայ] ածել զնա և ասէ ցնա. «տե-
սանես, ով Գրիգոր, զի ոչ փրկեաց զքեզ մնոտի
հաւատն քո, զորմէ պատմէիր. և ոչ ազատեաց

** Հռոմ. ը. 39.

զքեզ ի ձեռաց իմոց։ Ասէ Գրիգոր. «Այդուիկ իսկ գիտացի զտկարութիւն զօրութեան քո, ով բռնաւոր, զի ոչ կարացեր մեկնել զիս ի սիրոյ որ առ Աստուածն իմ, և ոչ կարացեր պատիր բանիւ քով զառածանել զմիտս իմ ի սիրոյ Նորա։ Ոչ երկնչիմ ի տանջանաց քոց. քանզի զօրութեամբ [71] Աստուծոյ իմոյ Յիսուսի Քրիստոսի պատերազմեցայ ընդ թշնամւոյն, որ և մարտնչի ընդ ճշմարտութեան։ Եւ զմարմինն իմ ետու ի տառապանս և ի չարչարանս՝ քանզի գիտեմ, եթէ կամիցիմ կամ ոչ՝ ոչ զերծանիցիմ յայնմանէ, եթէ քակտելոց է եղծանելի մարմինս, և պարտի ապականիլ հնացեալ և եղծանելի մարդոյն, մինչև եկեսցէ Փրկիչ և Արարիչն ամենայնի և նորոգեսցէ միւսանգամ զհնացեալ մարդիկ, որք կեցին յաշխարհի ի խաղաղութեան և ըստ հոգւոյ, որբութեամբ և փառաբանելով, ճշմարտութեամբ և երկիւղիւ,—զայնոսիկ նորոգեսցէ զարդարեսցէ և յարուսցէ. իսկ զհեթանոսս, զամբարիշտս և զկռապաշտս, որք ոչ երկնչին յԱստուծոյ, առաքեսցէ յանշէջ և ի յաւիտենական հուրն և հատուսցէ նոցա ըստ յանցանաց նոցա, մանաւանդ այնոցիկ, որք նման քեզ պաշտեն զդրօշեալս»։

78, 11. Եւ յորժամ լուաւ թագաւորն զայս, բարկացաւ յոյժ և ասէ ցնա. «Բան քո, եթէ Աստուած քո նորոգեսցէ զիս յօրն վերջին, ոչ խռովեցուցանէ զիս. այլ զայրանամ, զի Նա, որպէս ասացերդ ցիս, առաքելոց է զիս ի հուրն անշէջ։ Բայց ես փութայց պատուել զքեզ յայսմ իսկ աշխարհի, չիջանելի հրով. զի տեսից, փրկեսցէ զքեզ Աստուածն քո»։

78, 18. Յետ այնորիկ հրամայեաց թագաւորն հալել արճիճ յերկաթեայ կաթսայի, և արկանել զնա անդ։ Եւ եղև այնպէս։ Եւ յորժամ ընկեցին զնա,

ճարպն ամենայն ճենճերեցաւ արտաքս, և սուրբն մնաց կենդանի և զգաստ՝ պատասխանի՛ առնելով բանից արքային։

Եւ յոյժ զարմացաւ թագաւորն ընդ համբե- 78. 24.
րութիւն Նորա, և ասէ ցնա. «զիարդ զգաս այժմիկ
զքեզ ի հոգի և ի մարմին, զի այսքան չարչա-
րիս յինէն զանազան տանջանօք»։ Պատասխանի
ետ սուրբն Գրիգոր և ասէ. «Ոչ ապաքէն ասացի
քեզ, զի դու փորձես զմեզ, զծառայքս Աստու-
ծոյ ճշմարտի, իսկ Նա տայ մեզ զօրութիւն և
համբերութիւն՝ առ ի յաղթել առնել զթշնամիս
Նորա և զհակառակորդս, որպէս եսդ։ Եւ յայսմ-
հետէ պատրաստեալ ուխտիւքս այսորիւք և հովա-
նաւորեալ շնորհօք, զոր Նա, վասն անուան իւրոյ,
պարգևեաց մեզ ամենեցուն սիրողացս զՆա
ի հաստատանել մեզ յերկրորդ գալստեան Իւրում.
քանզի զօրութեամբ Նորա տանիմք զառն չար-
չարանաց վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի»։

Յայնժամ թագաւորն հրամայեաց կապել 80, 15.
զձեռս և զոտս Սրբոյն Գրիգորի և կախելով
զպարանոցէ Նորա շղթայ տանել ի քաղաքն Ար-
տաշատ և ընկենուլ ի վիրապն խոր լի օձիւք և
կարճօք, զի սողունքս այսորիկ ուտիցեն զնա։ Եւ
եղև այնպէս։ Յետ ժամանակաց թագաւորն Տըր-
դատ չուեաց յայս քաղաք ի ձմերել։

Եւ եկաց երանելին յայնմ վիրապի զամս հնգե- 82, 4.
տասանս. Կերակուր, ըմպելի և հոգք վասն Նորա
լինէին ողորմութեամբ Աստուծոյ, իսկ սողունք
ոչ մերձենային ամենևին ի Նա։

Եւ յետ այսորիկ թագաւորն Տրդատ հրամա- 82, 20.
յեաց պետաց և կուսակալաց իւրոց շրջել ընդ
ամենայն երկիրն, որք ընդ իշխանութեամբ իւ-
րով, և հրամայեաց մարդկան բերել զոհս աս-

տուածոց և երկիրպագանել նոցա. և ամենեցուն, որք ոչ բերէին զոհս և ոչ երկրպագանէին աստուածոց, կապէին զձեռս [եր. 73] և զոտս և ածէին առ թագաւորն։ Եւ սաստկանայր բարկութիւն նորա ի վերայ հաւատացելոց ի Քրիստոս, և ասէ. «Սոքա են, որք արգելուն զժողովուրդն երկրպագել կռոցս։ Եւ խոստանայր պարգևս մեծամեծս իւրաքանչիւրում, որ յանդիման առնիցէ քրիստոնեայ. իսկ թագուցանողացն սպառնայր սոսկալի տանջանս և մահ չարաչար «ըստ նմին օրինակի, որպէս [ասէր նա] արարի ընդ սիրելին իմ Գրիգոր, որ ոչ անսաց ինձ և յետ զանազան տանջանաց արկի զնա ի վիրապ զի մեռանիցի ի ոողնոց, և ոչ անխնայեցի ի սէր նորա վասն երկիւղին՝ որ առ աստուածս։ Իսկ դուք ընկալարուք զփրկութիւն յաստուածոց վասն երկիւղին ձերոյ»։

88, 5. Եւ յայնմ ամի թագաւորն Դիոկղետիանոս ի խնդիր կնոջ եղև զի ամուսնասցի ընդ նմա. և յղեաց նա առ ամենայն պատկերագործս, որք յամենայն ի պետութեան իւրում և հրամայեաց նոցա շրջել ընդ ամենայն երկիր իւր և ուր գտանիցեն կոյս գեղեցիկ, նկարիցեն զնա և զպատկերն հասուցանիցեն առ նա։

88, 18. Եւ իջին նոքա ի Հռոմ. յետ որոյ գնացին ի վանս՝ որ անդ, ուր կրօնաւորքին կանայք. էր նոցա, վանամայր, զոր կոչէին Գայիանէ։ Կերակուր նոցա յամենայն ի կեանս նոցա չէր ինչ ի ցորենոյ, այլ թրջեալ ոլոռն և բոյս։ Ցանգ յաղօթս կային Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ի վանդ էր կոյս մի Հռիփսիմէ անուն՝ ի զարմէ հաւատացեալ թագաւորաց։

88, 1. Հրեշտակք անհաւատին և պատկերագործք իբրև տեսին զկոյսն և [հայեցան] ի գեղեցկութիւն նորա, այս [տեսիլ, տեսարան] յոյժ զարմացոյց

զնոսա։ Յայնժամ նկարեցին զպատկեր և զգեղեց-
կութիւն նորա և ընդ այնմ [ընդ պատկերին]
գնացին առ Թագաւորն։

Եւ Թագաւորն իբրև ետես զպատկերս զայս, 89, 7.
յոյժ զարմացաւ։ Ուստի առաքեաց արս բերել
զնա առ ի առնել զնա ի կին։ Եւ հրամայեաց ամե-
նայն պետաց, աւագաց և իշխանաց իւրոց գալ
ի Հարսանիս։

Եւ իբրև հայեցան սուրբքն ի Թշնամւոյն չարա- 89, 20.
կամութիւն առ նոսա և զնետս, զորս լարէին 90, 28.
առ ի մարտնչել ընդ նոսա, կային յաղօթս
արտասուօք և հեծութեամբ, խնդրելով յԱստու-
ծոյ զօրացուցանել զնոսա և փրկել ի փորձու-
թենէ։ Եւ որպէս ի միոյ բերանոյ՝ ասէին.

«Ո՜վ Տէր տերանց, Աստուած՝ աստուծոց, 91, 8.
Թագաւոր յաւիտենից և Աստուած երկնի, որ
արարեր քոյով բանիւ զլոյս, զերկինս և զերկիր.
և զարդարեցեր զնոսա. որ ստեղծեր զմարդ
ի հողոյ, զարդարելով զնա իմաստութեամբ և
շնորհօք, և կարգեցեր ի վերայ ամենեցուն, —
զօրութիւն ապաւինելոցս ի Քեզ՝ Դու ես։

«Օգնեա մեզ, մինչ դարձեալ ի պատերազմի 91, 17.
եմք, և փրկեա զմեզ յայսմ չար փորձութենէ և
յորոգայթից սատանայի, զի փառաւորեսցի ա-
նուն քո. և բարձրասցի եղջիւր եկեղեցւոյ Քո.
զի և մեք վերստին արժանասցուք հասանել ի
նաւահանգիստ արքայութեան Քո. զի մի պա-
կասեսցի իւղ լապտերաց մերոց. մի շիջցի լապ-
տեր հաւատոյ մերոյ. մի հասանիցէ լուսոյ շուղաց
մերոց խաւար գիշերոյ. մի դարձուսցուք զոտն
մեր ի նշուլից լուսոյ Քո. մի կուրասցուք աչօք
և մի լիցուք օտար ի ճառագայթից ճշմարիտ
լուսոյ քո. մի յափշտակեսցէ մահաբեր արծուին

զսերմն[ա], զոր սերմանեաց ի մեզ միածին Որդին Քո Տէր մեր [եր. 75] Յիսուս Քրիստոս մի աղարտեսցէ պատառող գազան զամբծութիւն հօտի Քո. մի զօրասցի յափշտակիչ գայլն ի վերայ գառանց քոց. մի ապականեսցէ զնոսա և մի ցրուեսցէ զհօտ եկեղեցւոյ Քո»։

92, 16. «Դու, Տէր Աստուած, որ առաքեցեր զմիածին Որդի Քո վասն փրկութեան տիեզերաց, և իբրև եկն՝ լցոյց խնդութեամբ զաշխարհ, և պամենեսեան կոչեցեր Իսրայէլ ըստ անուանս. Եւ մեք պահեցաք զպատուիրանս Քո, զորս պատուիրեցեր։ «Եւ յորժամ հալածիցեն զձեզ ի քաղաքիս յայսմիկ փախիջիք յայլ. ոչ կարիցեն սպառել զքաղաքս Իսրայէլի, մինչև եկեսցէ Որդի մարդոյ»[բ]։

92, 24. «Պահեա՛, Տէր, զանձինս յուսացելոց ի Քեզ, զի մի անօրէնք պղծեսցեն զմեզ։ Մի տար շանց իշխանութիւն ի վերայ սրբութեան մերոյ, և արանց, որք որպէս զխոզս են,—ի վերայ մարգարտի կուսութեան մերոյ[գ]։ Մի շարժեսցէ հեղեղ մեղաց զհիմունս եկեղեցւոյ Քո սրբոյ, որ շինեալ է յառաքելոց քոց հաստատուն հաւատովք ի վերայ անշարժ վիմի[դ], և ի գլուխ անկեան որոյ կայ Տէր Մեր Յիսուս Քրիստոս»[ե]։

93, 17. «Եւ Դու, ով Տէր, նայեաց յերկնից ի սրբութենէ Քումմէ, և հաստատեա՛ զմեզ ի ճշմարտութեան Աւետարանի Քո, և տո՛ւր մեզ գնալ ըստ կամաց Քոց։ Եւ եղիցի մեզ մասն, որպէս խոստացար, ի լոյս հարսանեաց յարկի Քո։ Ա՛ռ զմեզ ընդ հովանեաւ թևոց Քոց։ Հաճոյ եղեալ Քեզ, արժանի լիցուք ըմպել ի բաժակէն մար-

---

ա. Մատթ. ժգ. 4։

բ. Մատթ. ժ. 23

գ. Մատթ. է. 6։

դ. Մատթ. է. 24։

ե. 1. Պետր. բ. 6։

տիրասութեան առ ի ընդունել զպսակն արդարութեան յաւուր գալստեան Քո փառօք»։

Եւ յորժամ կատարեցին նոքա զաղօթս, երա- 94, 9.
նելի կոյսն Հռիփսիմէ, մայր վանիցն Գայիանէ
և ժողով կուսանաց ուխտս եդին պահպանել
զկուսութիւն իւրեանց ի պղծութենէ։ Յայնժամ
փախեան և եկին ի Հայաստան աշխարհ ի տե-
ղին կոչեցեալ Արարատ։ Զև ևս մտեալ ի քա-
ղաք՝ մերձեցան յայգի խաղողոյ, ուր կայր հըն- 95, 5
ձան և թաքեան անդ։ Գործովք ձեռաց իւրեանց
հոգային զաւուրն պարէն. առաքէին զձեռա-
գործս և ի փոխարէն գնէին ի քաղաքի կերա-
կուրս։

Եւ եղև ի Հռովմ, յամենայն կողմանս Հռով- 96, 15.
մայ և ի մէջ այլ ազգաց խռովութիւն մեծ ի
պատճառս նոցա։ Եւ արքայ ի ձեռն հրեշտակաց
իւրոց յղեաց թուղթ վասն սոցա առ արքայն
Հայաստանի Տրդատ, որ ընկալաւ զթուղթն մե-
ծաւ խնդութեամբ. և ի թղթի [գրեալ] էր այս ինչ։

«Ի Դիոկղետիանոսէ կայսերէ, աշխարհակալ 97, 1.
արքայէ, Տրդատայ, բարեկամի իմում և եղբօր,
Ողջոյն ի մերմէ տէրութենէ [մեծութենէ]։

«Գիտակ առնեմք զքեզ ամենայնի, որ ինչ գոր- 97, 3.
ծեցաւ ի մէնջ առ քրիստոնեայս, որք պաշտեն զխաչեցեալ այր մի, երկիրպագանեն փայտի և պաշտօն մատուցանեն ոսկերաց մեռեալ մարդկանց։ Զմահ, որ վասն հաւատոյ, համարին փառս և պատիւ։ Հեստեալ են ի կրօնից մերոց. սուրբ մեր արդէն բլթացան ի վերայ նոցա, բայց նոքա ի մահուանէ ոչ սարսեցան։ Մոլորեալ են հաւատով առ այր մի հրէայ. անգուշեն զտեարս. արհամարհեն զամենազօր աստուածս։

«Առ ոչինչ համարին զզօրութիւն լուսաւորացն 97, 28.
մեծաց, այսինքն արեգական, լուսնի և այլ աստեղաց. և ասեն ստեղծուածք են խաչելոյն։ Եւ

փութանակի մոլորեցուցանեն զմարդիկ աշխարհի ի կռոցն պաշտաման է, Բաժանեն զայս [եր. 77]։ ի կանանց և զկանայս յարանց՝ բազմանան ի պատճառս անասնման համբերութեանն ի տանջանս, անչափ կամակորութեանն և բարեպաշտութեան։ Հեղումն արեան նոցա առաւել ևս հաստատէ զնոսա ի հաւատս իւրեանց։

98, 14. «Եւ ահա տեսի ի մէջ նոցա կոյս մի գեղեցիկ յոյժ, որ պաշտէր զհաւատս նոցա. և ի մտի եդի ածել զնա ի կին. բայց նոքա յանդգնեցան փախուցանել զնա յինէն. ոչ երկեան յարքայական մեծութենէս և ոչ սարսեցան ընաւին ի սպառնալեաց իմոց և ի վրիժուց. փախուցին զկոյսն, ընդ նմա և զայլս բազումս, որք և չոգան ի տէրութիւն քո։

99, 1. «Զհետ լեր, ջանա գտանել զնոսա. սպան զայնոսիկ, որք ընդ նմա են, իսկ զկոյսն յղեա առ իս։ Եթէ սիրիցես, առ զնա քեզ. քանզի արդարև չեմ տեսեալ յերկրիս Հռովմայ գեղեցկութիւն նման նմա։ Եւ խաղաղութիւն ընդ քեզ»։

99, 11. Եւ իբրև ընթերցաւ Տրդատ զթուղթ արքայի, փութանակի հրամայեաց խնդրել զմատաղ կոյսն յամենայն ի տէրութեան իւրում, և խոստացաւ բազում շնորհս այնմ, որ զնա բերիցէ։

99, 20. Եւ եղև խռովութիւն մեծ յերկրին Հայոց ի պատճառս կուսին։ Սակայն սուրբ հօտն Քրիստոսի թաքուցեալ էր ի հնձանս՝ մերձ ի Վաղարշապատ քաղաք. բայց յետ սակաւ աւուրց գտան նոքա։

100, 3. Չէր անկ թաքչիլ ճշմարիտ գանձուն, և ոչ լուսոյ ճրագի գտանել ընդ գրուանաւ. այլ արժան էր ճշմարտութեան յայտնել յաշխարհի զլոյս իւր ա. Որպէս ասաց Տէրն աշակերտաց իւրոց.

ա. Մատթ. Ե. 15։

«Այսպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդ-
կան, զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառա-
ւորեսցի Հայր ձեր, Որ յերկինս է» —.

Հայեցաւ այր մի ի հնձանն, յորում էին Նոքա 101, 13.
(կուսանք). գնաց և յայտնեաց զնոցանէ. և
ժողովուրդն եկն առ նոսա, կալան զնոսա և
հսկէին զաւուրս երիս.

Եւ իբրև տեսին սուրբքն զպաշտօնեայս չարին, 102, 9.
զի հսկէին, գիտացին զի հասեալ է առ Նոսա
փորձութիւն. համբարձին զաչս յերկինս մեծաւ
ողբով և ձայնս յերկինս կարկառեալ՝ կական
բառնային աղաչելով զԱյն, Որ փրկեացն զնոսա
յառաջին փորձութենէ։ Իսկ յետ երից աւուրց
եհաս բանն առ թագաւորն։ Եւ իբրև առաւօտ
եղև՝ ետ հրաման վասն Գայիանեայ և որոց ընդ-
նմա էին կուսանք, զի լիցին ի դիպահոջ ի միա-
սին. իսկ առ երանելին Հռիփսիմէ յղեաց երե-
վար յիւրոյ մեծութենէ և հանդերձս թանկա-
գինս, զի մտցէ ի քաղաքն մեծաւ պատուով։
Եւ զի լուեալ էր զհրաշալի գեղեցկութենէ Նորա,
արկ ի միտս ունել զնա կին։

Եւ իբրև երանելին Գայիանէ ետես՝ որ ինչ 103, 18.
եղեն՝ ասէ ցՀռիփսիմէ. «Յիշեա, որդեակ իմ,
զի թողեր զժառանգութիւն հօր քո և սիրեցեր
զլոյս ճշմարտութեան թագաւորին մերոյ Տեառն
Յիսուսի Քրիստոսի, որ խոստացեալ է զանճառ
բարիս սիրելեաց իւրոց։ Յիշեա, զի դու արհա-
մարհեցեր զանցաւոր թագաւորն և ընտրեցեր
զգովութիւն երկնաւոր Թագաւորին, Տեառն մե-
րոյ Յիսուսի Քրիստոսի, և մի տար զամբծութիւն
կուսութեան քո շանցս այսոցիկ, այսինքն չար
[եր. 79] ամբարշտացս. Մի պղծեր, որդեակ իմ,

— Մատթ. ե. 16.

զսուրբ տաճար քո, այլ լիցի այն տաճար Տեառն մերոյ, Որ ուսոյց մեզ զճանապարհն ճշմարտութեան ի մանկութենէ մերմէ մինչև ցայսօր ի փառաւորեալ արքայութեան իւրում»,

104, 11. Եւ իբրև ետես Հռիփսիմէ զամբոխն, շուրջ պատեալ զինքեամբք, և լուաւ զբանս Գայիանեայ, զօրացաւ հոգւով սրբով և հաւատով, յորում հաստատեալ էր ի մանկութենէ, նշանաւ խաչին կնքեաց զինքն և ասաց.

104, 19. «Տէր իմ և Աստուած իմ ամենակալ, Որ բանիւ Քով ածեր յէութիւն զերևելիս և զաներևոյթս, որք ոչ էին, և հրամանաւ Քով կայ երկիր. Դու, Որ յութերորդ ազգս ածեր ջրհեղեղ ի վերայ ամբարիշտ և չար մարդկան, և զսիրելին Քո զՆոյ ազատեցեր տապանաւ, որ է օրինակ խաչին Քո.

105, 11. «Դու, Որ փրկեցեր զԱբրահամ ի մէջ ամբարշտացն Քանանու, և զաղախին Քո զՍառրա անմեղութեամբ իւրով ազատեցեր ի մահաբեր թունոյ. Դու, Որ սիրեցեր զծառայն Քո զԻսահակ. Որ ազատեցեր զաղախին Քո զՌեբեկա ի փղշտացւոց,—պահպանեա՛ զմեզ յուղիղ հաւատս որ ի Քեզ. և մի մատներ զմեզ, Տէր, վասն անուան Քո՝ զոր ուսուցեր մեզ, վասն բանին Քո՝ զոր աւանդեցեր շրթանց մերոց յաղագս փըրկելոյ զմեզ յորոգայթից թշնամւոյն։ Դու եդեր զանուն Քո ի վերայ մեր և արարեր զմեզ տաճար վասն աստուածութեան Քո. և Դու ասացեր, եթէ անուն Քո սուրբ օրհնաբանեսցի ի սիրտս մեր և օրէնք Քո հաստատեսցին ի միտս մեր։ Ահաւասիկ ժողովեալ են չարք՝ անարգել զսուրբ անուն Քո, որ դրոշմեալ է ի մեզ, և պղծել զտաճար սրբութեան Քո։ Եւ յիրաւի, ակարք և անարժանք եմք. բայց Դու, առատ սիրով քով պահպանեա զանձինս մեր ի պղծութենէ չարաց։

«Ո՛վ փրկիչ և մարդասէր, շնորհեա մեզ յաղ- 106, 7.
թութիւն, զի յաղթեսցուք անուամբ Քով սըր-
բով փորձութեանս, որ շուրջ պատեալ է զմեօք,
և պահպանեա զանբծութիւն կուսութեան մե-
րոյ. զի յորժամ հասանիցեմք ի ժողով սրբու-
թեան Քո, ընկալցուք զհատուցումն, զպատրաս-
տեալն ամենեցուն, որք դողան յերկիւղէ Քում-
մէ և պահեն զպատուիրանս Քո։
«Դու Տէր, որ փրկեցեր զՆոյ ի ջրհեղեղէ, 106. 16.
ազատեա և զմեզ յայնցանէ, որոց ոչ գոն օրէնք.
ի հեղեղէ աստի՝ որ շուրջ զմեօք պատեալ է։
Դու, Որ ի տապանի ապրեցուցեր զգազանս,
զկենդանիս, զթռչունս և զսողունս, ևս առաւել
ազատեա զՔո պատկեր, որ Քեզ երկրպագանէ
և պաշտէ սրբութեամբ»։

Եւ իբրև աւարտեաց զաղօթսն՝ շուրջ պատեցին 106, 24.
զնովաւ Նախարարք և պետք առ ի ածել զնա
փառօք առ արքայ, զի լինիցի նմա կին։

Եւ իբրև տեսին սուրբքն զի զինուորք պա- 107, 9.
տեցին զնոսա շուրջանակի, ամբարձին զձեռս,
սկսան ողբալով աղաղակել յերկինս և խնդրել
փրկութիւն յամենակալէն Աստուծոյ. զի ապրե-
ցուսցէ զնոսա ի գայթակղութենէ հակառակոր-
դին [եր. 81]. լալով գոչէին ասելով. «Զիք ի
մեզ, Տէր, ցանկութիւն. անցաւոր գանձք ոչ
զառածանեն զմիտս մեր։ Զիք ի մեզ սէր ի
ի հրապոյր քաղցր կերակրոց նորա և ոչ տա-
րակուսեմք յերկիւղէ, ի հալածանաց և ի տան-
ջանաց նորա, և եթէ չարչարիցեմք ևս բիւր
անգամ, ոչ զարհուրիցուք և ոչ փոխանակի-
ցուք զյաւիտենական կեանս և զանճառ բարիս
ընդ անցաւոր և թշուառ կենացս այսոցիկ։ Եւ
արդարև, ոչ խորութիւն, ոչ բարձրութիւն, ոչ
խստութիւն, ոչ տանջանք, ոչ հարուածք, ոչ

*սպառնալիք, ոչ խոստմունք, ոչ պէս պէս չարչարանք, ոչ հուր, ոչ ջուր, ոչ սուր, ոչ վայելք, ոչ յոլովութիւն մթերից, ոչ որ այժմ և յապայն, ոչ կեանք, ոչ մահ—ոչ կարեն մեկնել զմեզ ի սիրոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի *. քանզի վասն Նորա պահեցաք զկուսութիւն և զանբծութիւն մեր. ի Նա յուսամք, սիրոյ Նորա ըղձամք, զի կացցուք առաջի Նորա գոհութեամբ և օրհնութեամբ։*

108, 14. *Եւ իբրև աւարտեցին զաղօթս իւրեանց՝ լուան զսաստիկ որոտումն յերկնից, մինչ զի ամենայն ժողովեալքն զարհուրեցան և հարան զգետնի։ Եւ լուան ձայն յերկնից, որ ասէր. «Քաջալերեցարուք, պինդ կացէք. զի Ես ընդ ձեզ եմ. Ես եմ, Որ պահեցի զձեզ և ի սրբութեան ձերում. հասուցի զձեզ յայս աշխարհ, զի փառաւորեսցի անուն իմ ի մէջ ժողովրդեանս այսմիկ։ Ուրախ լերուք և մի երկնչիք, և եկայք ի տեղի խնդութեան և հրճուանաց, զոր պատրաստեցի ձեզ և ամենեցուն որք սիրէք զանուն իմ»։*

109, 5. *Եւ որոտումն յերկարեցաւ ժամս ձիգս։ Իշխանք և նախարարարք, որք խնդրէին զկոյսն, լուան զայս և անկանէին յերիվարաց. երիվարք առաթուր կոխէին զնոսա, և նոքա անկանէին որպէս զմեռեալս։ Մարդիկ յարհաւրացն ընդհարկանէին ընդ իրեարս և հոսէր արիւն նոցա։ Եւ որք կացին ի նոցանէ, զմտաւ ածէին զամենայն, որ դիպեցաւ և զաղօթսն, զորս կատարեցին կուսանքն և գնացին, պատմեցին Թագաւորին։*

109, 24. *Իսկ Թագաւորն իբրև լուաւ զայս, բարկացաւ յոյժ և ասէ. «Փոխանակ զի ոչ կամի գալ*

---

*. Հռովմ. ը. 35, 38, 39.

(Հռիփսիմէ) փառօք, ածէք զնա անարգութեամբ ընդ քարշ։

Սուրհանդակքն գնացին, կալան զերանելին Հռիփսիմէ և սկսան բռնի քարշել և տանէին առ նա։ Եւ նա (կոյսն) բարձր ձայնիւ գոչէր ասելով. «Տէր Յիսուս Քրիստոս, օգնեա աղախնոյ Քում»։ Եւ գնացին ընդ նմա (ընդ կուսին) փութանակի յապարանս, և կացուցին զնա ի սրահի նորա։ Այլ երանելին աղաղակէր առ Աստուած և ասէր. 110, 4.

«Տէր իմ կարող և Աստուած ճշմարտութեան, Որ պատուեցեր զծովն Կարմիր յորժամ փրկէիր զժողովուրդ Քո. Որ բղխեցեր ջուր յանապատի, այնինքն յապառաժ վիմէ, և արբուցեր զժողովուրդն ծարաւի. իջուցեր զծառայ Քո զՅովնան ի խորս ծովու և պահեցեր զնա անվտանգ, զի գիտասցէ զզօրութիւն Քո. Որ փրկեցեր զԴանիէլ ի բերանոյ ամեհի առիւծուց և կացուցեր աւետարանիչ թշնամեաց, որք չարախօսք եղեն զնմանէ. Որ ընդ երիս մանկունսն կացեր ի բորբոքեալ հնոցի և վասն սիրոյ նոցա ի պաշտել զՔեզ՝ անվտանգ ապրեցուցեր ի տապոյ հրոյն. Դու դարձուցեր զբանաւոր և զանօրէն թագաւորն Բաբելոնի ի կերպարանս անասնոյ, և սկսաւ թափառել յանապատի ընդ գազանս, և Դու պատուիրեցեր նմա ճարակել խոտ նման եզանց, քանզի ետես նա զսքանչելիս Քո և ոչ կամեցաւ փառաւորել զԱստուած ճշմարիտ. Որ փրկեցեր զաղախին Քո զՇուշան ի կրկնակի մահուանէ, [եր. 83] կորուսեր զթշնամիս նորա անօրէնս, և վասն ապաւինելոյ նորա (Շուշանայ) առ Քեզ, զարդարեցեր զնա պսակաւ ողջախոհութեան, և յայնմհետէ Դու նոյն ես, Տէր, և 110, 15.

«աւուրք քո ոչ անցանեն» [ա] և ոչ տաս զփառս Քո այլում» [բ]։ Փառաւորեալ ես յամենայն տիեզերս։ Եւ հեթանոսքս այսուքիկ մի պղծեսցեն զանուն Քո, զի դու կարես փրկել զիս։ Մի մերժեսցի ոք առ իս, և մի արատեսցէ զիս, և արա զիս արժանի սրբութեան, զի կեցից և մեռայց վասն անուան Քո սրբոյ։

112, 4. Յորժամ կատարեաց սուրբն Հռիփսիմէ զաղօթս իւր, եմուտ արքայ ի ննջարան իւր, և ածին զկոյսն առ նա, և ժողովուրդն որ յապարանս և ի փողոցի՝ խմբեցան ի հարսանիս արքայի երգով, զսօք, եռաղեօք (балалайка), քնարօք, թմբկօք և ամենայն երաժշտական նուագարանօք։ Եւ Տէր լուաւ ձայնի աղօթից նորա (կուսին), հայեցաւ ի փրկել զնա, զի մի ապականեսցի սրբութիւն կուսութեան նորա, և զօրացոյց զնա որպէս զՅայէլ, զՌեբեկա, զԵսթեր, զի փրկեսցէ զնա ի պղծութենէ անհաւատից։

112, 22. Եւ իբրև մերժեցաւ թագաւորն առ նա, առ ի յագեցուցանել նովաւ զցանկութիւն իւր, սուրբն Հռիփսիմէ զօրացաւ Հոգւով սրբով և սկսաւ մարտնչել ընդ արքայի յերրորդ ժամէ ցտասներորդն և զօրութեամբ Քրիստոսի յաղթեաց նմա, որ թուէր կարկամեալ։ Որ անպարտելին էր ի պատերազմունս, նուաճեալ զամենայն ժողովուրդս և հնազանդս արարեալ զնոսա լինքեան, որ ձեռամբ իւրով պատառ պատառ յօշոտեալ էր զառիւծ և զարջ, որպէս տեսանես՝ յաղթեցաւ ի մատաղ կուսէ զօրութեամբ Քրիստոսի և մեկնեցաւ ի նմանէ կորացեալ։

113, 14. Ցառաջ քան զայս հրամայեաց ածել առ ինքն զերանելին Գայիանէ կապեալ շղթայիւք և կացուցանել զնա առ դրան սենեկին, զի յորդո-

---

ա· Եբրայ· ա· 12։ | բ· Ես· խբ· 8։

բուցէ զՀռիփսիմէ հնազանդել նմա (արքայի)
որպէս նայն կամիցի։

Եւ իբրև եկաց նա (Գայիանէ), լցաւ Հոգւով 113, 22.
սրբով, կանգնեցաւ առ դրան սենեկին յանդիման
գահոյից և, դարձեալ առ նա (առ Հռիփսիմէ)
ի լեզու հռովմայեցւոց ասէ ցնա. «Հռիփսիմէ,
որդեակ իմ, պահեսցէ Քրիստոս զանբծութիւն
քո, ազատեսցէ զքեզ յամենայն պղծութենէ և
տացէ քեզ զօրութիւն և կար, զի մի զրկեսցիս
ի ժառանգութենէ Նորա»։

Եւ իբրև գիտացին, եթէ յորդորէր հաստա- 114, 7.
տուն մնալ ի հաւատս, առին վէմս և հարկանէին
ընդ բերանն մինչև թափել ատամանց, և բռնա-
տատէին զնա, զի հրամայեսցէ կատարել զցան-
կութիւն թագաւորին։

Բայց նա (Գայիանէ) առաւել ևս հաստատէր 114, 11.
զնա ասելով ցնա. «Քաջալերեաց և պինդ կաց.
[...] դուստր իմ, այժմ տեսանիցես զՔրիստոս,
որում անձկացերդ։ Յիշեա, զի սնուցի զքեզ կե-
րակրով Սրբոյ Հոգւոյն։ Յիշեա զաւանդս իմ, զոր
աւանդեցի քեզ սրբութեամբ պահել զհաւատսն
ի Քրիստոս։ Յիշեա զհալածանսն, զոր հալածե-
ցաքս, որում համբերեցաք։ Յիշեա զբաժակ մա-
հու, յորմէ ըմպելոց եմք անխուսաբար։ Յիշեա
զյարութիւն ամենայն երկրի։ Յիշեա զօրն յորում
յայտնելոց են գաղտնիք։ Յիշեա զհեղեղ անշէջ
հրոյն։ Յիշեա զանանց բարիսն, պատրաստեալս
այնմ, որ զհետ լինի սրբութեան և ժուժկալու-
թեան։ Յիշեա զբանն զոր [85] լուար յերկնից,
Որ զօրացոյցն այսօր զքեզ և զմեզ, զի արժանի
լիցուք պսակին և հանգստեան, զոր պատրաս-
տեալ է Նա վասն սիրելեաց իւրոց։ Նա օգնեսցէ
քեզ և մեզ վերաբնակել յաստուածային և ի լու-
սեղէն յարկս՝ ի յաւիտեանս»։

«Տէր մեր Յիսուս Քրիստոս Թագաւոր յար- 115, 9.

դարձուցէ ճանապարհ քեզ և մեզ, Այն, Որ խոնարհեցաւ և յանձն էառ զանարգութիւն վասն մեր և ոչ եթող զմեզ, զի սիրեցաք զնա... որպէս զՓրկիչ. և արժանի արար լսել զձայն բարբառոյ իւրոյ, և փրկեաց զմեզ յամենայն պղծութենէ և յապականութենէ, որպէս տեսաք զայն այսօր, վասն զի կարող աջովն պահպանեաց զքեզ և ազատեաց զմեզ յաւիտեանս։ Եւ մի մեկնեսցուք ի սիրոյ Նորա, զի զօրութիւն Նորա փրկեաց զմեզ. «երևեցոյց մեզ զերեսս իւր և փրկեաց զմեզ»[ա], քանզի Նա է Աստուած մեր և Տէր մեր և «վասն Նորա համբերեմք այսմ ամենայնի[բ]»։

116, 5. «Յիշեա զՏէր, Որ խոնարհեցաւ զի բարձրացուսցէ զմեզ, եհեղ զարիւն վասն փրկութեան որդւոց մարդկան, և յաղագս մերոյ փրկութեան ապտակեցաւ։ Եւ Նա այժմ եղիցի ի մտի քում, և փութա առ Նա ի բոլոր սրտէ և յանձնէ, և Նա եկեսցէ փրկել զքեզ և զօրացուցանել զձեռն քո ըստ ծառայի իւրում Դաւթի, որ սպանանէր զառիւծ և զարջ որպէս զուլ (այծեաց)[գ]։ Եւ Նա ապրեցուսցէ զքեզ... ի բռնաւորէ..., զի կացցուք առաջի Նորա առանց ամօթոյ։

116, 24. Զայս բան խօսէր Գայիանէ, կացեալ առ դրան, ի լեզու հռովմայեցւոց և ուսուցանէր զկոյսն։ Իսկ թագաւորն ի ներքուստ տանջէր վասն Նորա (Հռիփսիմեայ)։ Ոմանք ի զօրականաց, որ ըստ պատահման գիտէին զբարբառ հռովմայեցւոց, յարձակեցան ի վերայ Նորա (Գայիանեայ) ի դրանէ, հարկանէին քարամբ զբերան Նորա և զայս առնէին ընդ երկար, փշրեցին զակռայս (սեղանատամն) հանդերձ ծնօտիւք, բայց Նա ոչ դադարէր ուսուցանել զկոյսն, զի Նա պահեսցէ

ա. Թիւք զ, 25։
բ. Սաղ. խգ, 23։
գ. Թագ. ժէ, 25։

զկուսութիւն իւր։

Իսկ երանելին Հռիփսիմէ սկսաւ զմարտն 117, 17.
ընդ Թագաւորին ի տասներորդ ժամէ աւուրն
ցերրորդն (ժամն) առաջնոյ գիշերոյ։ Պատառեաց
զհանդերձս Նորա (Թագաւորին) և յաղթեալ
Հոգւով Սրբով՝ եթող զնա որպէս զմեռեալ յան-
կեան գահոյիցն։

Յետ այնորիկ եբաց զդուռն սենեկին, ել 118, 3.
արտաքս յանդիման զօրացն վաղս առեալ, փախ-
չէր անցեալ ընդ քաղաքն և ոչ գտաւ ոք զի
համարձակեսցի ունել զնա։ Եւ յորժամ ել նա
արտաքս յարևելեան դրանց քաղաքին, մերժե-
ցաւ ի հնձանն, ուր կուսանքն յառաջագոյն թա-
քուցեալ էին, յայտնեաց Նոցա զուրախարար
համբաւն. եթէ պահեալ է զկուսութիւն, և ասաց.
«ահաւասիկ իսկ և իսկ ելի յարքունի ապարանից»։
Եւ ել ի բարձրավանդակ տեղի՝ եդ ծունր և ասէ.

«Արարիչ իմ և Աստուած ամենեցուն։ Ո՛ 118, 18.
կարիցէ հատուցանել Քեզ փոխանակ բարեացն,
զորս շնորհեցեր մեզ։ Զի զհաւատն իմ, որ ի Քեզ,
պահեցի որպէս զբարձր և զպարառած վէմ. և
Դու ապրեցուցեր զմեզ յատամանց մարդկանց
չարաց և ի տղմոյ, որով կամէին աղտեղել զիս . . .
Քեզ մատուցանեմք զանձինս մեր վասն շնորհաց,
զորս ցուցեր ի մեզ, զի արժանացուցեր զմեզ
զամենեսին սուրբ անուան Քում, ոյր վասն փըր-
կեցեր զմեզ. քանզի բաց ի Քէն, Տէր, զայլ ոք
ոչ գիտեմք։

[87] [«Լա՛ւ համարեցաք] զմահ ողջախոհու- 119, 6.
թեամբ, և ոչ ձգիցեմք զձեռս, բաց ի Քէն, առ այլ
աստուած։ Այնոքիկ, որոց ծառայեն հեթանոսքն,
չեն աստուածք. քանզի Դու ես արարիչ Աստուած
ճշմարիտ և Որդին Քո . . . միածին, «որով ա-
մենայն ինչ եղև, և առանց Նորա լինի և ոչ

ինչ *», և Հոգի քո սուրբ ընտրեալ, Որ առաջնորդէ մեզ ի ճանապարհս արդարութեան, և տանի զմեզ ի կեանս յաւիտենականս, զի կացցուք առանց ամօթոյ յաջմէ միածնի Որդւոյ Քո, Որ ի վերջնումն գալոց է դատել զաշխարհ։ Դու, ով Տէր, ստեղծեր զսիրտս մեր և գիտես զգործս մեր, վասնզի աղախինք Քո եմք և խաշն հօտի Քո։ Արժանի արա, Տէր, հանգստեան, զոր պատրաստեցեր սիրելեաց քոց։ Քանզի սպասեմք ելից ի մարմնոյ աստի առ ի մտանել ի ժողովս սրբոց Քոյ և դասաւորել ընդ սիրելիս Որդւոյ Քո և գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Դու, ով Տէր, գիտես . . . . . .

. . . . . . . .

. . . . . . . .

121, 6. և իշխանք լապտերօք և ժամօվք ի տեղին, յոր հասեալ էր կոյսն կալով յաղօթս։ Կալան զնա, յետս ոլորեցին զձեռս նորա և կամէին հատանել զլեզուն և երանելին յօժարակամ եհան զայն։

121, 13. Եւ ահա անհաւատք վարեցին ի գետին ցիցս չորս, տարածեցին զսուրբն ի մէջ ցցացն և առեալ լապտերս եդին ի ներքոյ կողից նորա յոլով ժամս. մինչև խանձեցին զմարմին նորա ողջոյն։ Եւ էին ի ձեռս նոցա քարինք սուրք, որովք հարկանէին զկողս նորա։ Եւ իբրև տեսին, եթէ կոյսն հաստատեալ է ի Քրիստոս, հանին զաչս նորա կենդանւոյն, յետ որոյ յօշօշ պատառեցին զնա ասելով. «այս է հատուցումն այնմ, որ ոչ հնազանդի թագաւորին»։ Եւ այսպէս կատարեաց նա զկեանս իւր հաւատով ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։

Եմ. 122, 1. Իբրև գիտացին ընկերք նորա, եթէ կատարեցաւ նահատակութիւն նորա, գնացին առնուլ զմարմին նորա։ Եւ յորժամ չարագործքն տեսին

* Յովհ. աւետ. ա. 3։

զնոսա, առին սուր և սպանին ի նոցանէ կուսանս երեսուն և երկուս։

Եւ յորժամ կոտորէին զնոսա, նոքա աղօ- 122, 8.
թէին ասելով. «Այո, սիրեցաք զՔեզ, Տէր, զի լուար ձայնի աղօթից մերոց և ըստ առատ սիրոյդ խոնարհեցուցեր առ մեզ զունկն Քո, զի փափագէաք Քեզ, Աստուած փառաւորեալ. և Դու ոչ մերժեցեր զմեզ զանարժանս ի շնորհաց քոց, Տէր, այլ պահեցեր զմեզ որպէս բիբ ական[ա], ընդ հովանեաւ թևոց Քոց[բ] ապրեցուցեր զմեզ ի ժողովոյ չարաց և արժանացուցեր զմեզ մահուան վասն անուան Քո Սրբոյ»։ Եւ կատարեցաւ նահատակութիւն երանելեաց։

Մի ոմն ի պահապան զինուորաց վազելով 122, 18.
գնաց ի հնձան, եգիտ զմի ի կուսանաց մնացեալ, և եղեն զնա ի հնձանին, և կոյսն զենոյր որպէս զգառն փառաւորելով [զԱստուած] և ասելով. «Գոհանամ զՔէն, Տէր իմ և Աստուած իմ, քանզի տկար էի և Դու ոչ մերժեցեր զիս ի նահատակութենէ ընդ ընկերս իմ։ Այժմ, Տէր իմ, ընկալ զհոգի իմ, դասաւորեա ընդ սուրբ կուսանս Քո»։ Եւ աւանդեաց զհոգին և կատարեցաւ նահատակութիւն նորա։

[89] Եւ Թագաւորն հզօր քաջամարտիկ ի պա- 123, 9.
տերազմի, որ պատառէր զառիւծ և զարջ, որ նուաճէր զամենայն Պարսկաստան, յանձն առնոյր զամօթն, զի էր պարտեալ յաղջկանէ միոջէ զօրութեամբ Աստուծոյ, և սկսաւ հեծեծել ողբալով և ասել.

«Հայեցարուք ի կախարդութիւն քրիստոնէից, 124, 5.
որպէս կուրուսանեն զոգիս մարդկան և յետս կասեցուցանեն ի պաշտամանց աստուածոց։ Արհամարհելով զմահ՝ հանին յինէն զՀռիփսիմէ. զեղ որոյ իսպառ ոչ գտանիցի ի մէջ ամենայն

---

ա. Բ. Օրէնք լբ. 10։ | բ. Սաղմ. կ. 5։

կանանց։ Գնացեալ է իմ ի Հռոմ քաղաք և յամենայն քաղաքս ազգաց, և չէ տեսեալ զոք նման նմա. և ոչ յամենայն ի Հայաստան տեսի զնմանութիւն պատկերի նորա։ Սակայն կախարդութիւն նոցա յաղթահարեաց զմեզ և նոքա կորզեցին զնա (զՀռիփսիմէ) յինէն»։

124, 25. Ընդ առաւօտն եկն առ նա դահիճ և ասէ ցնա. «Հրաման տուր, տէր, սպանանել զԳայիանէ»։ Լուեալ զբանս նորա հարցանէր թագաւորն, եթէ կենդանի է Հռիփսիմէ. և ասէ ցնա (ցդահիճն). «Եթէ ածիցես զնա առիս կենդանի տաց քեզ մեծութիւն»։ Դահիճն պատասխանի ետ և ասէ. «Ապրեսցի արքայ ի թշնամեաց իւրոց այնպէս, որպէս կորուսաք զամենեսին, որ անգոսնէին զաստուածս և անարգէին զկամս քո։ Արդարև, կենդանի մնացեալ է կախարդն այն (Գայիանէ), որ մոլորեցոյց զմատաղ կոյսն իւրով ուսմամբ. և նա է, որ զրաւեաց զՀռիփսիմէ ի կենաց, և ընդ նմա այլևս երեք»։

125, 15. Եւ իմացեալ զմահ երանելւոյն Հռիփսիմեայ, յարեաւ թագաւորն յաթոռոյ. նստաւ ի վերայ հողոյ և սկսաւ ողբալ վասն նորա։ Եւ վասն սրբոյն [Գայիանեայ] հրամայեաց ասելով. «առաջին զոր առնիցէք՝ հանէք զլեզու նորա ընդ ծործորակս և ապա սպանէք. քանզի նա սադրէր զկոյսն ընդդիմանալ ինձ և արհամարհել զկուռս, որք տուեալ էին նմա [Հռիփսիմեայ] զայնպիսի գեղեցկութիւն»։

126, 1. Եւ իբրև թոյլ ետ դահճապետին սպանանել զնոսա, խնդութեամբ ելին, էառ զսուրբն, ընդ նմա և զերեսին կապեալս շղթայիւք, եհան ի քաղաքէ. չոգաւ ի գետն կոյս, առ որով էր կամուրջ, ուր սպանանէին զմահապարտս, և հրամայեաց վարել ի գետին ցիցս չորս չորս վասն իւրաքանչիւրոյ ի նոցանէ։

Եւ մինչ զբաղեալ էին նոքա այսուիկ, երանելին 126, 10.
Գայիանէ հանդերձ երիւքն եղելովք ընդ նմա եկաց յաղօթս ասելով. «Գոհանամք զՔէն, Տէր մեր և Աստուած մեր, զի արժանի արարեր զմեզ մահուան վասն անուան Քո սրբոյ. և հաղորդս արարեր զմեզ մահու սրբոց Քոց, զմեզ, որք փափագիմք վաղվաղակի հասանել սիրողացն զՔեզ. Եւ յիրաւի, մեծ է ուրախութիւն իմ սակս դստերն իմոյ և այլ քերց իմոց, որք վասն անուան Քո սրբոյ արժանի եղեն մահուան։ Եւ այժմ, յիշեա զմեզ, Տէր մեր և Աստուած մեր, «զի վասն քո մեռանիմք այսօր»*։ Յիրաւի, նման եմք մեք ոչխարաց, զորս վարեն ի սպանդ. Արի, Տէր մեր և մի մերժեր զմեզ յաւիտեան, այլ փրկեա զմեզ վասն անուան Քո և շնորհեա մեզ զկատարեալ յաղթութիւն Քո, զի նշաւակ լինին, ո՜ք առ ատն հարկանեն զօրէնս։

Եւ իբրև կատարեցին զաղօթս, պահապանք 127, 5.
առին զնոսա, ի բաց հանին զհանդերձս ի նոցանէ, տարածեցին ի վերայ ցցաց. հատին զջիլս, անցուցին ընդ այնս փողս եղեգան և փքացուցին ընդ այնս, մինչդեռ կենդանի էին, ի ստորին մասանց [91] ցատինս և բարձրացաւ մորթ նոցա, որպէս առնէ սպանդագործն ընդ ոչխար, յորժամ կամի հանել ի նմանէ զմորթն։ Եւ ցելին զպարանոցս նոցա ի թիկանց կուսէ և հանին անտի զլեզուս նոցա։ Եւ յետ այնորիկ առին քարինս սուրս և սկսան մխել ի կուրծս նոցա մինչ դեռ կենդանին էին։ Եւ յետ այնորիկ հատին սրով զպարանոցս նոցա։

Եւ կատարեցաւ նահատակութիւն Հռիփսի- 127, 23.
մեայ և երեսուն և երից երանելի ընկերաց ի 25-որդում աւուր ամսեանն հոկտեմբերի, իսկ երանելւոյն Գայիանեայ ընդ երից կուսանաց ի 28-րդում աւուր նորին իսկ ամսոյ,

*. Սաղ. խգ. 23։

128, 6. Իբրև կատարեցաւ նահատակութիւն սրբոց կուսանաց, թագաւորն զաւուրս վեց սուգ էառ վասն երանելւոյն Հռիփսիմեայ։ Յետ վեց աւուրց նախարարք աղաչեցին զնա դադարել ի սգոյ։ Եւ ահա հրամայեաց նա զօրաց գալ՝ առ ի ելանել յորս։

128, 14. Եւ իբրև այս եղև, և բերին երիվարս, նստաւ (Տրդատ) յարքայական կառս։Յոյնժամ փողփողակի պատուհաս ի Տեառնէ հասանէր նմա։ Եմուտ ի նա ոգի պիղծ և ընկէց զնա ի կառացն. Եւ սկսաւ ուտել զմիս իւր։ Եւ որպէս դիպեցան հարուածք արքային Նաբուգոդոնոսորայ, յորժամ խելագարեցաւ և գնաց յանապատ արածել ընդ գազանս, այնպէս եղև և արքային Տրդատայ։ Փոխեցաւ նա ի վարազ վայրի և անկաւ յանտառախիտ վայրս արածել ընդ խոզս։ Որք ընդ նմայն էին, առին զնա՝ զի դարձուսցեն ի քաղաք, բայց ոչ կարացին ընկճել զնա յաղագս ուժոյ նորա, հանդերձ դիւաւն, որ մտեալ ի նա, առաւելոյր զվայրագութիւն նորա։ Եւ ոչ միայն նմա միայնոյ դիպեցաւ այս, այլ և բազմաց ի մեծամեծաց և յաւագաց։ Եւ բազումք յընկերաց նորա մոլեգնեալ ուտէին զմիս իւրեանց։ Եւ բազմաց, որք յարքունի տանէ, եհաս հարուածս այս։ Եւ ահ մեծ անկաւ ի վերայ Հայաստան աշխարհի։

129, 14. Եւ իբրև անցին աւուրք երեք, էր արքային Տրդատայ քոյր Կուսարոդուխտ (Խոսրովիդուխտ) կոչեցեալ։Եղև նմա տեսիլ ի Տեառնէ,զոր յայտնեաց նա ոմանց ի մեծամեծաց և յաւագաց ասելով.«Տեսի յայսմ գիշերի յերազի զայր, որ փայլէր որպէս զլոյս, և նա ասէ ցիս. «ոչ կարեն ազատիլ եղբայր քո արքայ և գործակիցք նորին ի հարուածոյն, որ դիպեցաւ նոցա, բայց եթէ առաքիցէք յԱրտաշատ քաղաք և ածիցէք զսուրբն Գրիգոր, զոր կապեցիք և արկիք ի վիրապն խոր։ Նա ցուցցէ ձեզ հնարս օգտաբերս»։



Իբրև լուան զբանս նորա, սկսան ծաղրել 130, 1.
զնա, ասելով. «Թուի, որ գլխեցաւն նոցա, դի-
պեցաւ այն և քեզ, զի ոչ գիտես զինչ խօսիս։ Եթէ
լեալ էր քո առողջ, ապաքէն գիտէիր, զի այժմ
հնգետասան ամք են յորէ, յորմէ հետէ Գրիգոր
արկաւ ի վիրապն խոր, յորում են ջուր, օձք,
իժք և կարիճք. այնպէս զի և ոսկերք նորա կո-
րուսեալ իցեն։

Յայնժամ երևեցաւ նմա վերստին նոյն տե- 130, 40.
սիլ և պատմեաց նոցա բայց ոչ հաւատացին նմա.
մինչ զի հնգիցս երևեցաւ նմա տեսիլն [93],
և սպառնայր նմա ասելով. «Եթէ ոչ ասիցես
նախարարաց, աւագորերոյն և մեծամեծաց, չա-
րագոյն ևս քան զայն դիպեսցի քեզ, արքայի և
համօրէն բնակչաց կողմանցս»։ Երկիւղ մեծ կալաւ
զԿուսարոդուկտա. գնաց վերստին առ գործա-
կալս արքայի և առ նախարարս և ծանոյց նոցա
զամենայն, որ ինչ ասացաւ նմա իբրև սպառնա-
լիս նմա և ամենայն բնակչաց կողմանցն։

Եւ իբրև լուան զբանս նորա և զսպառնալիս 130, 18.
առ նոսա և առ ամենայն բնակիչս կողմանց
իւրեանց, եթէ չհանիցեն զերանելին Գրիգոր ի
վիրապէ,—փութանակի ընտրեցին զայր մի յա-
ւագաց Օտա անուն և առաքեցին ի քաղաքն
Արտաշատ, առ ի հանել զերանելին Գրիգոր ի խոր
վիրապէ։ Եւ իբրև եհաս Օտա ի քաղաքն Ար-
տաշատ, ընդ առաջ ելին նմա մեծամեծք, առ
ի գիտել զպատճառս գալստեան նորա առ նոսա։
Եւ Օտա ասէ ցնոսա. «Եկի վասն Գրիգորի, որ
փակեալ է ի վիրապի»։ Իբրև լուան զբանս նորա՝
զարմացան և ասեն. «Ո՞վ հաւատայցէ, եթէ նա
կենդանի իցէ. զի բազում՝ ամք են՝ յորմէ հետէ
ընկեցաւ նա ի վիրապ։ Գիտեմք, զի նա, ի շնչոյ
օձից եղելոց ի վիրապին, ոչ կարէր ապրել։ Ո՞ր-

պէս ասեն, եթէ եկիր վասն կապեալն Գրիգորի։ Ցայնժամ Օտա յայտնեաց զերազսն, զորս տեսեալ էր քոյր արքային Խոսրովադուխտ, և անկաւ երկիւղ ի վերայ նոցա։

131, 6. Եւ կապեցին պարան առ պարան և թողին զպարանն ի վիրապ, ուր էր երանելին Գրիգոր։ Եւ կոչեաց առաքեալն առ նա Օտա բարձր ձայնիւ ասելով. «Գրիգոր, եթէ իցես կենդանի ի վեր ել ի վիրապէ, վասն զի Տէր Աստուած քո, զոր պաշտես, նա ինքն հրամայեաց քեզ ելանել»։ Եւ նոյն ժամայն կալաւ նա զպարանէն, շարժեաց զնա, զի գիտասցեն ամենեքին եթէ կենդանի է, և շուրջ պատեաց զիւրև զպարանն և նոքա հանին զնա. և յորժամ հայեցան ի մարմին նորա, որ փոփոխեալ էր ի բազմութենէ ամաց, չգտին ի նմա բնաւին հետս ինչ։ Ցայնժամ Օտա ողջոյն ետ նմա, և զգեցուցին նմա հանդերձս, քանզի մերկ էր ընկեցեալ նա ի վիրապին։ Եւ առին զնա խնդութեամբ մեծաւ և գնացին ընդ նմա ի քաղաքն
82, 4. Արտաշատոյ [ի Վաղարշապատ քաղաք] 1։ Եւ մինչ էր նա ի վիրապին՝ կին մի այրի հասուցանէր նմա յարքունեաց միշտ սակաւիկ մի հաց և ջուր։ Եւ իբրև եհաս սուրբն ի քաղաք, դուք ընդ բարշ վարեցին զթագաւորն վարազակերպ ի հանդիպել արքայն։ Եւ յորժամ արք արքունեաց նորա և նախարարք նորա գիտացին, եթէ սուրբն եհաս առ նոսա, ելին ընդ առաջ նորա արտաքս քան զքաղաքն։

131, 24. Եւ իբրև տեսին զնա, զի գայր ընդ Օտայի և բազմութեան ժողովրդեան, որք զկնի նորա ելեալ էին յԱրտաշատ քաղաքէ, սկսան դիւահարել, ուտել զմարմինս իւրեանց, պատառել զհանդերձս իւրեանց և վազել ընդ առաջ։

132, 6. Երանելին Գրիգոր եդ ծունր Աստուծոյ և աղաչեաց վասն նոցա, որք նոյն ժամայն սթափ-

փեցան ի դիւահարութենէ։ Եւ հրամայեաց նոցա զգենուլ հանդերձս։ Եւ որք յարքունի տանէ էին ի մեծամեծաց և յայլ արանց, ամենեքեան զգաստացեալ, ճշմարիտ երկրպագէին նմա, անկանէին առ ոտս նորա, ասելով. «Աղաչեմք զքեզ, թող մեզ զանիրաւութիւնս մեր. զոր ցուցաք քեզ»։

[95] Եւ երանելին ասէ ցնոսա. «Ես մարդ 132, 15.
եմ իբրև զձեզ։ Միայն հաւատացէք յԱստուած, յարարիչն երկնի և երկրի, արևու, լուսնի և աստեղաց, ցամաքի և ծովու և աղաչեցից զԱստուած զի գթասցի ի վերայ ձեր»։

«Իսկ այժմ յայտնեցէք ինձ. ո՞ւր են մարմինք 132, 22.
սրբոց վկայուհեաց և ոսկերք նոցա»։ Ասեն ցնա. «Ո՞րպիսի վկայուհեաց կամիս»։ Ասէ ցնոսա. «Այնց, որք վասն Աստուծոյ նահատակեցան ի ձէնջ ի կուսութեան իւրեանց»։ Յայնժամ ածին ցնա ցուցանել զտեղին։ Եւ նա գնաց առ նոսա, և ժողովեաց զմարմինս նոցա անդ, ուր նահատակեալ էին։ Զօրութեամբ Աստուծոյ մարմինք նոցա պահեալ էին։ Անցեալ էին ինն աւր և ինն գիշեր յորմէհետէ անկեալ կային, բայց չէր մերձեցեալ ի նոսա գազան, շուն կամ թռչուն։ Եւ ըստ զուարթութեան իւրեանց նման էին մարդկան բերկրելոյ ի գինւոյ։

Բերէին հանդերձս ազնիւս և թանկագինս 133, 15.
վասն պատանաց. բայց երանելին Գրիգոր արհամարհեաց զհանդերձս բերեալս յարքայէ և ի մեծամեծաց նորա և ոչ հաճեցաւ և ոչ առ մի ինչ յայնցանէ վասն վկայուհեաց, այլ պատեցին զնոսա ի պատառոտուն հանդերձս եղեալս ի վերայ նոցա։ Եւ ժողովեաց զամենայն մարմինս նոցա և եբեր ի հնձանն, ուր ի սկզբան ժողովեալ էին կուսանք։ Երանելին Գրիգոր ոչ մեկնեցաւ ի տեղւոյն մինչև կազմեաց նոցա դագաղ ի փայտէ և փորեաց վասն նոցա տապան ի թաղել զնոսա

ի միասին։ Եւ զգիշերն զայն ողջոյն աղօթէր վասն փրկութեան արքայի և ժողովրդեան Նորա, զի մաքրեսցին . . . , և բժշկեսցին ապաշխարութեամբ։

134, 5. Ընդ առաւօտն եկին ի միասին առ սուրբն ամենայն արք պալատան ի նախարարաց, մեծամեծք և այլ բազմութիւն քաղաքին, երկրպագին նմա և մարմնոց սրբոց և ասացին ցնա. «Թող մեզ զյանցանս, զոր մեղաք առաջի քո և կուսանացն, և աղօթեա առ Աստուած քո, զի մի կորիցուք»։

184, 12. Ասէ ցնոսա Գրիգոր. «Զայն զոր կոչէքդ Աստուած իմ, է Նա արարիչ տիեզերաց և նախախնամող նորա։ Նա կեանս կամի արարածոց։ Վասն զի ի թօթափել ական ստեղծ զամենայն և արար զոչ էսն[ա], զերկիր և զորս ի նմա։ Նա է Տէր տիեզերաց։ Հաւատացէք ի Նա. Որ պատուհասեացն զձեզ, ըստ մեծի սիրոյ իւրում և գթութեան, զի գտջիք բժշկութիւն ցաւոց՝ դիպելոց ձեզ. որպէս ասեն գիրք. «Զամենայն, զոր սիրէ Տէր, խրատէ[բ]. հարկանէ զմանկունս իւր և յինքն յանկուցանէ զնոսա։ Ըստ մեծի սիրոյ իւրում կոչէ զձեզ, զի լինիջիք ի Նորա որդիս։

135, 4. «Իսկ Որդին Աստուծոյ, ոչ համարի ամօթ կոչել զմեզ եղբարս։ Եւ զամենայն, որ հաւատայ ի Նա, կոչեմք յերկրպագութիւն Նորա, և Նա յառհաւատչեայ սիրոյ իւրոյ տացէ ձեզ զսուրբ Հոգին[գ], և լուսաւորեսցէ զսիրտս ձեր անանց խնդութեամբ։ Եւ եթէ դարձջիք և ըստ կամաց Նորա գնասջիք՝ ապաքէն պարգեւեսցէ կեանս յաւիտենականս։

135, 12. Եւ որպէս ասացերն, թէ Նա է Աստուած իմ, զատոյգն ասացեր։ Արդարև, է Նա Աստուած

---

ա. Բ. Մակ. է. 28։ Հռոմ. դ. 17։
բ. Առակ գ. 12։
գ. Բ. Կորնթ. ա. 22։

վասն ամենայնի, որք խոստովանին զՆա։ Եւ ամենայն, որ ոչ խոստովանի զՆա, օտար է ի սիրոյ և ի խնամոց Նորա, թէև իցէ ստեղծուած Նորին։ Մերձ է առ ամենայն ոք, որ երկնչի ի Նմանէ և յուսայ ի Նա։

«Եւ եթէ ասիցէք,վասն Էր և զիմ՞րդ պահէ 135, 20.
զյուսացեալս իւր, մինչդեռ ամենայն, որ անկաւ ի ձեռս մեր՝ մեռաւ ի տանջանս, [97] և վարեցաք ընդ Նմա ըստ ցանկութեան մերում.—ապաքէն իմացարուք այժմ, զի եղև այն, քանզի Աստուած կամեցաւ զհանգիստ մարդոյ զի բերկրեսցի ի գալստեան Նորա, յորժամ՝ յայտնեսցէ Նա զբարիս զոր պատրաստեալ է սիրելեաց և գնացողաց ըստ հաճոյից Նորա»։

Եւ իբրև կատարեաց զբանս, սկսաւ ուսուցանել զնոսա և տալ ցնոսա զայն, որ ինչ ի սուրբ գիրս. զի մարդ արհամարհիցէ զերկրաւորս՝ և զմիտս իւր համբառնայցէ յերկինս։ «Եւ յորժամ սրբեսցին միտք նորա, ծանիցէ Նա զերկնայինսն և զերկրայինս և պահելով զանձն իւր ի պատերազմէ դիւին, ընկալցի փոխարէն զաստուածայինն. քանզի բանք մեր ճշմարիտ են, և քննեմք զխորս և ուսուցանեմք ձեզ. և Աստուած զօրացուցանէ զկար մեր, վասն զի առատագութն Տէր կամի դարձուցանել զձեզ ի կռապաշտութենէ գիտելովն զՆա և տալ ինձ զբան և զգիտութիւն առ ի ուսուցանել ձեզ զճշմարտութիւն՝ որ փրկեաց զիս ի բռնութենէ և ծանր տանջանաց, զամս հնգետասան պահեաց զիս ի վիրապի զերծ ի թունոյ սողնոց եղելոց ի նմին (վիրապի). և ետ ինձ զայս շնորհ ի հրահանգել զձեզ ի քրիստոնէական հաւատս և դարձուցանել ի պաշտելութենէ կռոց, որք առաջնորդէին զձեզ ի մոլորութիւն մինչև ցայս վայր։ Եւ եդեալ էիք զլոյս ձեր ի վերայ

նոցա, թէև չար ինչ ոչ բերէին նոքա ձեզ։ Եւ ուսուցի ձեզ զփրկութիւն ձեր՝ քանզի կուռք մատնեցան ի կորուստ։ Եւ մեք յուսով մերով առ Աստուած մտաք ի տանջանս և պատեցաք ողջանդամ։ Ո՛ր ինչ վասն իմ՝ ես ապրեցայ, զի ուսուցից ձեզ զճանապարհն ճշմարտութեան, իսկ կուսանքն այնոքիկ որ մեկնեցան յաշխարհէ աստի սպանեալ սրովք ձերովք՝ ժառանգեցին զյաւիտենական կեանս վասն միոյն Աստուծոյ, որ յառաջ քան զյաւիտեանս է։ Նա Ամենակալ է, որպէս ասեն
153, 1. Գիրք. Տեառն է երկիր լրիւ իւրով։ Հայր է Աս-
224, 2. տուած. և միակ Բան Նորա՝ է Որդին Աստուծոյ։
Աստուած ի Նմա՝ անվախճան և է ի Նմա ի սկզբանէ։ «Ամենայն ինչ Նովաւ եղև և առանց Նորա եղև և ոչ ինչ», որպէս ասէ Յովհաննէս Աստուածաբանն ա. «Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած և Աստուած էր Բանն». «Եւ առանց Նորա եղև և ոչ ինչ». Նմա երկիր պագանեմք և փառաւորեմք զՆա — զՀայր, և զՈրդի և զՍուրբ Հոգի։ Մի է Աստուած, մի օրէնք, կատարեալ յերիս անձնաւորութիւնս։ Զնա քարոզեմ, ուսուցանեմ զձեզ, և աղօթեմք վասն ձեր, զի հաւատք ձեր ճշմարիտ իցեն։ Երկրպագէք միանական Երրորդութեան, Աստուծոյն ամենեցուն։ Մի լինիք զհետ այնմ, որ ինչ յաշխարհի աստ է։ Մին Աստուած է Արարիչ և Ստեղծող ի ձեռն Որդւոյն իւրոյ և Բանին, և կեցուցանէ զամենեսեան Հոգւով սրբով։ Լուարո՛ւք իմաստնոյ և մարգարէի Բանին, տեսանողի փառացն Աստուծոյ, այսինքն մարգարէին Մովսիսի, որ ասէ բ. «Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր և երկիր էր աներևոյթ և երկինք՝ ոչ յատակ տեսանելի և Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջրոց»։ Եւ Աստուած

ա. Յովհ. աւ. ա. 1—3։ | բ. Ծննդ. ա. 1։ 14. 15. 16։

Բանիւն իւրով և աստուածութեամբն ստեղծ և
Հոգւն կենդանացուցանէ պայծառութեամբ։
Ստեղծ զերկինս և զերկուս լուսաւորս մեծամեծս և
զարդարեաց զերկինս աստեղօք զի լուսաւորես-
ցեն ի տուընջեան և ի գիշերի, և լինիցին ի նշանս
դարուց, ամաց, ամարան, ձմերան, գարնան և
աշնան։ Նա արար զերկինս։ Հրամայեաց զօրու- ծն. 155,14.
թեամբ և ստեղծ զհրեշտակս, զհրեշտակապետս.
զքերովբէս և զսերովբէս որք փառաբանեն զաս-
տուածութիւն Նորա։ Զգեաց զերկիր | [99] և
զարդարեաց լերամբք, բլրովք, հովտօք, քա-
րամբք և ծառովք պտղաբերօք և անպտղովք,
դաշտօք, ամենայն բուսովք և զանազան երփն-
երանգ ծաղկօք։ Զայս ամենայն ստեղծ Աստուած
ի մխիթարութիւն մարդոյ։ Ըստ այսմ օրինակի
ստեղծ զծով՝ ամենայն ջուրբք իւրովք և կոչեաց
զայն ծով. և հրամայեաց նմա չելանել ըստ ա- 159, 6–10.
փունս։ Զայս (արար) ի պատճառս իմաստութեան, ծն. 163, 8.
զոր շնորհեաց մարդոյն, զի կազմեսցեն նաւս. և
մարդիկ շրջիցին ի վերայ ծովու։ Երթիցին ոմանք
յերկիրն Հնդկաց ի բերել անտի վաճառս ճոխու-
թեան վասն ամենայնի, որ ցանկայ ճոխու-
թեան, և ոմանք՝ յեգիպտոս ի բերել ցորեան
այնմ՝ որ առաքեացն զնոսա։ Եւ յածիցին ի տեղւոջէ
ի տեղի մինչև յագենալ մարդկան լիութեամբ։
Զայս ամենայն ետ մարդոյն, զի այլք ուսանիցին
ի նորա իմաստութենէ. քանզի Աստուած ի ստեղ-
ծանելն զմարդն փառաւորեաց զնա, այնպէս
առնելով զնա, զի մերձեսցի յաստուածութիւն
Նորա՝ ծառայելով Նմա։ Թողցուք այժմ յիշել
զչար ծանօթութիւն [զանկումն ի մեղս] և երթի-
ցուք առ դիս սրբոց կուսանաց, թաղեսցուք զնոսա
և շինեսցուք նոցա վկայարանս, և արասցուք
այնպէս, քանզի տեսի յայսմ գիշերի երազ, որ
զկնի, որ և սարսափեցոյց զիս։

հմ. 429, 2. «Տեսի զերկինս բացեալ որպէս զկամար,
հմ. 430, 8. ջուրք նորա հեղուին որպէս զանձրև յերկնից
ի վերայ երկրի, և ի մէջ քաղաքին Արտաշատայ Հ.
կայր վրան յոսկւոյ վասն արքայի, ի վերայ վրա-
նին սիւն որպէս զհուր, շառաւիղք նորա ճառա-
գայթէին յամենայն կողմանց՝ լուսաւորելով, և
ի վերայ սեանն՝ ամպ, և ի վերայ ամպոյն՝ նշան
խաչին, որ իբրև զփայլակ փայլատակէր։ Եւ այս
ամենայն էր՝ ի մէջ քաղաքին։ Իսկ ի միւսում
տեղւոջ՝ երեք վրանք վասն թագաւորաց, գոյն
վրանաց՝ նման արեան, և հրեղէն սիւնք ան-
նմանք հաստատեալ սեանցն, կային մին՝ յարևե-
լից կուսէ, երկրորդն՝ յարևմտից և երրորդն՝
ի հարաւոյ, և երեքին այնոքիկ շաղկապեալ էին
ի մի պատկեր իսկ և իսկ նշան խաչի՝ ի վերայ երից
կամարաց արձակելով ճառագայթս և լուսաւո-
հմ. 433, 19. րելով։ Եւ տեսի զայր մի հզօր, զորոյ զզօրութիւն
և զգեղեցկութիւն ոչ ոք կարէ ընդ գրով արկանել,
և էր ի ձեռին նորա գաւազան ոսկի, որով հարկանէր
զերկիր, զլերինս և զբլուրս, որք սկսանէին փշրել
որպէս զանօթ կաւեղէն, անկանէին և հաւասա-
հմ. 431, 20. րէին ընդ դաշտավայրս։ Եւ տեսի բազմութիւն
յարդարեալ սեղանոց, գոյն նոցա՝ գոյն ոսկւոյ, և
սեղանքս այսոքիկ լնուին զերկիր զհաւասարեալն
ընդ մարգագետինս։ Ի վերայ իւրաքանչիւր սեղանոյ
հմ. 432, 1. կանգնեալ կայր խաչ։ Յետ այսորիկ տեսի բազմաթիւ
հօտ [այծեաց], գոյն նորա էր սեաւ, անցանէին
նոքա ընդ ջուրսն, որք տեղային յերկնից, և նոյն
ժամայն փոխէին յօդիս և ի գառինս և փայլէին
որպէս զլոյս և ասր նոցա լինէր նման ձեան.
Ի հօտիցս յայսցանէ բաժանեցաւ խումբ մի և վեր-
ստին դարձաւ յառաջին գործն իւր, եղև սեաւ
որպէս էրն յառաջ և փոխեցաւ ի գայլս։ Եւ
յափշտակեաց ի սուրբ հօտէ ոչ սակաւս յառաջին
կերպարան, և խաբեաց զնոսա, առ ի յանկու-

ցանել զնոսա առ ինքն և ուսուցանէր զնոսա զի անցանիցեն յիւր կողմն։

«Իբրև տեսի զտեսիլդ, սկսայ եռանդեամբ հմ. 432,19.
աղօթել առ Աստուած, և տեսի | [101] զայր մի, տե-
սիլ որոյ էր լուսափայլ երկոքումբք հրեղէն թևովք․
Գոչեաց նա առ իս և ասէ․«Մի երկնչիր,ով Գրիգոր։
Մատիր և մեկնեցից քեզ զերազդ, զոր տեսեր։
Եւ արդ, տեսիլն, զոր տեսերդ ի մէջ քաղաքին, հմ. 434, 7.
որ է, սիւնն հրեղէն՝ նշանակէ եթէ ի տեղւոջդ
կառուսցի մայր եկեղեցի և յարիցէ հովիւ հան-
դերձ խաչիւ սրբով յուսուցանել զմարդիկ և ի հաս-
տատել զժողովուրդն ի հաւատս Երրորդութեան.
Իսկ երեքին սիւնքն ի գոյն արեան՝—այնոքիկ հմ.434, 20.
են սուրբ կուսանքն Հռիփսիմէ, Գայիանէ և այլք․ հմ. 433, 8.
որք վկայեցին արեամբ, ընկալան զպսակն և
մահուամբ զկեանս ժառանգեցին։ Եւ պատկերն, հմ. 435, 6.
զոր տեսեր յորժամ միանային սիւնքն այնոքիկ՝ է
առ միասնական Երրորդութիւնն հաւատն այնց՝ որք
արժանաւորեցան հաղորդիլ ընդ Քրիստոսի Աս-
տուծոյ չարչարանօք Նորին։ Իսկ երեքին խաչքն, որք
կանգնեալ էին, են օրինակք Խաչին յորոյ վերայ
բարձրացեալ եղև Քրիստոս ի մէջ երկուց աւազա-
կաց, վասն փրկութեան ազգի մարդկան, զի
համբերիցեն մարդիկ տանջանաց՝ սակս Քրիս-
տոսի, հաղորդք լինիցին Նմա ի տառապանս,
ժառանգիցեն ի կենդանութեան, և յերկինս՝ ար- հմ. 433, 5.
ժանի լինիցին հանդերձեալ ուրախութեան և յա- հմ. 437, 3.
ւիտենից արքայութեան։ Իսկ ջուրն, որ տեղայր
յերկնից որպէս զանձրև, է օրինակ մկրտութեան,
որով մկրտին ամենայն մարդիկ,և որ լուանայ զամե-
նայն աղտեղութիւնս հակառակորդաց [հաւատոյ]։
Իսկ որ ինչ վասն մաքուր հօտին յասր սպիտակ՝ հմ. 438, 1.
այնոքիկ են, որք փայլին մկրտութեամբ և
Հոգւով սրբով ի ձեռն հովուաց իւրեանց։ Իսկ

այնոքիկ, որք յետս դարձան ի ճշմարտութենէ․
եղեն անօրէնք, փոխեցան և դարձան ի գայլս՝
այդոքիկ են առաջնորդքն, որք հեստին և զհետ
իւրեանց զառածանեն զայլս և տանեն ուր և
Ճմ. 437, 14. կամին։ Իսկ ոսկեղէն սեղանք, զորս տեսերդ.
հանդերձ խաչիւք հաստատելովք ի վերայ նոցա,
ցուցանեն, եթէ ընդ ամենայն Հայաստան աշխարհ
հաստատեսցին եկեղեցիք և խաչն փայլելով յիւ-
րաքանչիւր երկրի, փառաւորեսցի Երրորդութիւն
յաղթութեամբ խաչին, և բարձցին ի միջոյ ամե-
Ճմ. 433, 19. նայն կուռք։ Եւ այրն հզօր, զոր տեսերդ, է զօրու-
թիւն Ամենակալին. իսկ գաւազանն, զոր տեսեր
ի ձեռին իւրում, որով հարկանէր զլերինս, զբլուրս,
և զժայռս և հարթ հաւասար առնէր զնոսա,
ցուցանէ, եթէ կորուսանելոց է Նա զամենայն
աստուածս ձեռագործս մարդկան, և բանիւ Նորա
մեծասցի պաշտօն Աստուծոյ, միոյն, ճշմար-
մարտին Հօր և միածին Որդւոյ Նորա և Սուրբ
Ճմ. 439, 9. Հոգւոյն։ Եւ այժմ, ի միտ առ, ով Գրիգոր, զբանս
զայս, և հաստատեսցի այն ի մտի քում։ Համ-
բեր՝ յուսուցանելն զնոսա, առաջնորդեա ի ճա-
նապարհս ճշմարտութեան, երթ և հաստատեա
զնոսա ի հաւատս առ Երրորդութիւնն։

Ճմ. 439, 24. «Եւ ընդ աւարտելն զբանս, որ խօսէրն ցիս՝
ծածկեցաւ յինէն, թողլով զիս ի մեծի երկիւղի․
Եւ յայնժամ՝ լուսաւորեցան միտք իմ։

137, 5. Արդ խոստովանեցէք զայն, «Որ կոչեացն զձեզ
յիւր սքանչելի լոյսն *», որ յատուկ է Իւրումն
աստուածութեան, զի կացջիք առաջի աթոռոյ
բարերարութեան Նորա և ընկալջիք ի Նմանէ
զողորմութիւն։ Թօթափեցէք ի ձէնջ [...] և
զամենայն մեղս, և զամենայն աղտեղութիւն

*․ Ա․ Պետ․ բ․ 9։

և լուացէք զսիրտս ձեր ջրով կենաց, զի արժա-
նաւջիք լուսաւոր զգեստուց, պատրաստեցէք
զանձինս։

[103] «Գիտէք դուք զգործս սրբոյն Հռիփ- 137, 11.
սիմեայ, որ փառաւորեալն է ի մարդկանէ. որպէս
փրկեաց զնա Աստուած և ազատեաց ի ձեռաց
ձերոց և յամենայն անօրէն պղծութեանց և
բռնութեանց արքային ձերոյ Տրդատայ։ Գիտէք
ապաքէն, զի օգնութեամբ Աստուծոյ աղջիկն
անոք յաղթեաց նմա։ Նոյնպէս գիտէք և զիս, զի
և ես յիմում կարգի զամս հնգետասան մնացի
ի խոր և ի մթին վիրապի ի մէջ օձից, իժից և
կարճաց և բնակակից եղէ նոցա։ Յերկիւղէ Աս-
տուծոյ իմոյ սողունքս այսոքիկ ոչ յարձակեցան
ի վերայ իմ և վնաս ինչ ոչ հասուցին ինձ ամե-
նեքին։ Ոչ սարսեցայ ի նոցանէ, և ոչ երկեաւ
սիրտ իմ, վասն զի ապաւինեալ էի ի Տէր Աս-
տուած իմ յԱրարիչն ամենից։

«Սակայն գիտեմ, զի ամենայն, զոր արարիք 138, 1.
ընդ իս, ի տգիտութենէ եղև։ Յայսմհետէ դար-
ձարուք և ծաներուք զՏէր, զի գթասցի և ապրե-
ցուսցէ զձեզ։ Այնոքիկ, զորս սպանիք, որպէս թէ
չիցեն այլևս կենդանիք, աղաչեցէք զնոսա, քանզի
յետ մահուան իւրեանց կենդանի են առաջի Աս-
տուծոյ, առ ի աղօթել վասն ձեր. զի Աստուած
ողորմութեան է Նա։ Ի բաց ընկեցէք ի ձէնջ զպղ-
ծութիւն, որ է պաշտօն քարանց, ծառոց, ոսկւոյ,
արծաթոյ, պղնձոյ և ամենայն իրաց կռոց, զի
խաբուսիկ են այնոքիկ. և սուտ։

«Եւ ես յառաջագոյն իսկ պատուիրեցի ձեզ 138, 12.
վասն սնոտի իրացս, զի մինչ սակս այսոցիկ ի
վերայ աչաց ձերոց դոյ խաւար թանձր, ոչ կարէք
հայիլ և ճանաչել զիմաստուն Արարիչն Ամենակալ։
Քանզի տեսանէի զձեզ, որպէս հեռանայիք ի
ծառայութենէ ճշմարտին Աստուծոյ. Եւ մինչ ի

դառն տանջանս էի, և ես ոչ դադարէի զտիւ և զգիշեր աղօթել առ Աստուած, զի մի կորիցեն ոգիք ձեր։

138, 21. «Ըստ առատ գթութեան, մարդասիրութեան և մեծանձնութեան իւրում ստեղծ նա զմարդն ի սկզբանէ, զի գնասցէ ըստ կամաց իւրոց։ Եւ ահաւասիկ կոչէ զձեզ այժմ ի փառաբանութիւն Իւր ի յաւիտենական կեանս։

139, 9. «Ուստի առաքեաց առ ձեզ զսուրբ կուսանս Իւր, զի վկայեսցեն վասն Նորա, եթէ Նա է Աստուած ամենեցուն և Թագաւոր յաւիտենից և տէրութիւն Նորա ոչ անցանէ։ Ընտրեցին Նոքա (կուսանքն) զմահ ի սէր խաչին և հաւատոյն իւրեանց առ ճշմարիտն Աստուած։

139, 24. «Եւ վասն աղօթից սրբոց կուսանաց ծանեարուք զԱստուած և մահուամբ սրժանի լերուք միածնի Որդւոյն Աստուծոյ, Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ մեռաւ վասն մարդոյ, զոր ստեղծ ձեռամբ իւրով, առ ի տալ նմա կեանս։ Ոչ եթէ ոչ կարէր փրկել զմարդն առանց Իւրոյ մահուան, այլ զի բարձրացուսցէ զորդիս մարդկան իւրովք չարչարանօք։

140, 10. «Եւ Նա ապաքէն կարէր առանց վկայութեան սրբոց կուսանաց հաստատել զճշմարտութիւն, եթէ ինքն Աստուած է, բայց արար զայն, զի պսակեսցէ մեծաւ փառօք զայնոսիկ, որք սիրեն զՆա ցմահ։ Յայսմհետէ գիտասջիք որպիսի բազում և զանազան հարուածովք և տանջանօք չարչարեցիք զիս, յետ այնորիկ արկիք զիս ի վիրապ, ուր կեցի ընդ օձս և ընդ կարիճս, բայց գթութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ի վեր է քան զամենայն միտս, ապրեցոյց զիս ի միջոյ նոցա և արժանի արար բանի Նորա զի տաց զդեղ փրկութեան ոգւոց ձերոց և մարմնոց ձերոց, զի



փրկեսջիք և խոստովանեսջիք զճշմարիտն Աս-
տուած։

[105] «Ցայսմհետէ լուարուք զբանս արդա- 141, 8.
րութեան. որք Արարչին ամենեցուն էք սեպհա-
կան. ապրեցարուք, և փրկեցարուք յաւիտեան,
և արժանի լերուք երկնից արքայութեան։

«Եւ եթէ որբեսջիք և ջնջեսջիք զսուտն, յայն- 141, 14.
ժամ արժանի գտջիք շնորհաց ի մարդասիրէն
Աստուծոյ, յայնժամ և սուրբ կուսանքն, զորս
սպանիք դառն տանջանօք, միրատին գոհասցին
և աղօթս արասցեն վասն փրկութեան ձերոյ։
Իսկ յիմէ քարոզութենէս և ի վարդապետու-
թենէս լիցի ձեզ չար մեծ, երկայնակեացք լինի-
ցիք, լցջիք երկրաւոր բարեօք և յետ աստեացս
մտանիցէք յարքայութիւն երկնից։

«Իսկ եթէ ոչ ընկալջիք զքարոզութիւն և 142, 1.
զվարդապետութիւն իմ՝ հասցէ անվրէպ ի վերայ
ձեր բարկութիւն չար քան զառաջինն. խնդրեսցէ
ի ձէնջ զարդար կուսանաց զարիւն, զորս հեղիք
յանիրաւի, մատնեսցէ ի ձեռս օտար թշնամեաց
և ամենեքեան մեռանիցիք դառն մահուամբ։

Եւ մինչ երանելին մտադիր ուսուցանէր 142, 7.
զնոսա, յարեան ամենեքին ի միասին, եդին ձեռս
ի վերայ պարանոցի իւրեանց և պատառեցին
զհանդերձս իւրեանց. իսկ Նախարարք և մեծա-
մեծք նստէին լքեալ, և ասէին ցերանելին. «Լինիցի՞
մեզ արդեօք փրկութիւն առաջի Տեառն, մինչ
կորուսեալ եմք արդէն զաւուրս մեր ի մոլորու-
թեան, և գնացեալ ընդ ճանապարհս խաւարի։
Թողցէ՞ արդեօք զբազմութիւն մեղաց մերոց»։

Ասէ ցնոսա Գրիգոր. «Արդարև Աստուած 142, 18.
ողորմած է, մարդասէր, անոխակալ, բազմագութ
և գթած առ ամենեսեան, որք կարդան առ
Նա ճշմարտութեամբ, և թողու զմեղս իւրաքան-

չիւրում, որ աղօթէ առ Նա ի բոլոր սրտէ։

142, 22. Եւ նորա ողբալով ասեն. «Լուսաւորեա զմեզ և հաստատեա զմիտս մեր, զի խոստովանեսցուք զԱստուած, զԱրարիչն մեր։ Եւ եթէ է մարդասէր, ընկալցի զմեզ ըստ ողջմանս. եթէ լիցէ մեզ հնար ապաշխարելոյ՝ մի դատեսցի զմեզ վասն անձնապաստան գոլոյ մեր, և մի յիշեսցէ զմեղս մեր զառաջինս. իսկ եթէ ոչ, թող զի կորուսցէ զմեզ վասն մեղաց մերոց» Ոչ. փրկեսցէ Նա զմեզ ըստ առատ սիրոյ Իւրում։ Սմին նման և դու թող մեզ. ուսո՛ մեզ զարդարութիւն և հաստատեա զմեզ ի ճանապարհի ի ճշմարտութեան։

148, 9. Բանիւս այսուիկ դարձան նորա առ սուրբն. զաղաղակ բարձին ողբովք. անկանէին առ ոտս նորա և ոչ համարձակէին հեռանալ ի նմանէ և ոչ քայլ մի վասն հարուածոց դիւաց և պատուհասից, որք հասին նոցա ի թշնամւոյն։ Քանզի ընդ հեռանալն նոցա ի նմանէ սակաւիկ մի, դևք մտանէին ի նոսա և բռնադատէին ուտել զանձ-նիւր մարմին։

143, 19. Եւ իբրև սուրբն Գրիգոր լուաւ զբանս նոցա, որ առ ինքն՝ ելաց և ասէ ցնոսա. «Դուք արդէն գիտէք. զոր արարիք ընդ իս և զիարդ չարչարէիք զիս զանազան տանջանօք որպէս զմարդասպան ոք, մինչ ես ոչ զոք ի ձէնջ խուեալ էի։ Եւ մինչ բազմաց ի մարդկանէ անհնարին էր կեալ ժամ մի ընդ սողունս ընդ այնոսիկ՝ դուք թողիք զիս ընդ նոսա զամս հնգետասան. բայց շնորհիւ Տեառն իմոյ Յիսուսի Քրիստոսի կացի անդ ողջանդամ և անվտանգ ի նոցանէ։

144, 6. «Ըստ հրաշիցս այսոցիկ ծաներուք զզօրութիւն Աստուծոյ իմոյ. զի է Նա Արարիչ. կարէ խափանել զչար միտս ամենեցուն, որպէս խափանեաց յինէն զթշնամութիւն այնց սողնոց [107], որք էին ի խոր վիրապին և ընկերացեալ էին ընդ

ծառայի Իւրում։ Թէև չէի արժանի առատ գթոյ
Նորա, բայց ազատեցայ վասն փրկութեան ձերոյ,
զի խոստովանեսջիք զնա ինև, ընկալջիք զբազ-
մութիւն հրաշից Նորա ըստ իմում քարոզու-
թեան։

«Եւ անշուշտ հարկ ի վերայ իմ կայ յայտնել 145, 12.
ձեզ, զոր պատուիրեաց ինձ Տէր. Եւ մինչ ի վի-
րապին էի, տեսանէի միշտ տեսիլս։ Տեսանէի, զի
հրեշտակ Նորա քաջալերէր զիս, և որպէս այժմիկ
տեսանեմ զհրեշտակս, որ ցանգ առեն ցիս. «Քա-
ջալերեաց, զօրացիր, զի Տէր Աստուած փրկեաց
զքեզ, արժանացոյց քարոզելոյ զբան Նորա, և
շնորհեաց քեզ գիտութիւն վասն փառաբանու-
թեան Նորա, զի ընկալցիս զհատուցումն ընդ-
այնոսիկ, ո՛ք փառաբանեն զնա։

«Բան իմ չէ վասն այնորիկ զի պարծեցայց, 146, 2.
այլ զի ոչ կարեմ թագուցանել զհրաշս Տեառն,
յայտնելով ձեզ, եթէ Նա փրկեաց զիս ի մահ-
ուանէ, իսկ ես առաջի ձեր էի որպէս մե-
ռեալ, այսմ վկայք իմ դուք էք. և որպէս ի մեղս
մեռայք՝ այժմ կենդանացէք ինև, որ առա՛ջի
ձեր համարեալս էի ընդ մեռեալս։ Քանզի հրա-
մայեաց ինձ Տէր պատմել ձեզ վասն ամենայն
հրաշից Նորա մեծամեծաց, առ ի դարձուցանել
զձեզ ի պաշտամանէ սին կռոց և առաջնորդել ողոր-
մութեամբ իւրով ի ճանապարհ ճշմարտութեան,
առ Աստուած կենդանի, առ Արարիչն երկնի և երկրի
և ամենայնի, որ ի նոսա, և առ միածին Որդի
Նորա և առ Սուրբ Հոգին ամենակեցոյց, զի
ապաշխարութեամբ արժանասջիք հանդերձեալ
բարեաց։

«Յայսմհետէ հայեցարուք ի մեծ քարոզիչն 377, 14.
Յովհաննէս. որ խօսէր բարձր ձայնիւ առ ժողո-

*վուրդն Աբրահամու և ասէր. «Արարէք պտուղ արժանի ապաշխարութեան և մի ասիցէք թէ Աբրահամ է հայր մեր ա։ Ասեմ ձեզ, զի Աստուած կարող է յարուցանել ի քարանցս սերունդս Աբրահամու։ Զայս ասէր, ոչ եթէ հրաժարէր ի պատուելոյ զԱբրահամ, այլ զի յորդորիցէ զնոսա յապաշխարութիւն, և հոգայր զնոցանէ, զի ճշմարիտ գործովք լինիցին որդիք Աբրահամու։ Արդարև, զամենայն, որ առնիցէ զպտուղ բարի, ընկալցի Աստուած և շնորհեսցէ նմա զբարի հատուցումն, իսկ որ ոչ բերիցէ զպտուղ բարի, ոչ լինիցի*
879, 3. *նմա պարգև, այլ չորացուսցէ զնա և արասցէ կերակուր հրոյ բ, որպէս ասաց Եսայի մարգարէ գ. «մեղաւորք լինիցին նմանք տատասկի, որ անկանի ի հուր և այրի»։ Իսկ այնոցիկ, որք տացեն պտուղ բարի, հատուսցէ պարգևս յարքայութեան Իւրում և լուսաւորեսցէ յերկրորդում գալստեան Իւրում։ Ամենայնի որ բերէ պտուղ հատուսցէ Նա, որպէս ասացն.«Ընդ միոյ՝ երեսուն, վաթսուն և հարիւր դ»։ Հատուցումն գործոց իւրաքանչիւրոյ ի նոցանէ լինիցի ըստ չափու հաւատոյ նորին։*

419, 1. *«Եւ յայսմհետէ, եղբարք, փութասջուք ամենեքեան ի միասին առ փրկութիւնն զի զերծանիցիք ի բարկութենէ, որ պատեալ է զձեօք, և գտջիք հանգիստ ի դիւաց, որք բազում վնասուց եղեն ձեզ պատճառք, և որպէս զի վասն փրկութեան՝ դարձցի առ ձեզ զգօնութիւն, որ յափշտակեալն էր ի ձէնջ։ Իսկ որ ինչ վասն իմ, ապաքէն աւանդեցի ձեզ զպատուիրանս աստուածութեան Նորա ի սկզբանէ ցվախճան, ոչ թագուցանելով ինչ, յորում էր շահ օգտի վասն ձեր։*

ա. Մատթ. գ. 8. 9։ Ղուկ. գ. 8։
բ. Մատթ. գ. 10. է. 19։ Ղուկ. գ. 5։
գ. Ես. ա. 31. լգ. 12։ Մատթ. ժգ. 30։
դ. Մատթ. ժգ. 23։

[109] «Արդ, եկա՛յք ամփոփեսցուք զմարմինս 420, 1.
սրբոց կուսանաց, զի ի պատճառս նոցա շնորհեսցի
ձեզ թողութիւն։ Ծինեսցուք ի վերայ նոցա եկե-
ղեցիս, զի հեռասցին ի ձէնջ տանջանք և բարկու-
թիւն, որ պատեալ է զձեօք, աղօթիւք նոցա յոր-
ժամ ապաշխարիցէք և խոստովանեսջիք զմեղս
ձեր [մեծաւ] խոնարհութեամբ և ուղիղ հաւատով
պահօք հանդերձ՝ գիտութիւն Նորա սերմանեսցի
ի սիրտս ձեր և իմասջիք զհաճոյս Նորա, արժանի
լիջիք սրբոյ մկրտութեան հանդերձ ժառանգու-
թեամբ սիրելեաց Նորա. հասջիք ճառագայթից
լուսոյ և գիտասջիք զզօրութիւն և զփառս խա-
չին՝ որով դառնան. որ է վասն կորուսելոց՝ յի-
մարութիւն, իսկ մեզ հնազանդելոցս և փրկելոցս՝
զօրութիւն Աստուծոյ ա, վասն այնորիկ զի արժա-
նասջիք լինել որդիս Նորա աստուածութեան, 421, 5.
զի սրբեսցին մեղք ձեր, և կորիցեն չար գործք
ձեր, զի տացէ Նա ձեզ չահիլ զպսակն ընդ սուրբս
Իւր, դասեսցէ ընդ փառաբանիչս Իւր և արժանի
արասցէ աթոռոյ, յորժամ սրբիցիք յամենայն
դիւական պղծութենէ, առ ի ընդ ոտիւք կոխել
զթշնամին ձեր դև, այնպէս, զի յորժամ մերձ լինի-
ջիք աթոռոյ հարսանեաց աստուածութեան Նորա՝
կցորդք լինիցիք փառաց սրբոց Նորա—ճաշակողաց
զմարմին Զօհի, միածնի Որդւոյ, ըմպիջիք զանա-
րատ արիւն Նորա և արժանապէս հաղորդակից
լինիջիք Քրիստոսի, զի ի ձեռն Նորա լինիջիք ընդ
Սրբոյ Հոգւոյն»։

Եւ այսօրիւք և սոցին նման բանիւք քարոզէր և 422, 5.
ուսուցանէր զնոսա։ Այո, աղօթէր երանելին վասն
նոցա և ասէր ցնոսա. «Դարձարո՛ւք ի տունս ձեր ա-
ռանց երկիւղի»։ Եւ էր այն ընդ երեկս։ Եւ նա ասէ
ցնոսա. «Ընդ առաւօտն եկայք առ իս և շինեսցուք

ա. Ա. Կորնթ. ա. 18։

վկայարանս վասն մարմնոց սրբոց կուսանաց, զի ի շնորհս երկրաւոր շինուածոյս այսորիկ շինեցին ձեզ յերկինս բնակարանք, զորս յուսամք ժառանգել աղօթիւք սրբոց կուսանաց և արժանաւորիլ արքայութեան Քրիստոսի. «և Նմա փառք և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից։ Ամէն *»։

422, 16. Եւ աւարտեալ զբանս՝ արձակեաց զժողովուրդն. իսկ Թագաւորն և մեծամեծք ոչ կամէին մեկնիլ ի Նմանէ և ոչ ժամ մի, քանզի դեռ յայն տանջանս էին. այլ զտիւ և զգիշեր կային ի միասին ընդ Նմա ի Նմին հնձանի, որ էր ի մէջ այգեաց։ Նստէին որպէս զգերեալս, պահս պահէին յեօթնեկէ յեօթնեակ։ Երանելին Գրիգոր անցոյց զաւուրս վաթսուն և հինգ ուսուցանելով զնոսա, սաստելով Նոցա և խրատելով զնոսա զամենեսեան՝ և հրահանգէր ի ճշմարիտ և ի հաստատուն հաւատս, այսինքն, ի հաւատս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

424, 21. Բայց յառաւօտէ վաթսներորդի վեցերորդի աւուր ժողովեցան իշխանք, նախարարք և ամենայն մեծամեծք և այլ մարդիկ ի միասին կանամբք և տղայովք հանդերձ և աղաչեցին զսուրբն Գրիգոր, զի աղօթեսցէ վասն նոցա առ ի գտանել նոցա դիւր յայնմ, յորմէ տառապէին։

425, 8. Նախ քան զբժշկութիւն իւրեանց՝ խնդրէին վասն բժշկութեան Թագաւորին. քանզի տեսիլ նորա նման էր դեռևս կերպարանաց և պատկերի խոզի։

425, 25. Երանելին Գրիգոր, նահատակն Աստուծոյ, ընդ ելանելն ի վիրապէ, գնաց ի տեղի մարմնոց սուրբ կուսանաց։ Տէր առաջնորդեաց զնա առ նոսա։ Ժողովեալ էին արդէն ամենայն մարդիկ

* I, Պետր. Ե. 11։

ի տեղին յայն. և դիւահարեալ՝ [111] ուտէին
զմարմինս իւրեանց, իսկ արքայն ի կերպարանս
խոզի հալածեալ լինէր ի դիւէ մինչև եհաս յայն
տեղի։

Եւ երանելին Գրիգոր աղաչեաց զմարդա- 426, 9.
սէրն Աստուած դարձուցանել առ արքայ միայն
զմարդկային միտս և զլսելիս յականջս, առ ի
իմանալ զզօրութիւն բանից։ Ջաւուրս վաթսուն
և վեց մնաց նա ի կերպարանս խոզի։

Եւ Նոքա կրկնէին զաղաչանս առ սուրբն 426, 22.
Գրիգոր յաղագս արքայի, զի դարձուսցէ ի նա
զմարդկային պատկեր. Եւ ասէ ցնոսա երանելին
Գրիգոր. «Մարդ եմ ես իբրև զմի ի ձէնջ։ Յա-
ռաջագոյն հասին ինձ չարչարանք ի ձէնջ։ Սակայն
խնդրեցից յԱստուծոյ փրկութիւն վասն ամենե-
ցուն։ Նոյնպէս և դուք խնդրեցէք ի բոլոր սրտէ
վասն բժշկութեան, զի Նա է Աստուած մարդասէր
և ողորմեսցի ձեզ։ Եւ յայսմհետէ մի երկնչիք. այլ
խնդացէք, զի Նա քննող է սրտից և երիկամանց,
գիտէ զոր թագուցանէքն [ի միտս], և շնորհեսցէ
ձեզ փրկութիւն։ Բայց փութացարուք շինել եկե-
ղեցիս վասն հանգուցանելոյ զմարմինս սրբոց կու-
սանացն Աստուծոյ, զի և Նոքա փութացին
խնդրել վասն ձեր և դուք ազատիցիք ի բարկու-
թենէ, զի Նա փրկեսցէ ի խիստ երկիւղէ դա-
տաստանի Իւրոյ և արժանաւորիք մահուան Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի»։ Լուան Նոքա և ասեն.
«յամենայնի, զոր հրամայես, ստուգիւ անսամք
և հնազանդիմք։ Միայն հրամայեա զոր ինչ 443, 18.
առնել պարտ իցէ մեզ»։ Երանելին Գրիգոր ասէ.
«Եկայք դուք ամենեքին ի միասին, ի շինել [եկե-
ղեցիս] վասն հանգստեան ոսկերաց սուրբ կու-
սանացս»։

Յայնժամ Թագաւորն որպէս էր յայն կեր- 443, 21.

պարանս, բայց մարդկային զգօնութեամբ և լսե-լեօք՝ մերձեցաւ առ սուրբն Գրիգոր խնդրելով աղօթել վասն ձեռաց և ոտից իւրոց, զի կարասցէ գործակից լինել այլոց՝ ի շինելն տաճարս կուսանաց։

444, 10. Եւ երանելին Գրիգոր խոնարհեցաւ յերկիր, աղօթեաց և գիմեաց խնդրուածով առ ամենազօրն Աստուած զի տացէ բժշկութիւն թագաւորին։ Եւ վաղվաղակի լուաւ ձայն յերկնից, որ ասէր. «Գրիգոր, պինդ լեր և զօրացիր. Ես ընդ քեզ եմ մինչև իսպառ. շինեա՛ զտաճարս և բարձրասցի եղջիւր նոցա։ Աղօթք քո լսելի եղեն. և շնորհեցի քեզ՝ զոր խնդրեցերն։ Լուեալ զայս՝ զօրացաւ սուրբն, դարձաւ ի թագաւորն կոյս, մերձեցաւ ի ձեռս և յոտս նորա յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և տեառնագրեաց զնոսա և նոյն ժամայն փոխեցան յիւրեանց մարդկային բնութիւն։

444, 22. Եւ թագաւորն սկսաւ ասել ցերանելին. «զինչ հրամայիցես ինձ»։ Եւ սուրբն ետ նմա զչափ դագաղաց որբոց զի բրեսցէ վասն նոցա և վասն մարտիրոսաց կուսանաց [գամբարանս]։ Յայնժամ ասէ թագաւորն ցսուրբն. «Հրամայեա, զի կոչեսցեն զկին իմ զԱշխէն (Աշխէն) և զքոյր իմ զԿուսարոդուխտ (Խոսրովիդուխտ). զի նոքա ևս վաստակեսցին ի շինելն զտեղիս սուրբ կուսանաց»։ Եւ երանելին թոյլ ետ նմա։

445, 12. Յայնժամ առ թագաւորն բահ և բրէր գուբս վասն դագաղաց, յորս եդեալ էին զմարմինս որբոց կուսանաց։ Ընդ նմա ի միասին էին [113] ի բրելն կին նորա և քոյր, որք փոխանակ կողովոյ, ի հանդերձս իւրեանց ի բաց տանէին զհողս։ Յետ այնորիկ բերին զմարմինս սուրբ կուսանացն— Երանելւոյն Հռիփսիմեայ և երեսուն երկուց՝ նա-

հատակելոցն ընդ նմա—ի տեղին, ուր նահատա-
կեալ էին, [և շինեցին անդ եկեղեցի]։ Եւ շինեցին
զայլ եկեղեցի ի տեղւոջ, ուր վկայեցին երանելին
Գայիանէ և երեք կուսանք ընդ նմա, և բերին
զմարմինս նոցա ի տեղին, ուր սպանեալ եղեն։
Եւ շինեցին ևս եկեղեցի ի հնձանին, ուր սպանեալ
եղև միւս կոյսն, որ տանջեցաւ ի հարցափորձն։

Եւ իբրև կատարեցին զշինութիւն եկեղեցեաց հմ. 446, 7.
և փոխադրեցին ի նոսա զմարմինս սրբոց կուսա-
նաց, թագաւորն խնդրեաց զսուրբն Գրիգոր թոյլ
տալ նմա գնալ ի լեառն, որ կոչի Արարատ, ի
գաւառն, որ կոչի Մասիս, և բերել անտի ի վերայ
ուսոց իւրոց գերանս և սրունս վասն դրանց եկե-
ղեցեաց, զի բարձեալ լիցի ի նմանէ պատկեր
խոզի։ Եւ նա հրամայեաց նմա առնել այնպէս։
Յայնժամ ի վեր ել նա ի լեառն, որ ի վերայ
Մասեաց և եհատ անտի երկոտասան մեծամեծ
քարինս վասն երից սուրբ եկեղեցեաց, յորս
փոխադրեալ էին զմարմինս կուսանաց, վասն իւ-
րաքանչիւրոյ տաճարի՝ մի մի դուռն և վասն
իւրաքանչիւր դրան՝ քարինս չորս-չորս, զորս
բերէր ի վերայ ուսոց իւրոց, զի էր հզօր հսկայ,
և զօրութիւն նորա յոյժ առաւելոյր հաւատովն։

Եւ իբրև շինեալ աւարտեցին զայսօսիկ երիս հմ. 447, 17.
եկեղեցիս, կանգնեաց ի վերայ նոցա երիս խաչս
յարևելից կուսէ. բայց սեղանս ոչ հաստատեաց,
քանզի դեռ ևս չէր քահանայացեալ նա։

Յայնժամ երանելին Գրիգոր երկիր եպագ և 449, 1.
հրամայեաց ժողովելոցն երկիրպագանել և աղօթել
արտասուօք և հայցուածովք վասն թագաւորին,
զի գազանային կերպ նորա դարձցի յառաջին
պատկեր մարդկային։ Եւ յայնժամ երանելին,
ի միասին ընդ ժողովրդեան և յառաջակայութեան

թագաւորին, աղօթեաց. ի մարմնոյ թագաւորին սկսաւ ի վայր անկանիլ ինչ՝ որպէս զխորխ, որով բարձաւ գազանային կերպն հանդերձ սաւռովն և տղմաւն։ Զգաստացաւ նա և փոխեցաւ ի կերպարանս մարդկային։

Յայնժամ գոհացան նոքա զԱստուծոյ, որ ապրեցոյց զնոսա և ուսոյց ըստ իւրում առատ սիրոյ։ Եւ նոքա փառաւորեցին զԵրրորդութիւնն և մեկնեցան ի սուրբ կուսանաց և ընդ նոսա Գրիգոր՝ որ չարչարեալն էր վասն Քրիստոսի։ Եւ նա դարձոյց զամենեսեան, որ ի Հայաստան աշխարհի, ի ճշմարիտ գիտութիւն Աստուծոյ, և նոքա խոստացան որքոյն և ասեն. «յորժամ կարգեսցին քահանայք յեկեղեցիս՝ մեք, այո, զարդարիցեմք զայնս զիարդ և կարիցեմք»։ Յայնժամ երանելին հրամայեաց պահապանաց և պաշտօնէից պահպանել զեկեղեցիս և սպասաւորել նոցա այնու՝ զի թոշակ նոցա տացի յարքունի ապարանից։ Եկն արքայ ի Վաղարշապատ քաղաք Յ։ Ընդ նմա էր նահատակն Քրիստոսի Գրիգոր, և ընդ նոսա երկոսին՝ ամենայն նախարարք։ Այսպէս փրկեցան նոքա յամենայն տանջանաց իւրեանց և ի ծառայութենէ կռոց և յայնմհետէ դարձան ի գործս բարեպաշտութեան և արդարութեան։

հմ. 461, 19, Եւ արքայ Տրդատ իբրև եհաս ի քաղաքն Վաղարշապատ պատուիրեաց դպրաց թագաւորութեան գալ և հրամայեաց նոցա գրել թուղթս առ ամենայն բնակիչս տէրութեան իւրոյ, զի յանդիման լիցին արքայի ի Վաղարշապատ քաղաքի պետք, նախարարք, առաջնորդք և իշխանք [115],—թուղթ [առ արքայն Աբխազաց և] առ արքայն Վրաց, թուղթ առ արքայն Ալանաց, և յայտնեաց նոցա ի թուղթսն զամենայն, որ ինչ անցք անցին ընդ նոսա և ասէ. «Վասն այսօրիկ

Հարկ է, զի գայցէք առ իս վաղվաղակի։ Եւ ընդ
հասանել թղթոյն՝ եկին առ նա երեքին թագա- 461, 22.
ւորքն, թագաւորն աբխազաց, թագաւորն վրաց
և թագաւորն ալանաց, ընդ նոսին և ժողով իշ-
խանաց. առաջին՝ իշխանն Գիպսի 4 [Ангела — Ան-
գելայ] երկրորդ՝ իշխանն Արտանուջի, զոր կոչէին
մեծ Բդեաշխ, [Битаксъ — Բիտաքս], երրորդ՝ իշ-
խանն Արմաթանայ, չորրորդ՝ իշխանն Ասպետաց,
ըստ կոչմանն ասպետ, որում յանձն էր պահպա-
նութիւն լերանցն Կոսեաց և «Մ-տ-զ-ն»եանց
[М-т-з-н-овъ], հինգերորդ՝ իշխանն Մամիկոնեան
ըստ կոչմանն սպարապետ։ Նա էր պետ զօրաց ամե-
նայն Հայաստանի, որպէս հեծելոց նոյնպէս և հե-
տևակաց և ոչ մեկնէր ի մեծէ արքայէն Հայաս-
տանի։ Ամենքին, զորս յիշեցաք յիշխանաց և զորս
յիշելոց եմք, ի պատերազմունս էին հնազանդք
նմա, միայն իշխանն «Կ-մ-ր-դ-լ» ի [К-м-р-д-л], մերձ
յամուրս Կորդուաց [Кордитовъ], չէր ընդ նորա իշ-
խանութեամբ։ Եօթներորդ՝ տէրն մեծի աշխարհին
Ծոփաց [Софенъ] որ մերձ ի կողմանս գետոյ (Միջա-
գետաց), ութերորդ՝ իշխան աշխարհին Գուգա-
րաց [Гургаръ], իններորդ՝ իշխանն Ռշտունեանց
[Рустиновъ]. տասներորդ՝ իշխանն «Մ-փ-ն-ս
[М-ф-н-с»-овъ]. մետասաներորդ՝ տէրն Սիւնեաց և
պաշտպանն, երկոտասաներորդ՝ իշխանն Դես-
պոտեաց [Деспотін] երեքտասաներորդ՝ իշխանն
Ուտեաց. չորեքտասաներորդ՝ իշխանն Զաւեանդայ
[Зуридонъ] մերձ ի Կորդիս. հնգետասաներորդ՝
իշխանն Խորխոռունեաց, առաջնորդ և տէր Մաղ-
խազունեաց, վեշտասաներորդ՝ տէրն Տարօնոյ։
Եւ ամենայն բազմութիւնք խմբեալ էին ըստ
արժանեաց իւրեանց։

Ահա այսքիկ են վեշտասան նախարարք, հմ. 462 17.
զորս թուեաց արքայ և յղեաց առ նոսա՝ շնորհ

արարեալ նոցա։ Եւ նոքա խորհուրդ կալան թէ
ո՞ զինչ առնելոց իցէ և որոշեցին գնալ առ նա,
և արարին։

Եւ իբրև հասին նոքա առ նա, թագաւորն
Տրդատ ասէ ցնոսա. «Աւագք պետութեան, տեարք
աշխարհաց, զօրք արքունի, պետք և իշխանք, գի-
տէք արդեօք զանցս, որք դիպեցան մեզ, զկորուստ
ուսման մոգուց և զայն, զոր արարաք ընդ
այրս այս սուրբ և ընդ անբիծ կուսանս։ Քանզի ի
մոլորութեան և ի կորստեան էաք երկրպագելով
կռոց և նոցին քրմաց, որք պաշտօն մատուցա-
նէին նոցա։ Պատուհասեաք զսիրելիս Աստուծոյ
կենդանւոյ։ Եւ Աստուած կամեցաւ պատժել զմեզ
դիւօք՝ որոց երկիրպագանէաք. զորս փառաւորէաք
և մեծացուցանէաք՝ նոքօք եղաք պատուհասեալ։
Եւ զոր չարչարեցաք, նա ապրեցոյց զնա, յա-
մենայն տանջանաց և ի մահուանէ, յոր մղէաք
զնա. զի ուսուցէ և գիտակս արասցէ զմեզ ճա-
նապարհին ճշմարտութեան»։ Եւ այսպէս պատմէր
զամենայնէ, որ դիպեցաւն նոցա։ Եւ ասէ ցնա-
խարարս. «զինչ խորհիք վասն իրիս»։ Յայնժամ
նախարարք և ամենայն հայք լցան երկիւղիւ և
խնդութեամբ, և նոյն հետայն գոչեցին. «յօժա-
րութեամբ լուիցուք Գրիգորի, հաւատայցեմք ի
հաւատս նորա և բանից նորա ունկնդիր լինիցիմք։
Անսայցեմք նմա, հնազանդեսցուք նմա, արասցուք
զամենայն, զոր պատուիրեսցէ մեզ սուրբն, և ի բաց
ընկեսցուք զպաշտամունս կռոց»։ Եւ յիրաւի.
ամենեքեան հայէին ի սուրբն, [117] և նա սկսաւ
հմ. 450, 6. ուսուցանել զնոսա, որպէս յառաջն և առաւել
եւ 450, 19. քան զայն, և հաստատել ի միտս նոցա զմեկնու-
թիւն սուրբ և աստուածային գրոց և զամենե-
սեան բժշկեաց հաւատովն որ առ Երրորդու-
թիւնն. կրթէր զնոսա, առ ի հաւատալ ի մի
Աստուած Հայր Ամենակալ, և ի միածին Որդին՝

Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, ծնեալ,
բայց ոչ ստեղծեալ, և ի Սուրբ Հոգին՝ բղխեալ
[ի Հօրէ]։

Եւ նա պահանջէր ի նոցանէ յառհաւատչեայ հմ. 451,8.
հաւատոյն կործանել՝ զմեհեանս կռոց։

Եւ նախ քան զամենայն Տրդատ սկսաւ կոր- հմ. 452, 2,
ծանել զտաճարն, զոր շինեալ էին յԱրտաշատ քա-
ղաքի։ Եւ էառ ոսկիս, արծաթս, քարինս թանկա-
գինս և զամենայն անօթս պաշտամանց աստուա-
ծոց այնքան, զորս անհնար է ընդ գրով արկանել։
Յետ այնորիկ ել արքայ Տրդատ և ընդ նմա
երանելին Գրիգոր և ժողով նախարարաց, և չո-
գան ի քաղաքն Կ-սատ-ն [К-сат-нъ] 5. և հրա-
մայեաց կործանել զտաճար Արտեմիդեայ։ Եւ
յետ այնորիկ գնացին առ պատգամախօս նո-
ցին, այսինքն ի տաճար Ապողոնի 6. և առին անտի
ոսկի, արծաթ և զամենայն անօթս սպասուց։ հմ. 454, 7.
Եւ [արքայն] զայն ամենայն ետ ի գանձարան,
առ ի պահել վասն զարդուց եկեղեցեաց՝ զորս
կամէր շինել։

Իսկ դևք լքեալ տեսին, որ եղեն, և զհա- 452, 16.
մարձակութիւն թագաւորին հանդերձ նախարա-
րօքն իւրովք ի գրաւելն զայսոսիկ [զգանձս], երևե-
ցան նոցա դև ի մէջ այրուձիոյ հեծելոյ յերիվարս,
և հետևակաց՝ վառելոց անթերի սպառազինու-
թեամբ տիգօք, սլաքօք, նետիւք և քարամբք.
Արձակէին զնոսա ի բազմաց, բայց զէնք նո-
ցա վայրապար անկանէին չպատճառելով ումեք
վնաս։ Եւ անկաւ երկիւղ ի վերայ այնոցիկ,
որ դեռ ևս ընդունելութեամբ չէին հաւատացեալ
յԱստուած։ Իսկ սուրբն Գրիգոր տեառնա-
գրեալ նշանաւ մեծի խաչին, էառ տէգ երկայն
և եմուտ ի մէջ գնդին դիւաց, որք, ընդ երևելն
նորա, պատառեցին զհանդերձս իւրեանց և ի

տեղւոջն խափանեցան, որպէս թէ չէր իսկ լեալ
հմ. 453, 4. նոցա բնաւին։ Եւ միայն ձայն նոցա լսելի լինէր,
453, 13. զի ասէին. «վա՜յ մեզ ի Քրիստոսէ. Նա, Որ ծնաւ
ի Մարիամայ կուսէ, ի դստերէ մարդոյ, հալա-
ծեաց զմեզ յամենայն տեղեաց։ Այժմիկ ահա և
աստի հալածիմք ի պատճառս առն, որ կապեալն
էր և փակեալ ի վիրապի։ Թէև ածաք ի վերայ
նորա զանազան տանջանս, բայց այն բնաւ իսկ ոչ
օգնեաց մեզ։ Այժմ գնասցուք ի լերինս Կով-
կասու, և բնակեսցուք ի կողմանս հիւսիսոյ»։

Եւ սուրբն Գրիգոր կործանեաց զամենայն
մեհեանս զայսոսիկ, իսկ արքայն Տրդատ հրա-
մայեաց պաշտօնէից մեհենաց դառնալ ի քրիս-
տոնէական հաւատս։ Եւ վասն անօթոց պաշտա-
հմ. 454, 7. մանց հրամայեաց զմասն բաշխել աղքատաց իսկ
456, 2. զմասն մի առնուլ ի գանձ արքունի։

Այսպէս արարին և յերկրին լազաց, վրաց
և ալանաց։ Եւ թագաւորքն ամենայն եղեն միա-
բանք լինել կատարեալ ի հաւատս որ ի Տէր
մեր Քրիստոս, և յետս դառնալ ի պաշտամանէ
կռոց։ Եւ թագաւորն փութայր կործանել զմե-
հեան Զևսի, առնուլ զոսկի և զարծաթ զեղ-
եալս ի նմին և տանել ի գանձարան։ Եւ եղև
այնպէս։ Եւ նա պատուէր տայր յիւրաքանչիւ-
րում՝ քաղաքի կործանել մեհեանս և պահել
զկարասիս նոցին, մինչև կարգեսցի ի վերայ նոցա
գլուխ և տնօրինեսցէ, որպէս և կամիցի։

454, 17. [119] Իսկ սուրբն Գրիգոր պատուիրէր նոցա
կանգնել խաչս և պատել պատնշաւ զմեհեանս։
Եւ նա հրամայեաց նոցա, այսինքն արքայից և
ամենայն նախարարաց շինել եկեղեցիս առանց
սեղանոց, վասն զի չունէր նա զքահանայութիւն
և պատուիրէր կանգնել խաչս ի վերայ հրապարա-
կաց, ճանապարհաց և յամենայն տեղիս, առ ի հա-

լածել ի տեղեացդ զդեւս. Եւ նա քարոզէր յամե-
նայն տեղիս, և էր մեծ բանիւն Աստուծոյ և ամե-
նայն գիտութեամբ, և Հոգին սուրբ էր ընդ նմա,
զօրաւիգն գոլով նմա՝ ըստ ցանկութեան նորա։
Անտի գնացին ի գաւառն Դարանաղեաց. հմ. 455, 17.
ընդ նոսա էին և թագաւորքն և իջին ի գիւղն
Միթրոդան [Թորդան]։ Ի տեղւոջս յայսմիկ էր
տաճար Զեւսի։ Կործանեցին նոքա զայն տա-
ճար և նա [թագաւորն] էառ զամենայն, որ
ինչ էր ի նմա և բաշխեաց ի կարօտեալս։ Եւ
զկուռս յոսկւոյ, յարծաթոյ և ի թանկագին քա-
րանց հրամայեաց պահել վասն եկեղեցւոյ, որ
շինելոց էր յանուն Քրիստոսի, և կանգնեաց
անդ խաչ։
Եւ գնացին խնդութեամբ յայլ գիւղս։ Եւ ար-
քայ նախանձայուզութեամբ և փութով դարձուցա-
նէր զամենայն մարդիկ ի պաշտամանէ կռոց և մեր-
ձեցուցանէր զնոսա առ Քրիստոս Աստուած վար-
դապետութեամբ սրբոյն Գրիգորի։ Եւ գնացին
նոքա ի քաղաքն Ափրուջիա [Афруджія] 7։ Ի տեղ-
ւոջն յայնմիկ կայր ամրոց և ի մէջ նորա էին գերեզ-
մանք նախնի թագաւորաց։ Եւ ի նմա թաղէր թա-
գաւորն Հայաստանի։ Եւ անդ էր տաճարն Դիոսի
մերձ առ թագաւորս, և այն նման առաջնոյ
տաճարին էր յոսկւոյ, յարծաթոյ և ի թան-
կագին քարանց. Եւ արարին ընդ այն որ-
պէս արարեալ էին ընդ առաջին տաճարն և կանգ-
նեցին անդ զնշան Քրիստոսի։

Եւ գնացին յայլ կողմն, ուր էր մեծ տա- 457, 6.
ճարն Արտեմիդեայ։ Եւ իբրև հասին ի տա-
ճարն Արտեմիդեայ ի մեծի քաղաքի, որոյ
անուն Արզէն (Երէզ) էր, ուր ժողովէին թա-
գաւորք և տօնէին, և ուր Գրիգոր սկսաւ զչար-
չարանս կապանօք և զանազան տանջանօք. և արդ-

իբրև մերձեցաւ արքայն, երանելին և ամենայն զօրքն, ի նորոյ երևեցան նոցա դևք ի միասին ընդ զօրախումբս և սկսան ածել սոսկումն ի վերայ նոցա։ Բայց սուրբն Գրիգոր հալածեաց զնոսա նշանաւ խաչին։ Եւ զօրն իբրև ետես, զի նա հալածեաց զթշնամին նշանաւ խաչի, յայնժամ սիրտք մարդկան բացան վասն հաւատոյ սիրով առ Աստուած կենդանի։ Եւ իսկևիսկ ինքնին կործանեցան որմք տաճարին, և ժողովուրդն ետես զայն։ Յայնժամ երանելին գնաց անդ խաչիւ։

Ժմ. 457, 20. Յետ այնորիկ արքայն, Գրիգոր և ամենայն զօրք գնացին և, անցեալ ընդ Եփրատ, չոգան ի քաղաքն Թիլ անուն։ Յետ այսորիկ կործանեաց զտաճար Աթենայ և զամենայն սպասս հրամայեաց պահել ի Թիլ քաղաքի առ ի նուիրել եկեղեցւոյն՝ որ շինելոցն էր։

458, 5. Եւ ըստ միևն օրինակի պատուէր տայրն յիւրաքանչիւր տեղիս, ուր հասանէին, և հաստատէին զքրիստոսական հաւատս, և սերմանէր ի մարդիկ բանն Աստուծոյ։ Եւ ամենայն ոք փութայր, ոմանք՝ առ ի տեսանել զթագաւորն, այլք՝ յաղագս հրաշիցն, զորս գործէր սուրբն Գրիգոր։ Բանիւ և աղօթիւք նորին [121] կործանէին տաճարք պարսպօք և ինքնին անկանէին. և նա բժշկէր զամենայն հիւանդութիւնս հինս
458, 24. և նորս: Իսկ թագաւորն Տրդատ ոչ դադարէր քարոզել յիւրաքանչիւր քաղաքի, և ասէր ցբնակիչս. «առաջին հաւատք ձեր արհամարհեալ են և կորստական»։ Եւ նա պատմէր վասն հիւանդութեանց դիպելոց նմա և աւագանւոյ իւրում, և վասն ողորմութեանն շնորհելոյ յԱստուծոյ ի ձեռն Գրիգորի, զոր ապրեցոյց Աստուած ի զանազան տանջանաց և ի վիրապէն, որ լի էր օձովք.

459, 7. Եւ չոգան ի գաւառն, որ Դերզան (Դերջան)

կոչի։ Էր անդ տաճար Զևսի. Եւ [արքայ] կոր-
ծանեաց զայն վասն վարդապետութեան սրբոյն
և փութանակի սկսաւ դարձուցանել զնոսա
[զբնակիչս] ի գիտութիւն Աստուծոյ։

Յետ այսորիկ գնաց արքայն Տրդատ ի կող- հմ. 460, 5.
մանս Արարատայ խորհել ընդ կնոջ և ընդ քեռն
և ընդ ամենայն նախարարս, առ ի կարգել ի վերայ
իւրեանց հովիւ. մատչիլ ի մկրտութիւն և արժանի
լինել նմա։ Ընդ նմա ի միասին եւ Գրիգոր ի
քաղաքն Արտասատ յարարատեան գաւառ։

Եւ [Թագաւորն] խորհուրդ կալաւ ընդ ամե- 460,§18.
նեսին։ Ասէ նա. «Եկայք այժմ, առցուք մեզ զայն,
որ ուսոյց մեզ զճանապարհն ճշմարտութեան, որ
ուսոյց մեզ զԱրեգակն արդարութեան, դարձոյց
զմեզ ի ծառայութենէ խաւարի և ժահահոտու-
թեան և եհան զմեզ ի միջոյ նոցա։ Այժմ աղա-
չեսցուք զԳրիգոր հովուել զհօտն Քրիստոսի, զի
արժանացի (հօտն) մկրտութեան և մերձեսցի ի
հաղորդութիւն սուրբ խորհրդոյ, և այրեսցին մեղ-
սամած խորհուրդք մեր ի նորա վարդապետու-
թենէ. քանզի չեմք դեռ արժանացեալ լրութեան
շնորհաց, և վասն այսորիկ յերկբայս եմք։ Յայն-
ժամ սուրբն Գրիգոր ասէ ցարքայ և ցնախա-
րարս. «չեմ արժանի բեռինս այսմիկ։ Եւ չէ ինձ
մարթ լինել միջնորդ ի մէջ Աստուծոյ կենդանւոյ
և ժողովրդեանս»։ Եւ ասեն. «դու արարեր զմե-
ծամեծ հրաշս զայսոսիկ և հաստատեցեր զմեզ
յուղիղ հաւատս ի շնորհս վարդապետութեան,
իմաստութեան և հաճոյական բանից քոց, և
զիա՞րդ չիցես արժանի լինել միջնորդ ի մէջ
Աստուծոյ և մարդկան։ Զփորձ առեալ եմք,
եթէ զոր ինչ խնդրես յԱստուծոյ բումմէ կեն-
դանւոյ, շնորհի քեզ»։ Եւ մինչ նա խարհէր վասն
իրիս, եհաս ի վերայ երեկոյ և ժամ ընթրեաց ար-
քայի և բազմութիւն մեկնեցաւ ի տեղիս իւրեանց։

461, 8. Յայնժամ իսկ գիշերի հրեշտակ Աստուծոյ երեւեցաւ արքային նման կայծական փայլատակելոյ և ասէ ցնա. «Ով Տրդատ, քանզի մտեր ի ճանապարհ ընտիր և հաստատուն, ապաքէն փութա՛ կատարել, զոր ի մտի ունիս. վասն զի որ հաստատեաց ի ձեզ զհիմն, նա իսկ ի յանդ հանելոց է ի ձեզ զխորհուրդ Երրորդութեան։ Փութով այժմ զԳրիգոր կացուցէք գլուխ ի վերայ ձեր, տարայք ի քաղաքն Կեսարիա, ուր ուսաւ նա զբանն ճշմարտութեան և զամենայն իմաստութիւն, և անդ տացի նմա քահանայութիւն։ Եւ ահա երեւեցայց նմա ես, զի մի՛ հակառակեսցի նա քեզ»։ Եւ թագաւորն զայն գիշերն եկաց յաղօթս և ի հսկմունս։ Եւ ընդ առաւօտն գումարեցան ամենայն մարդիկ։ Եւ յայնժամ իսկ գիշերի հրեշտակ Աստուծոյ երեւեցաւ Գրիգորի և ասէ ցնա. «Ով Գրիգոր, մի՛ համարձակիր հակառակիլ Տրդատայ, զի նա աղաչելոց է զքեզ հովուել զժողովուրդն, որ ժառանգեաց զփրկութիւն ի ձեռն քո»

[123] Եւ իբրեւ եղեւ առաւօտ, ժողովեցան ամենեքեան առ թագաւորն. և նա առաքեաց կոչել զԳրիգոր։ Մինչ այս մինչ այն՝ թագաւորն պատմեաց բազմութեան զտեսիլն, որ երեւեալն էր նմա։ «Եւ իսկ և իսկ, [ասէ] արժանի եղէ տեսանել զհրեշտակն»։ Եւ էր նա լցեալ երկիւղիւ և խնդութեամբ։ Եւ ասէ ցնոսա. «Հրեշտակն ասաց ցիս պատուէր տալ Գրիգորի, զի մի՛ հակառակեսցի նա քեզ»։ Եւ նա փութայր գումարել բազմութիւն, զի կատարեսցեն զայն. զորմէ խորհէին։ Եւ ահա Գրիգոր ես սթափեցուցանէ զնոսա
461, 17. տեսլեամբ իւրով և հաստատէ զբան թագաւորին։ Եւ ասէ ցնոսա. «Որպէս հրամայեաց Աստուած և որպէս [հրամայէ] կամք ձեր, այնպէս առնիցեմ ա»։

---

ա. Մատթ Լ. 21: Գործք իա. 14.

Եւ հանդերձեցան նախարարք ամենայն ի գնալ ընդ Գրիգորի ի Կեսարիա քաղաք, որ ի թարգմանելն ի հայ կոչի Մազակա (Մաժակ)։ Եւ արքայն Տրդատ առաքեաց ընդ նոսա ի միասին ընծայս մեծամեծս և պաշար վասն նոցա ի ճանապարհի, պարգեւս՝ առ ի մատուցանել պատրիարքին, պաշտօնէից եկեղեցւոյ և իշխանաց կողմացն, իսկ զդրամսն [տառացի՝ ծախք] և զպաշար՝ վասն նոցին ինքեան ի Կեսարիա և վասն վերադարձի։ Նոյնպէս և նախարարք առին ընդ ինքեանս ի կարաւանի իւրեանց պարգեւս առատութեամբ, առ շահել նոքօք զմարդիկ։ հմ. 465,21. հմ. 462,17.

Եւ համբարձին զԳրիգոր յարքայական կառս զարդարեալս ոսկւով և թանկագին քարամբք։ Նախարարք հանդիսիւ ուղեկից լինէին սրբոյն ի Կեսարիա։ Եւ առաջնորդութիւն ամենայն զօրաց էր ի ձեռս Արտաւազդայ իշխանին Մամիկոնեան։ Եւ սպարապետի, ընդ որոյ իշխանութեամբ էր ամենայն Հայաստան։ Երկոքին սոքա 8 էին հաւատարիմք արքայի կարգեալք յառաջնորդութիւնն ամենայն զօրաց։ Եւ սոքա երկոքին առաքէին յառաջապահ գունդ, ի պատրաստել իջեւանս և զանհրաժեշտ պէտս, էր այն քաղաք եթէ գիւղ։ Էին նոքա արք երեք հազար հեծեալ, բաց ի հետեւակաց, ի սպասաւորաց և ի համհարզից։ Ընդ նմա էր և Թուղթ արքային Տրդատայ առ արքեպիսկոպոսն Ղեւոնդիոս։ Եւ յիւրաքանչիւրում քաղաքի կամ ի գեղջ իբրև լսէին, եթէ Գրիգոր, նահատակն Քրիստոսի, գնայ ի քաղաքն Կեսարիա, զի կացցէ գլուխ ժողովրդեան և բնակչաց Հայաստանի, զորս դարձուցեալ էր յաստուածգիտութիւն՝ արք, կանայք և տղայք մոմովք և լապտերօք ընդ առաջ ելանէին Գրիգորի և իշխանաց, որք էին ընդ նմա։ Սոյնպէս և քահանայք ելանէին խնդութեամբ ընդառաջ սրբոյն, առ ի 466, 4.

Ժմ. 468, 14. ընդունել ի նմանէ զօրհնութիւն և փառաբանէին զԱստուած վասն դարձուցանելոյ զժողովուրդն զայն ի քրիստոնէական հաւատս ի ձեռն սրբոյն Գրիգորի։

Եւ յայնժամ եպիսկոպոսն Սեբաստիոյ ընդ ամենայն ժառանգաւորս եկեղեցւոյն աղաչեաց զսուրբն մնալ առ նոսա աւուրս ինչ։ Երանելին պատասխանի ետ և ասէ. «Ի դարձի մերում արասցուք զայդ, այլ ոչ այժմ»։ Եւ եկաց առ նոսա միայն աւուրս երկուս։ Եւ նա մեծարանօք ընկալաւ զնոսա յայս երկուս աւուրս։

Յետ այնորիկ եկին նոքա ի Կեսարիա։ Համբաւ զնոցանէ յառաջէր քան զնոսա յամենայն տեղիս ցհասանել սպասաւորաց նոցա, որք հանդերձէին զկարեւորս վասն նոցա։ Եւ ամենայն բնակիչք քաղաքաց և գիւղից ելանէին ընդ առաջ նոցա. զարմանային ընդ նոսա. գովաբանէին զԱստուած և փառաւորէին զայն, որ ազատեաց զնոսա ի պաշտամանէ կռոց։

[125] Եւ իբրև մերձեցան նոքա ի քաղաքն Կեսարիա, առաքեցին առ սուրբն Ղեւոնդիոս ծանուցանել նմա. նոյնպէս և առ քաղաքապետն՝ զի տնօրինեսցեն, թէ ուր իջեանելոց և բնակելոց իցեն։ Եւ յղեցին ոսկի բազում առ Ղեւոնդիոս պատրիարք և առ քաղաքապետն։ Եւ սուրբ հայրն պատրիարք, իբրև գիտաց զայս, կոչեաց զքաղաքապետն և պատրաստեաց նոցա տեղիս, զի լինիցի յարմար վասն բնակութեան նոցա։ Զմեծամեծս բնակեցոյց ի մեծաշէն յարկս. իսկ սրբոյն Գրիգորի հրամայեաց մնալ առ ինքն յեպիսկոպոսական տանն։ Եւ ահա, ամենայն բնակիչք քաղաքին արք և կանայք և տղայք ի միասին ընդ քաղաքապետին ընդ առաջ ելին նմա չորիւք մղոնօք արտաքս քան զքաղաքն և ողջունէին զսուրբն։ Տե-

սեալ զնոսա՝ էջ յարքունի կառաց և մեծաւ ուրախութեամբ և խնդութեամբ հետի գնայր ընդ նոսա, մինչև մտին ի քաղաքն։ Եւ իբրև մերձ եղեն յեկեղեցին, յայնժամ ել հանդէպ նոցա արքեպիսկոպոսն հանդերձ ամենայն ժառանգաւորօք (կղեր) իւրովք, քահանայիւք և պաշտօնէիւք սրբոյ եկեղեցւոյն Աստուծոյ և ողջունեաց զերանելին Գրիգոր և զվեշտասան իշխանս զայնոսիկ։ Եւ ի միասին մտին յեկեղեցին և արարին աղօթս։ Եւ հրամայեաց նոցա մնալ յեպիսկոպոսական տանն։ Եւ իրազեկ եղև ամենայն նորութեանց նոցա և սկսաւ ուսուցանել նոցա զճանապարհ աստուածգիտութեան։ Յետ այնորիկ ասէ ցԳրիգոր և ցվեշտասան աւագս եղեալս ընդ նմա, առնուլ ի նմանէ որ ինչ պիտոյ իցէ։ Իսկ առ այլս յղէր իւրաքանչիւրում՝ ի տեղի բնակութեան նորա, ուր իջևանս կալեալ էր և լցուցանէր զպէտս նոցա։ Եւ լցաւ քաղաքն ամենայն ցնծութեամբ և ուրախութեամբ. և լուցանէին ջահս յաղագս սրբոյն՝ հասելոյ առ նոսա, և յաղագս ժողովրդեան, որ փրկեալ էր ի ձեռն նորին։

Ընդ այն ժամանակս արքեպիսկոպոսն Ղևոն- հմ. 467, 14.
դիոս (առաքեաց), յղեաց առ եպիսկոպոսունս, և միտրոպոլիտս, որք ընդ իւրով իշխանութեամբ, զի ժողովեսցին առ ինքն։ Եւ իբրև եկին նոքա ամենեքին, յայնժամ ետ նոցա զթուղթ Տրդատայ արքայի, և ի թղթին էր [գրեալ] այս.

«Ի Տրդատայ արքայէ Հայոց մեծաց. ի կնոջէն հմ. 468, 4.
իւրմէ Ասխենայ (Աշխէն) թագուհւոյ և ի քեռէ իւրմէ Կուսարոդուխտէ (Խոսրովիդուխտ) և յամենայն բնակչաց Հայաստանի առ Ղևոնդիոս, տէր մեր և պետ պետաց Կապադովկիայի և Պոնտոսի, ամենայն հօտի նորա, աւագաց և իշխանաց նորա և ամենայն քրիստոնէից բնակելոց ի Կեսարիա։

«Ամենայն սիրով, հեզութեամբ և յարգանօք արժան է, ով երանելիք, որ զօրութեամբ կենդանւոյն Աստուծոյ բժիշկդ էք տկարաց, զի խոստովանեցուք և ծանուցուք ձեզ զառաջին վէրս մեր և յայտնեցուք ձեզ զառատ սէր մարդասիրին Աստուծոյ և զհարուածսն, զորս արկ Նա ի վերայ մեր։ Քանզի յառաջագոյն ի խաւարի էաք ընդ մթին մառախղովք, և մէգ ծածկեալ էր զաչս մեր և ոչ կարէաք ճանաչել զճշմարիտն Աստուած և ոչ զօրէաք հայել ի Քրիստոս-յԱրեգակն արդարութեան, քանզի ի մոլորութեան ունայն կռոց էաք, որպէս էին հարքն մեր։ Զամենայն, որ չէր ի մոլար հաւատս մեր, նզովէաք և տանջէաք։ Յայնժամ մարդասիրին Աստուծոյ հաճոյ եղև դարձ մեր ի ճանապարհն ճշմարիտ և առաքեաց առ մեզ զվկայուհիս Իւր. չարչարեցան նոքա ի մէնջ և եղեն սուրբք ի Քրիստոս։ Բայց մեք ոչ կամէաք ճանաչել [127] զմի ճշմարիտն Աստուած, և զայս Գրիգոր, որ ոչ կամեցաւ լինել կցորդ մեզ ի չարիս ամբարշտութեան և ի պաշտաման կռոց, տանջեցաք զանազան չարչարանօք և նա յաղթեաց մեզ իւրով համբերութեամբ. յետ այնորիկ պատուիրեցաք, վասն չարաչար մահուան՝ արկանել զնա ի խորս վիրապին ընդ սողունս, ուր արկանէաք զմահապարտս, որք մեռանէին ի չնչոյ սողնոց՝ չև ևս հասեալ ցյատակ, և նոյն ժամայն անզգայ լինէին։ Սակայն երանելիս այս եկաց անդ պահպանեալ ամս հնգետասան, և այսուիկ ցուցաւ մեզ, եթէ ողորմութիւն և օգնականութիւն Աստուծոյ ի վերայ նորա է, զի փրկիցուք նորա վարդապետութեամբն։ Եւ կանայք, կուսանք, փախեան ի Հռովմ քաղաքէ ի Դիոկղետիանոսէ արքայէ և եկին յերկիրս մեր։ Եւ յարքայէ եհաս առ մեզ թուղթ, որ գիտակս առնէր մեզ զայնմանէ։ Կալաք զնոսա, բայց նոքա ոչ

համաձայնեցան ընդ մոլորութեանս մերս։ Եւ չարչարեցաք զնոսա զանազան տանջանօք և յետ այնորիկ սպանաք։ Եւ Քրիստոսի կամ եղև պատուհասել զմեզ վասն չարեաց մերոց և պատուհասեաց ըստ մեծի գթութեան իւրում։ Զիս, զԹագաւորս, դարձոյց ի կերպարանս խոզի և յանձնեաց այնց դիւաց, զորս պատուէի։ Իսկ որ ինչ վասն Նախարարաց իմոց և ուագանւոյ,—ապաքէն նոքա ուտէին զմարմինս իւրեանց և պատառէին զհանդերձս իւրեանց։ Դեսպանք իմ՝ յայտնեսցեն քեզ զանցս, որ ընդ Գրիգորիս ի շնորհս տեսլեան, որ երևեցաւ քեռն իմում, զսուրբն հանին յօձալիցն վիրապէ։ Եւ մեք աղօթիւք նորա փրկեցաք ի բարկութենէ հասելոյ մեզ, և նա ուսոյց մեզ զհաստատուն հաւատս, զի ծանիցուք զկենդանին Աստուած և զՈրդի նորա և զՍուրբ Հոգի։ Զնա իսկ ընտրեցաք, զի լիցի մեզ գլուխ, բայց նա ոչ համաձայնէր այնմ, այլ վասն պաղատէաք զնա։ Յայնժամ՝ ինձ, որ անարժանս եմ, երևեցաւ հրեշտակ որ փայլէր որպէս զփայլակն և հրամայեաց ինձ առնել այնպէս։ Եւ [հրեշտակն] ասէ ցիս. «Երեւեցայց նմա ես, զի նա մի [մերժեսցէ քեզ], զոր հրամայես նմա, այսինքն ընդունել զառաջնորդութիւն։ Եւ առէք զնա, զի լիցի ձեզ հովիւ և տարայք ի տեղին, ուր ուսաւ զգիրս»։ Եւ մեք աղաչեմք զքեզ, փութա՛ ձեռամբ քով սրբով տալ նմա զկնիք քահանայութեան և առնել զնա մեզ հովիւ և ուրախացո՛ այդուիկ զդեսպանս իմ։ Եւ մեք լի նախանձաւորութեամբ խորտակեցաք զկուռս ի մասունս, կործանեցաք զտաճարս և կանգնեցաք խաչս յամենայն տեղիս. իսկ նահատակն Գրիգոր հրամայեաց մեզ շինել եկեղեցիս։ Եւ այժմ ըստ խնդրոյ մերում, թող զի փութասցի կատարել նա զայս գործակցութեամբ սրբութեան քո և աղօթեա վասն մեր հանդերձ քահանայիւք

քովք և եղբարք մերով ի Քրիստոս, զի արժանասցուք ընդունել զկատարելութիւն՝ մկրտութեամբ և զշնորհս ի Փրկչէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ և լիցուք համագասեալ ի հօտ քո։ «Ողջոյն քեզ, ո երանելիդ, ամենայն ժառանգաւորաց (կղեր) քոց, պետաց, աւագաց և բնակչաց աշխարհիդ»։

հմ. 467, 1. Երանելին Ղևոնդիոս և ամենայն բնակիչք քաղաքին Կեսարիոյ լցան խնդութեամբ։ Եւ հրամայեաց նա հոգալ զպէտս սրբոյն Գրիգորի և նախարարաց, որք ընդ նմա, և տարեալ էին վասն եկեղեցւոյ առատ նուէրս անօթոց ոսկւոյ և արծաթոյ։ Եւ զԳրիգոր ձեռնադրեցին քահանայ, որպէս հրամայեալ էր արքայ, ի վերայ աշխարհին Հայոց։ Իբրև կատարեցին զայս, վեշտասան իշխանքն առին ուրախութեամբ զամենայն, զոր բերեալ էին ի տանէ և բաշխեցին ոչ միայն յեկեղեցիս, [129] այլ և [ետուն] աւագաց քաղաքին և այլոց ազնիւ երիվարս, հանդերձս Թանկագինս, քարինս պատուականս և զայլս սոյնպիսիս։ Բնակիչք Կեսարիոյ լցան ցնծութեամբ և ուրախութեամբ վասն ընդունելոյ զսուրբ նահատակն, զիշխանական աւագանին և զպետս գաւառաց, վասն ժողովելոյ նոցա և միահամուռ ի միասին հաղորդս լինելոյ ի սուրբ եկեղեցւոջ Աստուծոյ. յաղագս սուրբ մկրտութեան նոցա և դառնալոյ առ Աստուած և յաղագս փրկութեան այնպիսւոյ ժողովրդեանն ի մնոտի և կորստական մոլորութենէ համբերութեամբ և վարդապետութեամբ երանելւոյն, այսինքն Գրիգորի, որ մնեալ, դաստիարակեալ և ուսեալ էր ի քաղաքի իւրեանց։

հմ. 467, 14. Եպիսկոպոսք հանդերձ սուրբ պատրիարքաւն Ղևոնդիոսիւ ժողովեցան և գնացին ի սուրբ և

յաւագ եկեղեցին (соборная церковь). ածին զե-
րանելին առ սեղանն, բացին զսուրբ աւետարանս
և եդին ի վերայ նահատակին Գրիգորի խոս-
տովանողի։ Եւ երանելին Ղեոնդիոս և ամենայն
եպիսկոպոսունք եդին ձեռս ի վերայ նորա. ըն-
թերցան ի վերայ նորա աղօթս, որք պէտք են
վասն իւրաքանչիւրոյ, որ ցանկայ հասանել առաջ-
նորդութեան և զգեցուցին նմա շշապիկ (ժամա-
շապիկ-стихарь)։ Ամենայն ժողովուրդն գոչէր.
«արժանի է արժանի է. արժանի է»։ Եւ կատա-
րեցին զպատարագն։ Եւ ետուն զբացեալ տեղին
ի Գիրս չորից Աւետարանաց ցարկաւագ, որում
անկանէր յայն օր ընթեռնուլ զաւետարան։ Եւ
այսպէս էր տեղին, զոր ընթեռնուլ հարկ էր. «Ես
եմ՝ հովիւ բարի, որ դնեմ՝ զանձն իմ՝ ի վերայ
հօտի իմոյ **» ևն։

Յետ աւարտման ամենայն ժողովուրդն ող- 468, 1.
ջունեաց զսուրբն՝ որպէս մետրապօլիտ մեծին
Հայաստանի Գրիգոր և կալաւ զնա առ ինքն
աւուրս ինչ հանդերձ եղելովքն ընդ նմա։
Ամենայն եպիսկոպոսք, աւագանի և մեծա-
մեծք Կեսարիոյ և այլք, արք և կանայք և տղայք
յուղի եդին զնոսա արտաքս քան զքաղաքն եր-
գօք, խնկօք և աղօթիւք։ Սուրբն Ղեոնդիոս
արքեպիսկոպոս ետ նմա յոսկերաց [ինչխարաց],
տեառն Յովհաննու Մկրտչի, որպէս ի նմանէ
խնդրեաց երանելին Գրիգոր և գրեաց պատաս-
խանի թղթոյ արքային։ Իսկ նա [Գրիգոր] ետ ող-
ջոյն (մեկնման) նմա և նոյնպէս ամենայն եպիս-
կոպոսաց. և հանին զնա յարքունի կառս հանդերձ
սուրբ նշխարօք. որ էր ընդ նմա։ Եւ նոքա
յետս ի քաղաքն իւրեանց ի Կեսարիա դարձան

---

**. Յովհ. Ժ. 14, 15։

սքանչացեալ այնմ, զոր տեսին ի մարդկանէն. որք ընդ սրբոյն էին. ցնծային այնուիկ, որ դարձոյցն զնոսա յընդհանրական եկեղեցի։ Ի թղթին, զոր գրեաց սուրբն Ղեւոնդիոս առ արքայ, էր այս ինչ։

475, 2. «Տրդատայ, արքայի Հայոց Մեծաց, Ասխենայ թագուհւոյ և քեռ նորին Կուսարոդուկտի և ամենայն ժողովրդեան. Ողջոյն ձեզ յԱստուծոյ կենդանւոյ ի Յիսուսէ Քրիստոսէ, Որդւոյ Աստուծոյ, Միածնէ, և ի Սուրբ Հոգւոյն։ Ի Ղեւոնդիոսէ արքեպիսկոպոսէ ի մեծի քաղաքի ի Դրունս Կեսարիոյ, ողջոյն ձեզ, որք պատուհասեալքդ էիք և դարձայք ի գիտութիւն, քանզի կորուսեալ էիք՝ գտայք. մեռեալ էիք՝ կենդանացայք և ընկալայք կեանս։ Ուրախ լերուք և ցնծացէք յաւէտ. քանզի յառաջին չարեաց, զորս ածիք ի վերայ սրբոց և ի վիրաց պատելոց դձեօք [131] դարձայք ի ճշմարիտ գիտութիւն։ Իմացաք զամենայն, զոր գրեալ էիր ինձ ի թղթի քում՝ և զոր պատմեցին մեզ դեսպանք քո և փառաւորեցաք զշնորհս Քրիստոսի, զճառագայթեալսն ի վերայ ձեր սակս կուսանաց, զորս սպանիք. քանզի դեռ ի մոլորութեան էիք, իսկ նոքա ժառանգեցին զկեանս յաւիտենականս ընդ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերում, և սակս սրբոյն Գրիգորի, որ ի տղայ տիոց կրթեցաւ ի գիտութեան Աստուծոյ, յուսումն բարեաց և սուրբ գրոց. եկն առ ձեզ, պահեաց զհաւատս ի Քրիստոս, կատարեաց զընթացս որպէս ասէ առաքեալն և արժանի եղև պսակին. իսկ ձեզ պարգևեաց զշնորհս Աստուծոյ ուսուցանելով զձեզ, եղև ընթացակից ընտրելոցն Քրիստոսի։ Զնա իսկ, ըստ ցանկութեան ձերում մերձեցուցի առ երկնաւորն շնորհս. ընկալաւ ի մէնջ, ի նիւ-

զիցս, զկարգ. եղև հովիւ հօտի այն՝ զոր ի սկզբանէ ընտրեաց սուրբ Հոգին, զի հաստատեսցէ զձեզ, և իբրև գլուխ՝ կատարեսցէ ի ձեզ զամենայն։ Յայսմհետէ ընկալարուք զսուրբ հովիւն խաղաղութեան, զիմաստուն վարդապետն և զառաջին առաջնորդն։ Իսկ մեք անդադար աղօթս առնելոց եմք հաստատուն հաւատովն վասն սիրոյ ձերոյ առ Աստուած և հնազանդութեան առ հովիւն խաղաղութեան, որով, հաղորդ գտայք ողորմութեանն Քրիստոսի։ Եւ յորժամ կատարիցէք զայս, յայնժամ լինիջիք ընդ մեզ և, թէև անջատ իցեմք ըստ մարմնոյ, սակայն ըստ հոգւոյ լինիցիմք միացեալ։ Հայր խաղաղութեան Աստուած և միածին Որդին Քրիստոս Աստուած պահեսցէ զձեզ Հոգւով սրբով և ազատեսցէ ի խռովութենէ և պատսպարեսցէ սիրով իւրով։ Խաղաղութիւն ընդ ձեզ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ»։

Յուղի անկան անտի խնդութեամբ և հասին հմ. 468, 1.
ի քաղաքն Սեբաստիա, իջևանս կալան ի տեղւոջ, որ կոչի ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ. և անդ հարին զվրանս իւրեանց. և վնաս ինչ ումեք ոչ հասուցին, ոչ իւիք, ոչ ի քաղաքի և ոչ ի գեղջ, այլ գնէին ի մարդկանէ ի ճանապարհային թոշակէ իւրեանց։ Բնակիչք Սեբաստիոյ ուրախ լինէին ամենեքեան ի միասին հանդերձ եպիսկոպոսաւն սրբով Պետրոսիւ։ Իշխան նորա (Սեբաստիոյ) նոյնպէս ուրախ լինէր և մեծաւ բերկրութեամբ պահեաց [տառացի նստոյց] զնոսա առ ինքն ի քաղաքին Սեբաստիոյ զաւուրս վեց։ Յետ այնորիկ յուղարկեաց զնոսա և նոքա անկան ի ճանապարհ յաշխարհն իւրեանց։ Սուրբն Գրիգոր էառ ի Սեբաստիոյ քահանայս և կրօնաւորս ոչ սակաւս առ ի կարգել զնոսա քահանայս յեկեղեցիս Հայաստանի։ Ընդ նոսա էր Թուղթ ի պատ-

րիարքէն Ղևոնդեայ առ Պետրոս եպիսկոպոս Սեբաստիոյ, զի գայցէ նա ընդ նմա առ ի նստուցանել զնա յաթոռ, որպէս հրամայեն կանոնք եկեղեցւոյ։

469, 7. Իբրև հասին ի Մեծն Հայաստան, ընդ առաջ նոցա ելանէր ժողովուրդ յամենայն կողմանց, և եգիտ նա (Գրիգոր) զի ցհասանել իւր արդէն շինեալ էին նոքա եկեղեցիս յամենայն քաղաքս [կողմանս], յորս կանգնեալ էր նա խաչս։ Եւ իբրև եհաս Գրիգոր, շինեաց ի նոսա սեղանս, իսկ եպիսկոպոսն տէր Պետրոս սրբեաց զնոսա ըստ կանոնի։ Կացուցին քահանայս ի Տարօն գաւառի, ելին
470, 15. անտի և հասին ի Շատիատ [Աշտիշատ], ի տեղւոջ իմիք ի քաղաքիս արքունի կառք, յորում նստեալ էր սուրբն Գրիգոր, կառեաւ։ Ընդ նմա (ի կառսն) նստեալ էր և երանելին Պետրոս։ Ընդ նոսա էին [մասունք] յոսկերաց [նշխարաց] տեառն սրբոյն Յովհաննու Մկրտչի ևս և սրբոյն Աթինոգենայ (Աթանագինեայ)։ Գիտացին, եթէ հաճոյ լեալ է սրբոցն կալ յայնմ տեղւոջ, և պատուիրեցին իշխանաց, [133] որք ընդ նոսա էին, շինել եկեղեցի յայնմ տեղւոջ յանուն տեառն Յովհաննու։ Եւ զայս իսկ և իսկ գիտաց սուրբն Հոգւով սրբով։

470, 25. Եւ իբրև սկսան շինել զեկեղեցին սրբոյ մարգարէին, էջին ի կառաց ի Շատիատ [Աշտիշատ] քաղաքի։ Ի բարձու տեղւոջ կայր տաճար կռոց, զոր կոչէին Ափրոդիտէ։ Եւ նոքա պատուիրեցին իշխանաց կործանել զայն օգնականութեամբ մանկանց [սպասաւորաց] իւրեանց, երկրագործաց։ Առին բահս, ընթացան ի տաճարն, առ ի կործանել զայն, բայց ոչ գիտէին զճանապարհն, որ տանէր յայն և ոչ կարէին ական հա-

տանել ի պարիսպն նորա և ոչ իւիք։ Յայնժամ
դարձան և յայտնեցին զայն սրբոյն։

Եւ ահա էառ նա խաչ, գնաց ընդ նոսա, եկաց 471, 9.
մերձ առ տաճարն, ծունր եդ և աղօթեաց։
Յայնժամ յարեաւ փոթորիկ սաստիկ, կործանեաց
զորմն, դերանք ցիր և ցան եղեն. իսկ զպաս և
զամենայն պաշտօնեայս տաճարին արկ հեռի ի
խոր անձաւ մի։ Տեսեալ զայս նշան սուրբն Պետ-
րոս, որ էր ընդ Գրիգորի, յոյժ զարմացաւ, իսկ
իշխանք յետս դարձան ընդ նոսա մեծաւ խնդու-
թեամբ և երկիւղիւ և յետ այնորիկ աղաչեցին
զԳրիգոր մկրտել զնոսա յայնմ տեղւոջ։ Իբրև հմ. 472, 8.
կատարեցին զշինուած տաճարին տեառն սրբոյն
Յովհաննու և նահատակին Աթինոգենայ յայնժամ
սրբեցին զեկեղեցին, առին զերանելին և նստու-
ցին զնա յաթոռ աշակերտաց [Քրիստոսի] ըստ
կանոնի, և նա մկրտեաց զամենայն իշխանս եղ-
եալս ընդ ինքեան ի քաղաքին Կեսարիոյ և
զամենայն ծառայս նոցա։ Ժողովեցան ժողովուրդ-
բազում—արք, կանայք և տղայք, և նա մկրտեաց
զնոսա։ Ամենեքեան ուրախ եղեն, փութային
լինել կատարեալք, մանաւանդ յետ հրաշիցն,
զորս տեսին։

Եւ իբրև լուաւ արքայ Տրդատ, եթէ գայ հմ. 473,13.
սուրբ Գրիգոր, էառ զկին իւր զԱշխէն, զքոյր
իւր Կուսարօդուխտ, զթագաւորն վրաց, զթա-
գաւորն րուսաց 9, զթագաւորն ալանաց, զնա-
խարարս իւր, զիշխանս և զտեարս ժողովրդեան և
ելին ընդ առաջ սրբոյն Գրիգորի և ողջունեցին
զնա և զսուրբն Պետրոս եպիսկոպոս։ [Տրդատ] ըն-
կալաւ զամենայն իշխանս եղեալս ընդ նմա զիւրա-
քանչիւր ոք ըստ իւրում աստիճանի, էառ զթուղթ
սրբոյն Ղեոնդեայ պատրիարքի և ընթերցաւ զայն։
Քաջ իսկ գիտակ էր թագաւորն լեզուին հռոմայեց-

ւոց, քան զի դաստիարակեալ էր ի պալատան ընդ
Լիկիանեայ պատրկի։ Յայնժամ սկսաւ մեկնել ժողո-
վրդեան զԹուղԹն հասեալ առ ինքն ի պատրիարքէն
Ղեոնդեայ և Թարգմանէր ի յունարենէ ի հռով-
մայեցի, և ի հռովմայեցի լեզուէ ի հայ։
Աժ. 478, 10. Եւ ամենայն, որ լսէր, խնդայր և բերկրէր։
Եւ փուԹային ընդունել զմկրտուԹիւն առ ի ար-
ժանի լինել ընդունելուԹեան սուրբ մարմնոյ։ Եւ
երանելին Գրիգոր պատուիրէր Թագաւորին, զի
պարգևատրեսցէ զեպիսկոպոսն զՊետրոս առատ
նուիրօք և դարձուսցէ ի տեղի իւր։ Եւ կատա-
րեաց նա զայն խսկուԹեամբ։
Աժ. 478, 16. Իսկ սուրբն Գրիգոր սկսաւ քարոզել նոցա
Հոգւով սրբով զուղիղ հաւատս, հրամայեաց նոցա
պահել զաւուրս երեսուն, ուսոյց նոցա զհաւատս,
և յանձն էառ տալ նոցա զմկրտուԹիւն յետ լր-
մանն աւուրցս այսոցիկ։ Արարին իշխանք, [135]
որպէս հրամայեաց նոցա, և ի նոցանէ ոչ գոյր ոք,
զի ցուցանիցէ զաշխարհային ցանկուԹիւն ինչ, այլ
ամենեքեան ի մի օրէնս էին աւագք և չինա-
Աժ. 479, 19. կանք։ Եւ սուրբն Գրիգոր կամեցաւ չինել եկե-
Աժ. 473, 19. ղեցի ի Բագաւանի և իսկ և իսկ մեկուսացաւ վասն
474, 3. աղօԹից, հեծուԹեան և մաղԹանաց, զի պահպա-
նեսցեն նոքա զհաւատս, զոր ընկալան, հանդերձ
ամենայն քահանայիւք, եղեալք ընդ նմա և կրօ-
նաւորօք, զորս կամէր կացուցանել ի քահանայս
յեկեղեցիս։ Եւ սկսաւ սրբել զեկեղեցիս և կարգել
ի նոսա քահանայս յայնոցունց՝ որք գիտէին զսուրբ
գիրս։ Զոմանս առաքեաց ի Վրաստան, զոմանս՝
յերկիրն աբխազաց և զոմանս՝ առ ալանս։

Աժ. 480, 3. Եւ իբրև լցան աւուրք երեսուն, և ժառան-
գաւորք [կղեր] ժողովեալ էին առ նա, յայնժամ էառ
զամենայն ժողովուրդն և ած ի գետն Եփրատ մերձ
ի քաղաքն արքունի, կոչեցեալն Բագաւան. Թիւ

նոցա էր երեք հարիւր եօթանասուն հազար, արքայն Տրդատ, արքայն աբխազաց, արքայն վրաց, արքայն ալանաց և ամենայն իշխանք և պետք ազգաց և ցեղից և ամենեքեան, որ ընդ իշխանութեամբ նոցա էին և բազմութիւն ծառայից, արք և կանայք և տղայք։ Առ գետոյն հարին վրանս, զի կանանի [կանայք] արքայից իջանիցեն ի մկրտիլ։ Վեշտասան իշխանք, որք ի սկզբան մկրտեալ էին ի սրբոյն Գրիգորէ և կանանի նոցա ընկալուին ի ժամուն զմկրտեալսն ի [տեղւոջէ] մկրտութեան, առ որով արք սպասաւորէին արանց, իսկ կանայք՝ կանանց։ Գրիգոր կացեալ առ ափն գետոյն, հրամայէր նոցա մերկանալ յանձնէ զհանդերձս, նախքան զամենեսեան՝ արքային Տրդատայ և ընդ նմին երից թագաւորաց և իշխանաց նորին (Տրդատայ) և սրբեաց զնոսա միւռոնաւ և խաչիւ։ Էառ նա զմիւռոնն և զիւղ [ձէթ], եհեղ ի գետն յայն և տեառնագրեաց խաչիւ։

Եւ յայսմ ժամանակի եղեն սքանչելիք. զի Մ. 480, 18.
գետն զկայ էառ ալիք դադարեցան. եդ նա ձեռս ի վերայ գլխոց նոցա, ընկղմեաց զնոսա ի ջուր աջոյն սրբով երիցս ընկղմամբ և մկրտեաց զնոսա յանուն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն։ Նմին իսկ նման առնէին և քահանայք ընդ մնացեալ մարդիկն, նոյնպէս և ընդ կանանւոյ արքայից և ընդ կանանւոյ այլ մարդկան։ Եւ երևեցաւ սիւն հրոյ ի մէջ գետոյն և ի վերայ այնորիկ փայլէր խաչ։ Ամենեքեան տեսին զայն ի վերայ ջրոյն, սիւն հրոյ, և ի վերայ նորա խաչ ճառագայթեալ, զարմացան, չփոթեցան և հաւատ նոցա ի Քրիստոս զօրանայր։

Եւ իբրև ելին ի ջրոյ, գնացին խնդութեամբ, 481, 5.
բերկրելով և պատմէին այլ ընկերի զհրաշիցն,

զորս տեսին ի ջուրսն։ Սուրբն էառ զնոսա-
նտի աղօթիւք, հանդերձ ամենայն ուխ-
տիւ կրօնաւորաց, ժամօք և խնկօք մինչև հասոյց
զնոսա յեկեղեցի, զոր շինեալ էին ի քաղաքին
Բագաւան։ Ցայգապաշտօն (հսկումն) կատարեցին
և սկսան զպատարագն և հաղորդեաց (մարմնոյ
և արեան Տեառն) զարքայն, զիշխանս նորա և
զայլ մարդիկ և արձակեաց զնոսա յիւրաքանչիւր
տեղիս ուրախս և բերկրեալս. քանզի ազատեալ
էին ի սուտ և ի խաւարային ճանապարհէ և ընթա-
նային ընդ ճանապարհն, որ լին է լուսով կենաց։

Ժմ. 484, 5. [137] Եւ արքայ ի միասին ընդ սրբոյն Գրիգորի
գնացին դարձուցանել զպաշտօնեայս կռոց ի հա-
ւատս Քրիստոսի։ Նոքա եկեալ էին յաշխարհէն
Ժմ. 484, 8. «Ա—դ—ի—թ», [«А—д—и—т»] 10 ի սպասաւորել
տաճարաց կռոց և էին եռանդունք ի կռապաշ-
տութեան։ Սուրբն Գրիգոր ուսոյց նոցա հաւատս,
և նոքա առաւել քան զամենեսեան վաստակե-
ցան ի քրիստոնէական հաւատս։ Հայրն անբիծ,
նահատակն, հովիւն խաղաղութեան Գրիգոր ի
սկզբան էառ զայնոսիկ, որք սպասաւորեալ էին
ի բագինս և ուսոյց նոցա զսուրբ գիրս։

Եւ Գրիգորս այս սուրբ, կացեալ կաթուղի-
կոս ողջոյն Հայաստանի, պատրաստեաց եպիս-
կոպոսունս և առաքեաց ընդ ամենայն երկիրն
Հայոց, ի Վրաստան և ի կողմանս «Դ—ր—զ—կ—ի—տ»
(Д—р—з—к—й—т) 11 և յալանս։ Եւ էառ զմի ի վրաց
անտի, որ եկեալ էր ընդ նմա ի Սեբաստիոյ
Իբիր—բ—զ—խուա, [Ибир—б—з—хуа] այր մետրօպօ-
լիտ և յղեաց՝ զի կարգեսցէ նա եպիսկոպոսունս
ի վերայ ամենայն Վրաստանի։ Էր նա փարուք զո-
վելի, բարեպաշտ և գիտուն եկեղեցական գրոց։ Էր
նա սարկաւագ և ականատես, յորժամ բանային
զնշխարս քառասուն վկայից և զարդարեալ էր ա-

լեօք, և վասն այսորիկ համբարձ զնա [սուրբն Գրիգոր] յայն աստիճան։ Եւ յղեաց յաշխարհն աբխազաց զՍոփրոնիոս, և էր նա քահանայ ի Կապադովկիայէ։ Էր նա առ սուրբն Գրիգոր, և սա արար զնա եպիսկոպոս և առաքեաց։ Եւ յղեաց ի կողմանս ալանաց զԹովմաս զայրն ընտիր։ Էր նա ի Փոքու քաղաքէն Սատաղայ։ Եւ էին սոքա յայնոցունց, որք ընդ նմա (Գրիգորի) եկին [ի Սեբաստիայէ] և էին տեղեակք սուրբ գրոց։

Եւ որպէս արարեալ էր ի սկզբանն, նոյնպէս հմ. 485,15.
յղեաց նա յաշխարհն գիլանաց, առ աբխազս, ի Մեծն-Սոփենս, ի Փոքրն-Սոփենս յաստիանս (Հաշտիանք?), ի Սիւնիս, ի Մոկսոենս (Մոկք?) և ի մարդապետականն, և ըստ այսմ յիւրաքանչիւր տեղի, յորում տէրն յօժարագոյնս երևէր։ Եւ առաքեաց եպիսկոպոսունս ընդ տեարս աշխարհաց, և իշխանքս այսոքիկ, տեարք և պետք ժողովրդեան յոյժ ուրախ լինէին, գնալով յաշխարհ իւրեանց ընդ եպիսկոպոսունս կարգեալս ի վերայ նոցա, և ընդ բազմութիւն քահանայից այնու, զի կանգնիցեն եկեղեցիս յանուն նահատակաց։

Վերստին փութայր յղել եպիսկոպոսունս հմ. 486, 22.
յայլ աշխարհս Հայաստանի։ Յղեաց նա զԱղբիանոս ի գաւառն Բագրևանդայ 12 և առ ամենայն բնակիչս կողմանց Եփրատայ, որք յառաջին պաշտօն մատուցանէին կռոց, խիստ մարդապետութեամբ իւրով դարձոյց զնոսա զամենեսին յաստուածգիտութիւն. վասն զի արժանի էր նա նստել յաթոռ աշակերտաց [Քրիստոսի]։ Եւ յղեաց զԵւթաղիոս ի կողմանս Բասենոյ [басіанцовъ] յեպիսկոպոս ի վերայ նոցա։ Եւ յղեաց զԲաս՝ յեպիսկոպոս Բիկուղաց։ Եւ յղեաց զՄովսէս՝ յեպիսկոպոս ի կողմանս Իբակլիրեթ և Դերձան (Դերջան): Եւ յղեաց զԵւսեբիոս

*ի կողմանս Դարանաղեաց։ Եւ յղեաց զՑովհաննէս յեպիսկոպոս ի վերայ կողմանց կուանիտացւոց։ Եւ յղեաց զԹաքիքա [Ագապէս] յեպիսկոպոս ի վերայ կողմանցՍուսքարետացւոց,և նա գնաց ընդ տեառն երկրին, զոր կոչեն* ասպետ: *Եւ յղեաց զԱղբիոս՝ յեպիսկոպոս ի վերայ սպարապետական երկրին Մամիկոնեանց, որք էին ի մերձաւորաց արքայի և սպարապետք, ի միասին ընդ գլխաւորի նոցա,* [132] *զոր պատրիկ կոչեն։ Քանզի երանելին Գրիգոր պատուիրեաց եպիսկոպոսին Աղբիոսի և ասաց ցնա. «Մի մեկնիր ի պատրկէ, լեր զեր-կրին քարոզութեամբ»։ Եւ այս վասն այնորիկ, զի եպիսկոպոսն վարժեալ էր յայլ և այլ գիտու-թիւնս ի հռովմայեցւոց և ի հեթանոսաց բար-բառս։ Եւ էր հզօր ի մեկնութիւնս սուրբ գրոց և ընդ նորա տեսչութեամբ էին Տարօն և Բզուն [տառացի Բսուն]։ Եւ զԱրտիթ արար եպիսկոպոս և յղեաց զնա ի կողմանս Մաղխազայ հանդերձ իշխանաւն նոցա Գենաարեթիոսիւ։ Եւ զԱրսուկ արար եպիսկոպոս և յղեաց ի կողմանս Սիրագ։ ԶԱնտիոքոս ևս արար եպիսկոպոս և յղեաց ի Կարդալէտ։ ԶՏերիկէս ևս արար եպիսկոպոս և յղեաց յԱտրպատական։ ԶԿիրիակոս ևս արար եպիսկոպոս և յղեաց ի կողմանս Արսամունեաց։ Եւ յղեաց նա զայլ ևս բազում եպիսկոպոսունս յայլ աշխարհս և ի ժողովուրդս։ Ըստ այսմ առաքեաց նա և քարոզիչս զօրաւորս յուսմունս ճշմարիտ բանի։ Իսկ որ ինչ վասն սրբոյն Գրիգորի, նա հաստատեաց քանի մի եպիսկոպոսութիւնս յԱյրարատ, ի Վա-ղարշապատ, յԱրտաշատ և ի Դուին և հնազանդս*
**Ագ. 489, 8.** *արար աթոռոյ իւրում։ Եւ աշխարհացս այսոցիկ, զորս յիշեցաք, յայց եղանէր։ Առ ժամանակ մի դա-դար առնոյր ի տեղիս, այցելելով նոցա և Տրդատայ*
**487, 20.** *արքայի Մեծին Հայաստանի։Եւ իբրև կատարեցաւ այս ամենայն, այսինքն հաստատեաց զամենեսեան*

ի քրիստոնէական հաւատս, զսուրբն Աղբիանոս
կացոյց գլուխ ամենեցուն ի կառավարել զերկիրն.
և այսպէս հանապազ հրահանգէր զամենայն կող-
մանս և զեպիսկոպոսունս վարդապետութեամբ
այնր հաւատոյ, յոր մտեալ էին։ Յետ այսր ամե-
նայնի [սուրբն Գրիգոր] մեկնեցաւ և բնակեցաւ
յայրի կոչեցելոյ Մանիայրետ ի կողմանս Դա-
րանաղեաց, զի հանգիցէ յաշխարհային հոգոց,
և ետ զանձն պահոց, աղօթից և հեծութեան։
Եւ ահա եհաս [լուր] առ ոմանս զսրբոյն Գրի- 494, 4.
գորէ, եթէ յառաջագոյն մտեալ էր յամուսնու-
թիւն, ծնեալ են նմա որդիք երկու, և եհաս
[համբաւ]զայսմանէ ցարքայ Տրդատ,եթէ արդարև,
մինչ երիտասարդ, ի ծառայութեան էր առ իշխե-
ցողն, ամուսնացեալ էր,և ծնեալ էին նմա երկու որ-
դիք, անուն անդրանկանն՝ Վրթանէս, զորմէ յայտ-
նի էր նոյնպէս եթէ ամուսնացեալ է, իսկ անուն
երկրորդին՝ Արիստակէս։ Սա ի մանկութենէ
ընտրեաց զկրօնաւորական կեանս յանձն առեալ
զխոնարհութիւն, զի պահպանեսցէ զաւետարանա-
կան պատուիրանս տանելով քաղցու և ծարաւոյ։
Կերակուր նորա էր բանջար և էր արգելական
ի միում տեղւոջ, ոչ լուցանելով կրակ, ի հան-
դերձս աղքատի. ննջէր գետնախշտի միշտ և ոչ
խուն ինչ ժամանակ։ Յետ այսորիկ եկին առ նա
արք, և էառ զնոսա առ իւր յաշակերտս, և խըն-
դութեամբ, յօժարագոյն կամօք և հաստատուն հա-
ւատով վարժեաց զնոսա ի սուրբ Աւետարանի և
ի մարտս ընդ ոսոխին. Փայլեցան նոքա և եղեն
մեծք առաջի Աստուծոյ և մարդկան։

Եւ իբրև լուաւ զայն թագաւորն Տրդատ՝ 495, 4.
փութանակի առաքեաց արս երիս յընտրելոց
իւրոց և ընդ նոսա թուղթ, զի ածցեն զորդիս
սրբոյն Գրիգորի՝ անյապաղ։ Անուանք յղելոց էին.

*առաջին՝ իշխանն Արտաւազդ պետ պատրկաց
ամենայն Հայոց, երկրորդ՝ Տասատէս (Տաճատ)
պետ ի վերայ Ասոնայ [Աշոցաց] երրորդ՝ Դատիաս
հազարապետ [վեզիր] արքայի։*

**495, 16.** *Եւ իբրև հասին նոքա ի քաղաքն Կեսարիա,
առին զանդրանիկ որդին նորա։ Այս, Վրթանէս,
էր ի քաղաքի, իսկ սուրբն Արիստակէս կեայր ի
լերինս մեկուսացեալ ի խցի։ Ետուն նոքա զթուղթ
արքայի* [141] *ցսուրբ արքեպիսկոպոսն Ղևոնդ,
և նա յղեաց ընդ նոսա սուրհանդակս ի խնդրել
զսուրբն. Եւ իբրև գտին զՎրթանէս, եղբարքն
[ի Քրիստոս] հարցին վասն եղբօր նորին Արիս-
տակեայ. և նա ասէ ցնոսա «նա աւանիկ կրօ-
նաւոր է ի լերինս մեկուսացեալ»։ Իբրև հասին
ի տեղին, նա ոչ կամէր իջանել առ նոսա։ Յղեալքն
ի պատրիարքէ բազում ինչ խօսեցան ընդ նմա
սիրով, աղաչելով իջանել, և ասէին. «Լաւ ևս է
քեզ իջանել առ ի քարոզել զբանն Աստուծոյ,
քան նստել մենացեալ յայսմ անապատի»։ Յայն-
ժամ էջ նա առ նոսա. իսկ նոքա յուղարկեցին
զնա յաշխարհն իւր, և իբրև հասին, յանդիման
կացուցին արքայի զերկոսին, այսինքն, զորդիս
սրբոյն Գրիգորի։ Արքայ էառ զնոսա և ընդ*
**496, 10.** *նոսա ել ի լեառն կոչեցեալ Մանուաս առ
սուրբն Գրիգոր, որ կեայր յայրին։ Եւ աղաչեաց
արքայն Տրդատ զսուրբն Գրիգոր և ասէ ցնա.
«դու ոչ գաս ընդիս ուսուցանել զմարդիկ, զի
սիրեցեր զմիայնակեցութիւն. ուստի դիր զձեռս
ի վերայ գլխոյ Արիստակեայ, զի լիցի նա մեզ
փոխանակ* [замѣститель — *տեղակալ*] *քո»։ Յօժարե-
ցաւ այսմ. ասաց ի վերայ նորա զաղօթս ձեռ-
նադրութեան յեպիսկոպոսութիւն և ետ զնա
նոցա ի տեղի իւր, որպէս գրեալ է. «Ի տեղի*

հօր քո կացցեն որդիք քո ա.։ Եւ քարոզութիւն
նորա առաւել ևս բեղուն եղև քան զքարո-
զութիւն հօր իւրոյ։ Սուրբն Գրիգոր, յորժամ
որդի նորա նստաւ յաթոռ նորա ի Մեծն Հայս,
մինչ կենդանի էր՝ յայց ելանէր նմա, և երա-
նելին շրջէր ընդ աշխարհս առ ի այցելու լի-
նել այնոցիկ, որոց քարոզեալ էր, վասն հաստա-
տելոյ զնոսա ի հաւատս իւրեանց ի միասին ընդ-
առն Աստուծոյ թագաւորին Տրդատայ, զի պինդ
լինիցին ի հաւատս իւրեանց ի Քրիստոս։

Եւ իբրև բնակիչք մեծին Հռովմայ և թա- հմ. 501, 25.
գաւոր նոցա Կոստանտին լուան զայս և զդիպեալս 503, 22.
արքային Տրդատայ, զամենայն սքանչելիս, զորս
արարեալ էր սուրբ նահատակն Քրիստոսի Գրիգոր,
յայնժամ փութանակի առաքեցին առ նա քահա-
նայս, զի եկեսցին առ նա արքեպիսկոպոսն սուրբ
Գրիգոր և ընդ նմա թագաւորն Հայաստանի
Տրդատ։ Արար զայն՝ զի լինիցի ի միջի նոցա խա-
ղաղութիւն, զի գիտասցէ զճշմարտութիւն վասն
իւրս, և զի վճարեսցէ նա նմա (Տրդատ) հարկս։
Եւ գրեաց նմա այսպէս.

«Յինքնակալ Օգոստոս կայսերէ, ի քաջայաղթն
հաւատով ի Կոստանտնէ, Տրդատայ, արքայի Մե-
ծին Հայաստանի։

«Ողջոյն ընդ քեզ։ Եհաս ի գիտութիւն մեր,
զորպիսի բարիս ցուցեր բարեկամաց մերոց, եղ-
բարց և ազգի. և մեք յոյժ ուրախ եղաք ընդ
այս և ընդ պարգևսն, որովք պարգևատրեցան
նոքա։ Հեզութեամբ և խնդութեամբ ի մտի ունի-
ցիմ զայն՝ յամենայն ժամանակս։ Եւ լուայ, եթէ
օրհնաբանեալ կուսանքն փախուցեալք ի մերմէ քա-
ղաքէս ի Դիոկղետիանոսէ, ամբարիշտ [ի հաւատս]
թագաւորէ, եկին առ քեզ և դու սպաներ զնոսա,

ա. Սաղմ. խդ. 17։

և յայնժամ ի մոլորութեան էիր և տանջեցեր զսուրբն Գրիգոր։ Յետ այնորիկ այլակերպեցաւ և փոխեցաւ մարդկային բնութիւն քո ի բնութիւն խոզի և արժանի եղեր այնմ, վասն այնորիկ, զոր հրամայեցեր [առնել] ընդ Գրիգոր, և վասն կորստեան նորա։ Նովաւ ծանեար զզարձն ի կըռապաշտութենէ քումմէ և յերկրպագութենէ անօտի կռոց, նովաւ փրկեցար և զհետ եղեր ճշմարտին Աստուծոյ։ Եւ սուրբ նահատակն համբերութեամբ արժանի եղև այնմ, զի առաքեցեր զնա ի Կեսարիա առ երանելին Ղևոնդիոս, որ ծանոյց մեզ թղթով իւրով [143] վասն ամենայն գործոց քոց։ Եւ մեք երկիւղիւ բերկրեցաք ընդ այն, զի և մեք՝ յառաջ նման քեզ էաք, և դիպեցաւ մեզ փորձութիւն, այսինքն բորոտութիւն, որ եղև ընդ իս, և յայնժամ ընկալաք զբժշկութիւն սուրբ մկրտութեամբ ի սուրբ եպիսկոպոսէն Սեղբեստրոսէ, քանզի նա նորոգեաց զիս մկրտութեամբ։ Եւ առաքեցի զօրհնաբանեալ մայր իմ, զդշխոյն քրիստոսասէր, ի սուրբ քաղաքն Աստուծոյ, առ ի խնդրել զփայտ փառաւոր և պատուական Խաչին։ Յետ այնորիկ կամ եղև ինձ տեսանել զձեզ, խնդութեամբ համբուրել զձեզ, զքեզ և զսուրբն Գրիգոր, և ցանկամ, ով եղբայր, զի կատարեսցես զայս վաղվաղակի։ Զի և իղձք մեր կատարեսցին գործով ըստ սիրոյ քում։ Եւ լիցին ընդ քեզ հազարք յաւագաց, ի պատրկաց և յիշխանաց քոց և յամենեցունց, զորս կամիցի քոյդ հեզութիւն։ Փութացո՛ զգալդ քո առ մեզ։ Արդէն առաքեցի յամենայն կողմանս, որք առ քոյով ճանապարհաւ, զի լնուցուն զամենայն պէտս և զկարիս քո։ Խաղաղութիւն ընդ քեզ, ով սիրեցեալ եղբայր։։

[Տրդատ] ընկալաւ զթուղթ թագաւորին

մեծաւ խնդութեամբ և պատուով նոյնպէս և ըղ-
հրեշտակս նորա։ Եւ նոյն ժամայն հրամայեաց պատ-
րաստել՝ զորս ընդ իւր առնուլ պէտք էին, և յաշ-
խարհին, փոխանակ իւր, եթող զպարապետն ի
պահպանել զամենայն զտէրութիւն Հայաստանի։ Եւ
արքայն Տրդատ փութացաւ հանդերձ հրեշտակօք
Կոստանդնի ի գաւառն Դարանաղեաց առ սուրբն
Գրիգոր։ Կոչեաց զնա յայրէն և եցոյց նմա զթուղթ
թագաւորին Կոստանդնի և զբազմութիւն մարդ-
կան։ Սակայն սուրբն ոչ հաւանէր արտաքս ելա-
նել յայրէ իւրմէ։ Սկսան աղաչել զնա առաքեալքն
ի թագաւորէն [Կոստանդնէ] եկեալքն ի Հռովմայ,
ի միասին ընդ թագաւորին Տրդատայ և նա յանձն
էառ ելանել առ նոսա և առ Տրդատ թագաւոր։
Յայնժամ յարդարեցին զարքայական դրօշակս,
պատրաստեցան իշխանք և աւագք. հնչեցին փողս
և հարին թմբուկս։ Ժողովեցան զօրք գնալ ընդ
արքային։ Թիւ նոցա էր տասն հազար հեծեալ։ Եւ **հմ. 502, 24.**
բարւոք ոչ վարկաւ առաւել քան զայն առնուլ ընդ
իւր, քանզի գնայր առ թագաւոր մեծ քան զինքն,
խաղաղութեամբ, առ ի կալ ընդ նորա իշխանու-
թեամբ։ Եւ չէր անկ նմա, հայեցեալ ի վայելչութիւն
թագաւորութեան իւրոյ, ելանել զօրու փոքու։ Յու-
ղի անկան զօրքն. յիւրաքանչիւր գաւառի, որ առ
ճանապարհաւն. մարդիկ ընդ առաջ ելանէին առ
ի լնուլ զամենայն պէտս նոցա։ Եւ իբրև հասին
ի քաղաքն Կեսարիա՝ լցան խնդութեամբ և բեր-
կրութեամբ, որպէս եթէ հասեալ իցեն ի բնակա-
վայրս իւրեանց։ Երկիր պագին սրբոյն Ղևոնդեայ, և
յայտնեցին զպատճառս ուղևորութեան իւրեանց,
որ արդէն չէր ի թագուն ինմանէ։ Կային ի Կեսա-
րիա աւուրս երիս ըստ բուռն թախանձանաց նորա
(Ղևոնդեայ)։ Յետ այնորիկ յուղի անկան առ կայսրն
Կոստանդին՝ թագաւոր ի Հռովմ։ Եւ իբրև հասին
ի կողմանս Իտալիոյ, ընդ առաջ ելին նմա պատ-

րիկք Հռովմայ և իշխանք և խնդութեամբ մեծաւ մուծին ի մեծ քաղաքն Հռովմ։ Թագաւորն Կոստանդին ընդ առաջ ել նոցա արտաքս քան զքաղաքն, համբուրեաց և ողջունեաց զսուրբն Գրիգոր և զթագաւորն Տրդատ և հրամայեաց նստել յարքունի կառս իւր։ Զառաջինն՝ գնացին նոքա յեկեղեցի տաճարն Պետրոսի առ ի աղօթել անդ։ Գլուխ Հռովմայ էր պատրիարքն Եւսեբիոս անուն։ Յետ այնորիկ չոգան [145] յապարանս. և ի խրախճանութիւնս եղեն զայն օր։ Ե՛ւ Գրիգոր և՛ արքայն Տրդատ մատուցին ընծայս եղեալս ընդ ինքեանս, բազում երիվարս, մարգարիտս, քարինս պատուականս և զայլս և յոյժ ազնիւ մետաքսս ոչ միայն արքայի, այլ և պատրկաց, իշխանաց և ամենայն աւագաց, իւրաքանչիւրում ըստ իւրում աստիճանի։ Յետ այսորիկ թագաւորն Կոստանդին աղաչեաց զթագաւորն Տրդատ, զի պատմեսցէ զամենայն, որ ինչ անցք անցին ընդ նմա։

Ամ. 504, 1. Եւ սկսաւ թագաւորն Տրդատ պատմել զայնմանէ ի հռովմայեցւոց լեզու. սկսաւ ի պատրկէ Լիկինիա անուն, որ դաստիարակեալն էր զնա ի Հռովմ. և զիարդ թագաւորն էառ զնա ի Հռովմայ, ել ի պատերազմ ընդդէմ պարսից և յաղթեաց արքային պարսից՝ օգնութեամբ նորա. ի Հռովմայ իսկ չոքաւ (որպէս) թագաւոր ի վերայ Հայաստանի և մատուցանէր զոհս սուտ աստուծոց, և զիարդ Գրիգոր ոչ կամեցաւ ընկերել նմա ի գարշելի զոհաբերութեան, զիարդ վասն այսորիկ կրեաց զդառն տանջանս վասն քրիստոնէութեան. «որպէս ես» [երկայնեաց զբանն Տրդատ] հրամայեցի մատնել զնա դժնդակ մահու ի վիրապի, յոր զմահապարտս արկանէին, որք չև ևս համեալ ցյատակ, թարշամէին ի շնչոյ օձից եղելոց ի նմա (ի վիրապի) և ոչ միայն կեն-

դանի և ոչ ժամ մի։ Այս Գրիգոր, զոր տեսանես եկաց ի նմին վիրապի զամս հնգետասան. և Քրիստոս պահպանեաց զնա անդ, զի փրկիցուք նովաւ։ Եւ կանայք ևս, Հռիփսիմէ և Գայիանէ անուն, խումբ մի կուսանաց կրօնաւորաց եղելոց ընդ նոսա, փախեան ի Դիոկղետիանոսէ կայսերէ Հռովմայ և եկին յերկիրն Հայոց առանց իմոյ գիտութեան։ Կայսրն Դիոկղետիանոս առաքեաց ծանուցանել ինձ վասն գործոց նոցա։ Յայնժամ կալաք զնոսա, բայց ոչ կարացաք դարձուցանել զնոսա ի կրօնից նոցա և սպանաք զնոսա։ Յետ այսորիկ նոքա պատուհասեցին զմեզ դիւօք։ Իսկ որ ինչ վասն իմ,—ելի ի մարդկեղէն բնութենէ, մտի ի պատկեր վայրի խոզի, սկսայ ճարակել ի մէջ եղեգանց և փախեայ ի թագաւորութենէ իմմէ, իսկ գործակիցք իմ պատառէին զհանդերձս իւրեանց և ուտէին զմիս իւրեանց։ Եւ Տէր Աստուած ճշմարտութեան, յորժամ ծանեաք զնա, ոչ մատնեաց զմեզ ի կորուստ, այլ փրկեաց զգործս ձեռաց Իւրոց։ Յերազի երևեցաւ քեռ իմում լուսափայլ հրեշտակ և ասէ ցնա. «Ո՛չ լիցի ձեզ անդորրութիւն, ոչ արքայի, և ոչ ամենայն գործակցաց, եթէ ոչ հանիցէք զԳրիգոր ի վիրապէ»։ Բայց իշխանք ոչ ընկալան զբանս նորա։ Եւ այս տեսիլ երևեցաւ ոչ գամ մի։ Յետ այսորիկ գնացին, հանին զնա ի վիրապէ և գնացին ընդ նմա յերկիրն։ Յայնժամ ի պատճառս աղօթից պահոց և հեծութեան նորա Տէր Երրորդութիւնն գթացաւ ի վերայ մեր և դարձոյց ի մոլորութենէ ի գիտութիւն Աստուծոյ։ Եւ մեք կործանեցաք զբագինս կռոց։ Բազում սքանչելիք երևեցան մեզ յայնմ ժամանակի ի ձեռն Գրիգորի։ Մինչ կործանէաք զտաճարս, երևեցան մեզ դեւք և մարտնչէին ընդ մեզ։ Եւ սուրբս այս յաղթէր ակարութեան նոցա նշանաւ խաչին

իւրոյ։ Եւ զնա, որ դարձոյց զմեզ ի գիտութիւն Աստուծոյ աղաչեցաք լինել մեզ հովիւ, բայց նա ոչ կամէր։ Յայնժամ հրեշտակ երևեցաւ ինձ որ անարժանս եմ, և ասաց. «Մի հրաժարիր ի ցանկութենէդ, զոր եդեալ ես ի մտի»։ Ըստ այսմ երևեցաւ և նմա և ասէ. [147] «Մի կար հակառակ Տրդատայ»։ Եւ յայնժամ եղև այնպէս, որպէս կամեցաք»։ Եւ առաւել ևս քան զայս պատմեաց։ Մեծ թագաւորն Կոստանդին յոյժ զարմացաւ հանդերձ աւագանեաւն իւրով։

Ամ. 505, 7. Եւ իսկ և իսկ մեծ թագաւորն Կոստանդին ևս սկսաւ պատմել զայն, որ ընդ նմա դիպեալ էր։ Յայտնեաց նմա զտեսիլն երևեալ նմա յերկինս, որով յաղթեաց թշնամեացն։

Ամ. 505, 22. Եւ ընկալաւ խնդութեամբ զսուրբն Գրիգոր և զՏրդատ. և կացին նոքա առ նմա աւուրս ինչ։ Ետ նա նմա ընծայս պատուականս և բազում յոյժ անօթս ոսկւոյ վասն եկեղեցւոյ։ Ետ արքային Տրդատայ զգեստս արքայականս, ոսկեհուռն ծիրանիս։ Եւ յանձնեաց իշխանաց նորա անօթս արծաթեայս և կերպասս։ Պարտաւորեաց զնոսա հարկս հարկանել, և յակամայս, սակս սիրոյն, որ առ՟ նոսա, արձակեաց զնոսա։ Եւ առաքեաց արս յաշխարհս, զի լինուցուն զպէտս նոցա, որպէս յառաջն։ Եւ իբրև անցին ընդ ծովն մեծ, անցեալ յաշխարհն Պոնտացւոց, մտին ի սահմանս Հայաստանի։ Կատարեցին տօնս յամենայն եկեղեցիս, և հրամայեաց յիշատակել յամենայն ի տէրութեան իւրում զթագաւորն Կոստանդին և զծնող նորա զքրիստոսասէրն Հեղինէ։ Եւ ըստ այսմ, յիշատակի նա ի ժամ խորհրդոյ հաղորդութեան (պատարագ)։ Եւ յիւրաքանչիւրում աշխարհի, ընդ որ անցանէր [Գրիգոր] լինէր տօն ի պատիւ նորա։ Եւ իբրև հասին ի քաղաքն Վա-

ղարսապատ, բաշխեցին յեկեղեցիս զընծայս բերեալս ընդ ինքեանս ի Հռովմայ։

Եւ թագաւորն Տրդատ ոչ դադարէր ուսանել հմ. 509,15.
զսուրբ Գիրս ընդ նմին և զվարդապետութիւն 497, 10.
սրբոյն Գրիգորի։ Եւ աղօթէր զի գնալ կարասցէ ընդ ճանապարհն ճշմարտութեան։ Եւ յղեաց արս հինգ յընդարձակ գաւառս և երիս՝ ի փոքր գաւառս, զի առ պետսն (գաւառաց կացեալ) հսկիցեն ի վերայ պիտոյից եկեղեցեաց և կարգման ի նոսա անհրաժեշտ պաշտօնէից։ Եւ սուրբն Գրիգոր իբրև գիտաց, եթէ արքայն Տրդատ հոգայ զիրաց եկեղեցեաց, եղելոց ի Մեծն Հայաստան, աներկմիտս եղև, եթէ հաստատեալ են ի քրիստոնէական հաւատս, մեկուսացաւ յայրն իւր և նստաւ անդ խաղաղութեամբ։

Ընդ այն ժամանակս եղին Թուղթք թագա- 507, 1.
ւորին Կոստանտնի կայսեր առ ամենայն եպիսկոպոսունս ժողովիլ ի քաղաքն Նիկիա։ Սուրբն Գրիգոր հանդերձ թագաւորաւն Տրդատաւ առաքեցին եպիսկոպոսունս և ընդ նոսա՝ զերանելին Արիստակէս, զորդին Գրիգորի և գնացին նոքա ի քաղաքն Նիկիա, ուր եղև ժողով մեծ ամենայն եպիսկոպոսաց։ Անդ սահմանեցին զհաւատս և գրեցին կանոնս կաթուղիկէ եկեղեցւոյ զօրութեամբ Աստուծոյ սրբոյ, բարձրութիւն Որոյ անքննին է։ Անդ գտաւ նոյնպէս և թագաւորն Կոստանտին, եղև խոստովանող հաւատոց, ընկալաւ զբարեբանեալն զպսակ ի սուրբ ժողովոյն, եթող զյիշատակ բարի՝ յերկրի, իսկ զերկնից արքայութիւն ընկալան մարդիկ։

Երանելին Արիստակէս դարձաւ յետս հան- հմ. 507, 17.
դերձ գերազանց կանոնիւք եկեղեցւոյ և ուղիղ հաւատովք, զորս ընկալաւ ի մեծէ ժողովոյն։ Եւ իբրև եհաս ի Հայաստան, տարաւ զնոսա առ

թագաւորն և առ սուրբ արքեպիսկոպոսն Գրիգոր։ Ծանոյց զայնս նոցա, իսկ նոքա պայծառացուցին և լուսաւորեցին ուղղութեամբ կանոնաց զեկեղեցի Աստուծոյ։ Սուրբն [148] Գրիգոր պայծառացոյց լուսով նոցա (կանոնաց) զբոլոր Հայաստան։ Նա և թագաւորն պարապեալ էին ի մի գործ։ Զամենայն աւուրս կենաց իւրոց փայլեցաւ նա պահօք և աղօթիւք և աղօթէր, զի զկնի իւր մնասցէ յիշատակ արդարութեան։ Ցառաջնմէ օրէ կենաց իւրոց ցվերջինն պահէր նա պահս քառասնական աւուրս, մինչև Քրիստոս ընկալաւ զնա [ոգի] յայսմ աշխարհէ. և նա հանգեաւ։

511, 8. Գրեցի ես զայս ստուգիւ—է զի ես ինքն վկայ և ականատես եղէ, և է զի լուայ ի հաւատարիմ արանց։ Զի և դուք ընկալջիք զմասն բարեաց նորին և կեցջիք ըստ փառաւորեալ գործոց նորա, առ ի ժառանգել զաշխարհն ուրախարար վասն այնց, որք կեցին ըստ կամաց Քրիստոսի։ Եւ Նմա, և Հօր Նորա, և Հոգւոյն սրբոյ փառք յաւիտեանս. Ամէն։



# ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

## Հայոց, վրաց, աբխազաց եւ ալանաց ի սրբոյն Գրիգորէ.

(Արաբական վերսիա).

---

Ռուս հրատարակչի—Ն. Մառի—յառաջաբանը.

1902 *թուին դէպ ի Սինա ճանապարհորդութեանս ժամանակ ուսումնասիրեցի* № 460 *արաբերէն ձեռագիրը: Լուսանկարեցի ինձ հետաքրքրող նրա մի մասը: Դրա համեմատ այժմ առաջին անգամ հրատարակւող, դժբաղդաբար սկզբից թերատ, «Ս. Գրիգորի, Ս. Գայիանէի, Ս. Հռիփսիմէի և նրա ընկերների նահատակութեան» արաբական բնագիրը նոր լոյս է սփռում, մինչև այժմ միայն հայոց լուսաւորիչ համարուած, Գրիգոր Լուսաւորչի քարոզչական գործունէութեան վերայ:*

*Պատմուածքի առանձին մանրամասնութիւնները կամ ընդհանուր բովանդակութիւնը այնքան էլ ինքնուրոյն չեն, թէև տեղտեղ ունին անկախ արտայայտութիւն: Ի միջի այլոց կարող են հետաքրքրութիւն շարժել Մովսէս Խորենացու պատմութեան ուսումնասիրութեան համար կարևորութիւն ունեցող մանրամասնութիւնները:*

*Ես արդէն մատնանշել էի* (Предварительный отчеть о работахъ на Синаѣ, стр. 24), *թէ Կոստանդինի մասին գլխում* II, 83) *Մովսէս Խորենացու դիմումն Ագաթանգեղոսին՝ արդարանում է մեր արաբական բնագրով: Սեղբեստրոս պապի ձեռքով Կոստանդինի քրիստոնեայ դառնալու մասին աւանդական պատմուածքը առաջ բերելով՝ Խորենացին աւելացնում է. «Որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»: Ագաթանգեղոսի այժմեան հայ բնագրում (եր.* 499) *կայ միայն յիշատակութիւն թէ Կոստանդինը ինչպէս ջնջեց իւր թշնամիներին, իսկ նրա դարձի մասին Սեղբեստրոս պապի ձեռքով մի բառ անգամ չկայ: Եւ այս բաւական էր, բացասական քննադատութեան ներկայացուցիչների, ամենից առաջ՝ ֆրանսիական հայագէտ հանգուցեալ* A. Carrière-*ի համար* (Nouvelles sources de Moïse de Khoren. *Հանդէս ամսօրեայ,* 1893, *եր.* 183), *որ Խորենացու դիմումի մէջ տեսնէր «օգտուած աղբիւրների յայտնի թագուցումն»* (une dissimulation flagrante des sources utilisées): *Մեզ հասած հայ Ագաթանգեղոսի անաղարտ լինելու*

մասին (О начальной исторіи Арменіи Анонима, Виз. врем., 1885 I, եր. 264), իմ դիտողութիւնը, թէ անհրաժեշտ է քննաբար վերաբերուել, ըստ էութեան բոլորովին անտարբերութեան հանդիպեց: Եւ սակայն այժմ յայտնւում է, որ ի զուր. որովհետև արաբական բնագրում, յիրաւի, «համառօտ պատմւում է Կոստանտինի դարձը Սեղբեստրոսի ձեռքով. (ռուս. հրտ. եր. 143, 1—5. 147, 4—6. հայ թարգ. եր. 76. 17-19., 80) և, ակներև, Խորենացու ձեռքի Ագաթանգեղոսում այդ ասացուածը կար: Արաբական վերսիայի (Ռուս. հրատ. 143, 5-7, 147, 15-16, Հայ թարգ. եր. 76 և 80.) հաղորդածը թէ Կոստանտինը իւր մայր Հեղինէին ուղարկեց Երուսաղէմ սուրբ Խաչի համար, որի մասին ի դէպ, գրում է Մովսէս Խորենացին էլ (II, 87), չկայ Ագաթանգեղոսի հայ բնագրում: Խորենացու պատմութեան մէջ յիշուած հայոց աստուածների մասին Կարիերի, որպէս անյեղլի վճիռ արձակած տեսութիւնները (Les huit sacntuaires de l'Arménie payenne d'après Agathange et Moïse de Khoren, Paris 1899) նորից վերաքննութեան պէտք է ենթարկել: Աստուածների յունական անունները, որոնց Կարիէրը հակամէտ է յետնագոյն, գուցէ և Խորենացու նորամածութիւն համարել, թերևս, ինչպէս այժմ պարզւում է, առաջ էին քան հայկական անունները, որոնք երևան են եկել «Հայոց դարձի պատմութեան մէջ» ազգայնական տարրի զօրանալովը:

Արաբական բնագրում միայն յունական անուններն են: Այդ յունական անունները պահպանուել են հայ Ագաթանգեղոսի և Փաւստոսի մէջ որպէս հատ հատ մնացորդներ (Carrière յիշեալ յօդուած. եր. 25):

Արաբական վերսիան գերազանցում է գլխաւորապէս նիւթի գաղափարական արտայայտութեամբ: Այստեղ տեսնում ենք անկախութիւն աւանդական բնագրից՝ որը պահպանուել է հայ իսկականում և զանազան թարգմանութիւնների մէջ, որոնք անմիջապէս կամ միջնորդաբար առնչութիւն ունեն հայկականի հետ, և դրանք են յունարէնը, վրացերէնը, եթովպերէնը և արաբականի համառօտը: Արաբերէն մի ուրիշ վերսիա (փոփոխակ) էլ է հասել մեզ. այսպէս, Սինայում ես ընդօրինակեցի «Ս. Գ ր ի գ ո ր ի Ն ա հ ա տ ա կ ո ւ թ ե ա ն» մի նոյնպիսի արաբական սինակսարեան բնագիր: Բայց այս ներկայ աշխատութիւնը նուիրուած է բացառաբար արաբական ընդարձակ օրինակին, որը խնդրի մէջ ներմուծում է բաւական նոր և հետաքրքիր նիւթ: Այդ գուցէ, չափազանց խաբուսիկ լուսով է նոր և հետաքրքիր երևում ինձ, որովհետև նա աւելի է զուգադիպում իմ տեսութեանը Վրաստանի և Հայաստանի պատմական կուլտուրական երևոյթների

ծագման ցեղակից լինելու մասին՝ քան ես անգամ կարող էի կարծել։ Մանաւանդ դժուար էր սպասել այդպիսի մի նեցուկ մեզ հասած յիշատակարաններից, որովհետև դրանք մեր համար հետաքրքիր երևոյթները առաջ են բերում այս կամ այն յետնագոյն ազգայնական կամ ազգային եկեղեցական հայ, վրացական և յունական տեսակէտով։ Սակայն ես չեմ շտապում յիշատակարանը իմ տեսութեան օգտին ծառայացնել ամբողջովին։ Չեմ շտապում, որովհետև, դեռ ևս չեն գծուած այն պատմական գրական շրջանակները, որոնց մէջ հրատարակածս վերսիան հեշտութեամբ կարող լինէր գտնել պատշաճ տեղ։ Դրա համար դեռ բաւականաչափ չեն ուսումնասիրուած ոչ հայոց և ոչ վրաց ձեռագրերը։ Այդ գրչութիւնների (հայ, վրացի) իսկական պատմական հասանքը հազիւ միայն սկսում է թոյլ կերպով նշմարուել։ Միւս կողմից, ես իրաւունք չհամարեցի ուշացնել յիշատակարանի հրատարակութիւնը. նա հետաքրքիր է շատերի համար, որոնց գործակցութիւնը արաբական վերսիան ուսումնասիրելու ժամանակ կարող է օժանդակել պարզելու և բնագրի զանազան կտորները, գուցէ և առանձին հորիզոն բանալու և դրանով գնահատելի նիւթ տալ լիովին և հաստատուն կերպով լուսաւորելու յիշատակարանը, որ կապ ունի իմ տեսութեան հետ (теорія) հայերի և վրացիների, այս դէպքում, եկեղեցական կեանքի ծագման ցեղակցութեան վերաբերութեամբ։ Վերջապէս, թէ այս տեսութեան համար Նահատակութեան արաբական վերսիան ունի ու և է նշանակութիւն, այդ այժմ էլ պարզ է։ Խնդիրը միայն այն է, թէ յատկապէս ո՞րպիսի նշանակութիւն։ Հայ-վրացական եկեղեցական կեանքի ո՞ր էջն է լուսաբանում. Հայերի և վրացիների եկեղեցական հաղորդակցութեան ո՞ր շրջանի հայեացներն է ցոլացնում։

Այս իմ յառաջաբանը, կարծում եմ, բաւական է կանխելու, թէ բնագրի վերջում դրած ընդհանուր գծերով կարծիքը ունի առ այժմ միայն ենթադրական նշանակութիւն։

Բնագրից յետոյ դրուած են Սինայեան ձեռագրի նկարագրութիւնը և բնագրի քննութեան, նոյնպէս և արաբական իսկականի և ռուսական թարգմանութեան հրատարակութեան մասին նկատողութիւնները։

Մեծայարգ Բարոն Վ. Ր. Ռօզէնին մատուցանում եմ անկեղծ շնորհակալութիւն տպագրական լրացուցիչ սրբագրութեան և մի կարգ ուղղումների համար, որոնք հնարաւորութիւն տուին աշխատութեանս աւելի կատարեալ ձևով երևալ։

---

# ՎԵՐՋԱԲԱՆ

## ՌՈՒՍ ՀՐԱՏԱՐԱԿՉԻ—Ն. ՄԱՌԻ

*Հայաստանի նոյնպէս և Վրաստանի քրիստոնեայ դառնալու մասին կան մի քանի աւանդութիւններ: Մեզ հասած այդ տեսակ տեղական ընդարձակ աւանդութիւնների խմբագրութիւնները այն ժամանակի գործ են, երբ հայ և վրացի ցեղերը՝ Վրաստան և Հայաստան ազգային—քաղաքական համապատասխան միութիւնների մէջ էին ձուլւում կամ ձուլուելու ճանապարհի վերայ էին: Հէնց այս շրջանում (էպօխա) դարձերի մասին տեղական աւանդութիւնները, այս կամ այն երկրում—գաղափարապէս միացած բոլոր Հայաստանի կամ գաղափարապէս միացած բոլոր Վրաստանի—մկրտութեան պատմութեան մէջ էին մշակւում:*

*Որովհետև այս աւանդութիւնները, նայելով երկրին և ցեղին, կարող էին լինել այլ և այլ, և իսկապէս էին էլ, ապաքէն բնականաբար, բոլոր վրացիների կամ բոլոր հայերի մկրտութեան պատմութեան առաջին փորձերը լինելով մասնաւոր պատմական դէպքերի մասին տեղական զրոյցների գրական ամփոփումն, կարող էին լինել զանազանակերպ: Եթէ Հայաստանում Ս. Գրիգորի, իսկ Վրաստանում Ս. Նունէի անձնաւորութիւնները նսեմացրել են ուրիշ լուսաւորիչների փառքը, դրանով դեռ պէտք չէ շտապենք եզրակացնել, թէ նրանց քարոզչութիւնը համապատասխան իրական պատմական ընդարձակ նշանակութիւն ունէր: Նրանց հռչակի պատճառները նշանաւոր չափով կարող են գրական բնաւորութիւն ունենալ: Այդ հռչակը կարող է լինել, որպէս կարծում եմ, իսկապէս գրական որ և է զօրեղ հօսանքի ծնունդ: Եւ պէտք է կարծել, որ այդպիսի հօսանքը ըստ ինչ ինչ յարակից հանգամանաց, և այն ոչ առանց պատմական հիմքի, սիրաշահել է տեղական յայտնի աւանդութիւնը և նրան տուել է այնպիսի հանրային հեղինակաւոր կերպարանք, որ ապագայ բոլոր սերունդները պարտաւորուել են ընդունել: Աւանդութիւնը, որ գրական ճանապարհով ստացել էր ընդարձակ հռչակ և համահայկական կամ համավրացական նշանակութիւն, այս ժամանակից սկսած, փաստօրէն տիրապետող ոյժ է դարձել հայ կամ վրաց եկեղեցու սկզբնաւորութիւնը բացատրելու համար, որպէս պատրաստի նիւթ, լծոր-*

գուելով իւրաքանչիւր տեղական—եկեղեցական գրական ուղղութեանը, նրա շահերին համեմատ։

Վրաստանումն էլ Հայաստանումն էլ հնագոյն յիշատակարաններն անգամ հասել են մեզ անցնելով ազգային եւացման բովից։ Ազգային հոսանքը իւր ժամանակին, իւր ոգու ուղղութեան համեմատ կարողացել է այնքան փոփոխել բոլոր նախընթաց սերունդների գրական ժառանգութիւնները, որ հին հայկական վրացական գրչութեան ոչ մի շրջան, այժմ շատ գիտնականների, չի երևում ազգային ուղղութիւնից զերծ։ Ազգային այսպիսի պատմական հայեցակէտ սիստեմատիքաբար առաջ է տարուել յատկապէս հայերի մէջ, որոնք ինչպէս եկեղեցին, նոյնպէս և հին գրականութիւնը, բացառապէս հոգևորը, հէնց սկզբից համարում են ազգային։ Ինչ ասել կուզի, որ այս հայեացքը a-priori չի դիմանում քիչ շատ խստապահանջ քննութեան։ Հին հայ դպրութիւնը, մինչև մեզ ծանօթ ազգային հոսանքի մշակումն, անցել է զարգացման մի քանի ժամանակաշրջան։

Ըստ այսմ և Գրիգոր Լուսաւորչի քարոզչական գործունէութեան պատմութիւնը, դատելով ամեն կողմից, առաջուց անցել է զարգացման մի քանի շրջան մինչև այն ձևն ընդունելը, որ հայերէնում յայտնի է Ագաթանգեղոս անունով։ Այդ ձևը կարելի է անուանել ազգային խմբագրութիւն. ուրեմն, հին հայ գրականութեան հին շրջանի աւելի յետնագոյն ուղղութեան արտադրութիւն։ Դատելով այն քաղուածներից, որ մէջ է բերում Մովսէս Խորենացին, որի ճշմարիտ լինելը գոնէ այս դէպքում անպայման հաստատւում է, երևում է, որ մեր ձեռքում եղած այս յետնագոյն խմբագրութիւնն էլ անաղարտ և սկզբնական ձևով չէ։ Նրա ոճն էլ զարմանալի պարզութեամբ ցոյց է տալիս, որ արդի խմբագրութիւնը յետնագոյն ժամանակի գործ է։ Այն լի է յունաբանութեամբ, յունական կաղապարով (շաբլոն) հայկական մի յօրինուածք է. Նրա մէջ չկայ և այն հնութեան հետքը, որը նկատւում է նոր գտնուած Մնացորդաց հին բնագրի մէջ, որը սակայն այնքան էլ հին չէ, որովհետև այն էլ է ենթարկուել յունական ազդեցութեան։ Ս. Գրքի հին հայկական թարգմանութեան վրան բառը Ագաթանգեղոսում փոխուած է յետնագոյն խորան (185, $_{8}$, $_{9}$, 196, $_{21}$, $_{22}$)․ դիւք յունաբանութիւնը որ Θήκη-ի թարգմանութիւնն է (445, $_{19}$, 446, $_{5}$)․ դագաղ գերեզմանն նշանակութեամբ, գտնում ենք Երուսաղէմի, մօտաւորապէս Ը. դարի, մոզայիք մի տապանագրի մէջ։ Ցղարկեմ (468, $_{2}$, $_{5}$) այնքան նոր է, որ այն գուցէ և յետնագոյն սրբագրութիւն լինի, իսկ ձգել

արձակել, նետել նշանակութեամբ (89, 22 ძგხլ Ნեօս) յիշատա-կարանի ժամանակի համար բնորոշ աղճատաբանութիւն է։ Բայց Ագաթանգեղոսի պատմութեան ոճի մէջ դեռ աւելի բնորոշ է գոյութիւնը այնպիսի հազուադէպ, և երբեմն մինչև անգամ հայ լեզուին բոլորովին անյայտ բառերի, որոնք անկասկած վրա-ցերէն են և վրաց լեզուին ու բարբառներին սովորական։ Դ ո-ճ ա ն ք (425, 16) հայկական ան—ք կրկնակ յոգնակացուցիչ մաս-նիկներով, գ ո ճ ի բառից է, որ վրացերէն նշանակում է խոչընդո-րակ, խոզի ձագ, իսկ լազերէն գ ո ջ ի նշանակում է ոչ միայն խոչընդորակ, այլև խոզ, վարազ, մինչև անգամ վայրի գազան [1]։ Շ ղ ւ ա բ ա ր ո յ (102, 10) բարդ բառը, որ գտնւում է ա ն մ ի տ բառի մօտ, կազմուել է շ ղ ո ւ վրացերէն (շլէ [2],) յիմար, խելա-զուրկ նշանակող բառից։ Կ ա յ տ ռ ա լ (հմ. կայտառ) զեռալ, սո-ղալ նշանակութեամբ (140, 23), «կայտռային զանգամօվք իմովք (օձք)», զեռային, սողային զանգամօվք իմովք։ Կ ա յ տ ի ռ շար-ժումն, կայթ, պար (466, 12) նշանակութեամբ, որ յայտնի է նոյնպէս Փիլոնին էլ, անկասկած, ցեղակից է վրացերէն kot–va-շարժուել, զեռալ, kotr-iali-թաւալել, գլտորուել նշանակող բառի հետ, և ես, այնուամենայնիւ, մեր պատմական գրական հարցում նշանակութիւն չէի տալ նկատուած լեզուագիտական փաստին, եթէ այս բառերը չէին հանդէս եկել յատկապէս հելլենասիրա-կան և հելլենասիրականի համեմատ արտադրութիւնների մէջ, և ամենից առաջ՝ Ագաթանգեղոսի մէջ։ Ագաթանգեղոսի խմբագրու-թեան ծագման ժամանակի և տեղի համար հետաքրքիր է գ ո ն ճ ա-ց ե ա լ բարեփոխուած գ ո ն ջ ա ց ե ա լ (450, 1) բառը, որի (gond–i) արմատը հին վրացերէնում հանդիպում է ոչ միայն տ կ ա ր ա-ց ա ծ, թ ո ւ լ ա ց ա ծ՝ նշանակութեամբ (Сулх. Орб.) այլ քու-րիացիները, աջարացիները և իմերխեցիները ունեն սովորաբար այդ միակ բառը, հ ի ւ ա ն դ, թ ո յ լ նշանակութեամբ։ Սակայն աւելի ափշեցուցիչ, և իսկ իրական լուսաբանութեամբ է երևան գալիս Ս. Գրիգորի «լ ո ւ ս ա ւ ո ր ի չ» մակդիրը երբ համեմատու-թեան ենք առնում վրացական նիւթն էլ։ Հին հայերէնում լուսաւորիչ բառը գործ էր ածւում, որպէս արեգակի մակդիր (Յոբ. ԼԱ. 26), նիւթական փայլ ցոյց տալու համար։ Յետոյ,

1, Հետեւաբար «կնճիթ գոճանացն (կոճանացն) յ ե ղ ե ղ ա ն ը ն ա-կե լ ո ց ն» նշանակում է եղեգնուտների մէջ ապրող վարազի կնճիթ։ Մեծի մէջ կոճանք բառը համապատասխանում է «կ ո պ տ ա ց ա ծ, կ ո շ տ ա ց ա ծ տ ե ղ»։ Այս տեղը Cappelletti ենթադրաբար թարգմանում է «b r u t o» իսկ (եր. 120.). Langois-ն «des b r u t e s» (եր. 154. 2. 14).

2) Չуб. վրացերէն շլէ նոյնացնում է հայ շիլ բառին. սակայն դրանք տարբեր բառեր են։

*յունասիրական յիշատակարաններում լուսաւորիչ հասկանում էին մտաւոր լուսաւորիչ նշանակութեամբ. դրա համար վերագրւում էր այն Սահակ Պարթևին էլ, որի ժամանակ, ըստ աւանդութեան եղաւ Հայ տառերի գիւտն ու Ս. Գրքի թարգմանութիւնը* (*Ղազար Փարպ. Թուղթ. եր.* 438, *հրատ.* 1907. *Դուկ. Մատ*): *Հայերէնում, Ս. Գրիգորին յատկացնելով լուսաւորիչ բառը, պէտք է հասկանալ միայն Հայաստանը հոգևոր լուսով լուսաւորելը, հայերի աստուածգիտութեան լոյսը ընդունելով* (de Lagarde, *եր.* 35, 42), *բայց հենց այս մտքով էլ այս բառը սովորական է յատկապէս Ս. Գրիգորի համար: Դեռ ոչ շատ հին ժամանակ, Ս. Գրիգորի, լուսաւորիչ մակդիրը թէ որքան անորոշ էր, թէ լուսաւորիչ բառին որքան յատուկ էր ամենից առաջ նիւթական լոյսը, կարելի է դատել հետևեալ փաստով. հայ անուանի աստուածաբան Վարդան վարդապետը, Տէր Համազասպի խնդրով, Ս. Գրիգոր Լուսաւորչի մասին գրած իւր ներբողի ճառում մէջ է բերում այս հարցի առիթով Երուսաղէմի զրոյցը, թէ Գրիգորը սուրբ քաղաքում կանթեղ կախելով խնդրեց Աստուծուց, ի փառս իւր յարութեան, ամեն տարի լոյս ծագել. դրա համար էլ, որպէս թէ, Ս. Գրիգորը կոչուեց Լուսաւորիչ* (*Սոփերք հայկ. Ե. եր.* 78—79)*: Այս նոյնը կրկնւում է, ոչ պակաս անուանի, Վանական վարդապետին վերագրուած նամակում* (*Գիրք Թղթոց, եր.* 534)*: Մինչդեռ այդ մակդիրը, անկասկած առնչութիւն ունի Ս. Գրիգորի քարոզչական և հեթանոսներին մկրտելու գործունէութեան հետ: Առաջին հելլենասէրներն էլ երևի, հայերէնում այս նշանակութեամբ էին հասկանում: Հին յունասիրական ուղղութեան շատ հետքեր ունեցող մի հայ յիշատակարանում Ներսէս կաթուղիկոսը մահուան ժամանակ իւր մօտ խմբուած իշխաններին ասում է. «Արդ ես ծնայ ձեզ լուսաւոր աւազանաւն* (*Յաղագս զարմից, ՍՀ.* VI. *եր.* 93)*. և հանգուցեալին դիմում է ժողովուրդը որպէս երկրի լուսաւորչի. «ով լուսաւորիչդ աշխարհի»* (*յիշ. յօդ. եր.* 114)*: Եւ յիրաւի, վրացերէնում, որ յոյն եկեղեցու ձևաբանութեան ազդեցութեան շատ է ենթարկուած, բացի «լուսաւորել» բառից մկրտութիւն հասկանալու համար ուրիշ բառ չկայ, մինչդեռ հայերը այդ նշանակութեամբ պահել են իրանց հին եկեղեցուց՝ մկրտել բառը, որ սեմիտական ծագումն ունի կրտ արմատից և թլփատել է նշանակում* 1)*:*

---

1). Սիրիացիների մօտ պատահում է «լուսաւորիչ» ձևը: Այս և նման մի քանի դէպքում նրանք աւելի են հեռացել իրանց սիրիական

Սակայն ձեւերը երկրորդական բաներ են: Ըստ էութեան, յանձին Ագաթանգեղոսի, ինչպէս ցանկացել է կոչել նրան հայ անյայտ գրողը, մենք ունենք վիպական պատմութեան աւելի յետնագոյն զարգացման մի հեղինակ 2): Խօսքը ի հարկէ, այն մասին չէ, թէ Գրիգոր Լուսաւորիչը վիպական (լեգենդական) է: Ընդհակառակն, Գրիգոր Լուսաւորիչը, անկասկած, իսկական կենդանի պատմական անձն էր, վիպական է միայն այն ձեւը, որով նա մեզ պատկերանում է, Ս. Գրիգորի ձեռքով՝ Հայոց դարձի, մեզ հասած, պատմութեան մէջ:

Այս պատմութիւնների վիպական լինելու ամենից առաջին պարզ ապացոյցն այն է, որ նրանք ընդհանուր եկեղեցական

---

եկեղեցու աւանդութիւններից քան Հայերը. Ա ր ե ւ ե լ ք ի լ ու ս ա ւ ո ր ի չ (Sachau, Syr. Handschr. 1899, I. եր. 286, 2) է ի միջի այլոց Մար-Ավգինս (հայերէն Մարուգէ) այսինքն Ս. Եւգինէոսը, որ հիմնադիրն է սիրիական կրօնաւորութեան: Սիրիացիք Աստուածայայտնութիւնն էլ լուսոյ տօն են անուանում. աւելի ճիշտ՝ luminum: Ի դէպ. Հայերի մօտ էլ Ծննդեան նոյն եւ Աստուածայայտնութեան ու Զատկի նախատօնակներն էլ նման անուն ունեն. ղաբծեալ նիւթական լոյս հասկանալով. ճրագալոյց—ճրագների վառումն:

2) Դեռ եւս Լանգլուան կարծիք է յայտնել Collect. des hist. arm. 1867. I. եր. 103), թէ Տրդատի պատմութիւնը, որ վերագրւում է սոյն իշխանի ատենադպրին, է վկայաբանական մի վաստակ, որ լոյս է ընծայել Եզնիկ քահանան միայն Է. դարում Ս. Հռիփսիմեանց նշխարների գիւտի առիթով». Իր այս հայեացքի հաստատութիւնը նա տեսնում է Հ. Սուքիաս Պարոնեանի յայտնած տեղեկութիւնների մէջ. Մխիթարեան միաբանութեան (երբեմն) անդամ Հ. Սուքիասը Կայսերական-այժմ Փարիզի Ազգային Մատենադարանի գրչերը ցուցակագրելիս՝ № 51. ձեռագրում գտաւ, որ մեզ հասած Ագաթանգեղոսի հայ բնագիրը Է. դարում թարգմանել է յունական օրինակից Եզնիկ քահանան, որ Ե. դարում ապրող Եզնիկ Կողբացուց բոլորովին տարբեր անձն է. Եզնիկը, հաւանօրէն, իւր թարգմանութիւնը կատարել է Կոմիտաս կաթուղիկոսի ժամանակ Ս. Հռիփսիմէի նշխարների առաջին գիւտի առիթով (Սեբէոս գլ. ԻԵ.). Կոմիտաս կաթուղիկոսը ի պատիւ այս ս. կուսի եւ նորա ընկերների յօրինել է շարական (իտալական թարգ. Luigi Carrer առ Cappelletti, Agatangelo (1845, եր. 209—222)»: Փարիզի ձեռագրի ընդօրինակութիւնը, որ սիրելաբար հայթայթել է մեզ Ն. Գ. Ադոնցը, թէեւ յիրաւի, մեր հարցի համար էլ հետաքրքիր է, բայց այնտեղ ասուած է, որ Եզնիկ քահանան թարգմանել է հայ կաթուղիկոսների եւ թագաւորների ցուցակը, այլ ոչ Ս. Գրիգորի պատմութիւնը.

գրականութեան մէջ յետին ժամանակներում են երեւան գալիս։ Բիւզանդացիների սրտին մօտ, նրանց կայսերութեան սահմանակից, քաղաքականապէս այնպիսի կարեւոր երկրի դարձը, ինչպէս Հայաստանն է, այն էլ յոյն եկեղեցու քարոզչի ձեռքով, այնպիսի խոշոր երեւոյթ էր, որ գործում շահագրգռուած յոյների լռութիւնը այս եղելութեան մասին կարող է բացատրուել բացառապէս մի հանգամանքով, այն է, որ նրանց յայտնի չէր ոչ այդ եղելութիւնը և ոչ էլ այդ մասին յունական որեւէ աւանդութիւն կար։ Գործին օգնել չի կարող Գրիգորի մասին այն անվաւեր ճառն էլ, որ վերագրւում է Յովհան Ոսկեբերանին։ Աւելի հետաքրքիրն այն է, որ այդ ճառը հայերէն թարգմանուել է միայն 1141 թուին Աբրահամ-Բերականի (գրամմատիկոս) ձեռքով։ Գրիգոր Լուսաւորիչը յոյն գրականութեան մէջ հռչակ է ստանում Փոտ պատրիարքից սկսած (858-867, 878-886 թ.), որ շատ էր աշխատում հայ եկեղեցին յունականի հետ միացնել։ Ս. Գրիգորի ձեռքով Հայաստանի դարձի պատմութեան արդի յունական բնագիրը (Paul de Lagarde. 1887, եր. 4—87) թարգմանուած է Ագաթանգեղոսի պատմութիւնից, և այս թարգմանութիւնը ամենայն հաւանականութեամբ եղել է Փոտի օրով և ոչ բնաւ առաջ։ Ինքն Փոտ ծանօթ էր միայն այն խմբագրութեան հետ, ուր Ս. Գրիգորը հանդիսանում էր «Նահատակ (խոստովանող), սքանչելագործ և հիւսիսային բոլոր ազգերի լուսաւորիչ (Թուղթ Փոտ պատրիարքի առ Զաքարիա կաթուղիկոս, Правосл. пал. сборн., հատ. XI, հրատ. I. եր. 180, թարգ.. 227)։ Գրիգոր Լուսաւորչի պատմութեան յայտնի լինելը յունաց գրականութեան մէջ Է. դարից առաջ չէ։ Սիրիացիները Գրիգոր Լուսաւորչի մասին Ը. դարից առաջ տեղեկութիւն չունէին։ Նրա մասին տեղեկութիւն սիրիական գրականութեան մէջ առաջին անգամ մուծողն է արաբների եպիսկոպոս Գէորգը, իբր, 714 թուին յայտնի նամակով առ Յեսու-Սիւնակեաց (Դաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ եպ. 1891, եր. I)։ Պատմելու եղանակից պարզ երեւում է (Lagardii. Anal. syr., եր. 125[42], 126[23–25]), որ Գէորգը սիրիական եկեղեցական շրջանում անյայտ մի առասկայի մասին է խօսում։ Գէորգը, հաւանօրէն նիւթը քաղում է յունական աղբիւրից, բայց ոչ Ագաթանգեղոսի պատմութիւնից։ Ասսեմանին, այս արաբ եպիսկոպոսին ուղղափառ, այսինքն քաղկեդոնիկ է համարում, բայց ապացուցանում են, որ նա Յակոբիկ էր։ Կարեւորն այն է, որ նա յունարէն լաւ գիտէր, և անկասկած այս հանգամանքին է պարտական, որ Ս. Գրիգորի մասին տեղեկութիւն ունի։ Գրիգորի մասին վկայական նիւթերը բաւական առատ են։ Կան վարքագրութեան կանա-

զան վերսիաներ, հետաքրքիր օրհներգներ։ Յատկապէս մինչև Ժ. դարը նրա յիշատակը ընդհանրապէս բարձր էր յարգւում հին վրաց եկեղեցում։ Ժ. դարի գրող վրաց Արսէն կաթուղիկոսը մեղադրում է հայերին, որ սիրիացիների համար հեռացել են Ս. Գրիգորի պատուէրից, ընկել են սիրիացոց հերետիկոսական աղանդի մէջ, դեռ Կիրիօն կաթուղիկոսի ժամանակից անհնազանդ են գտնւում այն հաւատին, որը Ս Գրիգորը տուել է մեզ Յունաստանից, թողել են նրա «սուրբ դաւանութիւնը»· (Θ. Жорданія, Хроники, I, եր. 319)։ Մի օրհներգի մէջ, որ պահուած է Ժ. դարի ձեռագրի մէջ հին վրացիները դիմում են Ս. Գրիգորին՝ իբրև «լցնողի հայ աշխարհը աստուածային ուսման անուշահոտութեամբ»,—այս բառերով.

«Հաւատով դէպի բոլորի Աստուածը հաստատեցիր Քրիստոսի եկեղեցին անդրդուելի ժայռի վերայ»։ Մի ուրիշ օրհներգի մէջ հին վրացիները Ս. Գրիգորին մաղթանք են ուղղում.

«Ո՛վ Գրիգոր, դու, որ Հայաստանի աստղն ես, յիշի՛ր մեզքո հօտին—Փրկչի առաջ. շնորհիր մեզ ողորմութիւն և ծառայի՛ր աշխարհում խաղաղութիւն»։

Այս ամենը ինձ մի միտք էր ներշնչում, թէ Գրիգորի վրացական պաշտամունքի մէջ մենք ունենք հետքը առաջին հայ—վրացական այն եկեղեցու, որ հաստատուած էր տիեզերական եկեղեցու անդամ աւելի հին—սիրիացիների ձեռքով։ Իմ մէջ տարակոյս է յարուցանում միայն այն՝ որ յիշեալ յիշատակարանների ոճը այնքան էլ հին չէ։ Սակայն սկսած այն ժամանակից, երբ սկսեց պարզուել վրաց եկեղեցու սերտ յարաբերութիւնը հայկականի հետ յետին ժամանակում ևս, յատկապէս հայ քաղկեդոնական եկեղեցու հետ (Н. Марръ, Аркаунъ, Монгольское названіе христіанъ, въ связи съ вопросомъ объ ар—мянахъ-—халкедонитахъ. Визант. врем. 1905, XII. հրատ. 1—2) վրացիների՝ առ Ս. Գրիգոր պաշտամունքը ստանում է այնպիսի բացատրութիւն, որ շատ լաւ պատշաճում է յիշուած յիշատակարանների լեզուի յատկութիւններին։ Աւելի յետնագոյն, նմանօրինակ յիշատակարանների փոխառուած մասերը, քանի որ յունարէնից չեն թարգմանուած, կարող են առաջ եկած լինել հայ աղբիւրից, բայց հայ-քաղկեդոնական աղբիւրից, այսինքն. այդ յիշատակարանները, ուրեմն մօտաւորապէս Ը.—Թ. դարերին են պատկանում և յամենայն դէպս, ոչ առաջ քան Է. դարը։ Դժուար է ապացուցանել, թէ մինչև Է. դարը Ս. Գրիգոր Լուսաւորիչը հայերի մէջ էլ այնքան լայն և համատարած հռչակ

ունեցած լինէր*)։ Հին հայ պատմական կամ այլ գրական վաստակների տեղեկութիւնները, որ հակասում լինէին Ս. Գրիգոր լուսաւորչի մասին իմ այս տեսութեանը կարեւոր են ինձ աւելի նոյն յիշատակարանների ժամանակը ճշդելու, քան առ Գրիգոր համահայկական պաշտամունքի հնութիւնը ապացուցանելու համար։ Ս. Գրիգորի պաշտամունքի նորոգուելու և նկատելի կերպով աճելու յիշատակարանային յայտնի նշանները տեսնում ենք Է. դարում, քաղկեդոնական Եզր և Ներսէս Գ. կաթուղիկոսների ժամանակ. ի միջի այլոց՝ Ներսէս Գ.-ին է պատկանում, ի պատիւ Ս. Գրիգորի, հոյակապ տաճարի կառուցման փառքը, տաճարի, որ այժմ յայտնի է Խաչիկ վարդապետի պեղումներով[1])։ Այս ժամանակից սկսած Ս. Գրիգորի պաշտամունքի աճելով՝ Հայաստանում զուգընթացաբար բազմանում են նրա անունով եկեղեցիները։ Հայաստանում հակաքաղկեդոնականների յաղթանակելուց և հակաքաղկեդոնա-

* Հայ մատենագիրների ցուցումները (Փաւստոս, Ղազար Փարպեցի եւլն.) ընդ հակառակն, ապացուցանում են, որ Ս. Գրիգորը Հայաստանում համատարած հռչակ ունէր։ Ծանօթ. Հայ Թարգ.

1. Դեռ վիճելի է, թէ ինչ անուն էր կրում եկեղեցին «Ս. Գրիգորի» թէ «Զուարթնոց», բայց այս չի փոխում իրականութիւնը, որովհետեւ վերջին կոչումն էլ Ս. Գրիգորի պաշտամունքի հետ կապ ունի, Ս. Գրիգորի մասին այն աւանդութեամբ, որի մէջ դեր ունին Երկնային Զօրութիւնները։ Զօրեղ միտումն կայ ապացուցանելու, որ այս տաճարը չէր կարող երբեւան գալ Ս. Գրիգորի անունով։ Գուցէ այս կարծիքը հուսկ ուրեմն ճշդուի. բայց ես կարծում եմ, որ ապացոյցների յախուռն կիրառութիւնը կարող է խախտել հաւատը դէպ ի այդ կարծիքը. կրկնում եմ, գուցէ ուղիղ կարծիքը։ Ի միջի այլոց՝ Մովսէս Կաղանկատուացին ասում է, որ Ներսէսը այս եկեղեցին շինեց Կոստանտ կայսրի փողով (Գ. 15)։ Կարապետ վարդապետը (Արարատ 1903. I. եր. 43—50), առակ է համարում հայ հին հեղինակի այս տեղեկութիւնը, որ հայ հին մատենագիրը առաջ է բերում ժամանակին համեմատ զրուցային մանրամասնութեամբ։ Հ. Կարապետը կարծես տեղեկութիւն ունի որ «Կոստանտին կայսրը աւելորդ փող չունէր Հայաստանում եկեղեցի շինելու»։ Միանգամայն եւ, հ. Կարապետը, երեւում է, համոզուած է, որ «յունական կայսրների երեսից (հայոց) անբաղդ երկիրը տեսել է միայն աւեր եւ ասպատակող արշաւանքներ», եւ դրա համար էլ մինչեւ անգամ «անտեղի է մտածել թէ նրանք եկեղեցու պայծառութեան եւ հարստանալուն նպաստել են», թէեւ այդ եկեղեցին կառուցւում լինէր Ներսէսից, որի քաղկեդոնական հակումն չի հերքում նոյն իսկ Սեբէոսը. որը այս խնդրում, ինչի՞ համար, բացառապէս հեղինակութիւն է հ. Կարապետի աչքում.

կան ազգային եկեղեցի կազմակերպուելուց յետոյ ժողովրդի մէջ շարունակում է աճել Ս. Գրիգորի պաշտամունքը: Փոքրիկ Անի-ում, առայժմ յանուանէ յայտնի 10—12 եկեղեցիներից հինգը առնուազն նուիրուած են Հայաստանի լուսաւորչին: Սակայն հայերը միշտ էլ կասկածել են որ յունական Կեսարիայից նրանք ընդունած լինեն նուիրապետութիւնը, որ անխզելի կերպով շաղկապուած է նրանց պաշտամունքի առարկայի մասին զրոյցի հետ, մանաւանդ որ այն հակառում է դրական փաստական ապացոյցներին, որոնք հաստատում են, թէ Հայաստանում իս-կական, տեղական քրիստոնէական եկեղեցին յունական ոկզբ-նաւորութիւն չունի: Փորձ է եղել գայթակղութիւնը հեռացնել մի ուրիշ աւանդութեամբ, թէ կեսարական եկեղեցու հիմնա-դիրն է Հայաստանի լուսաւորիչ Թադէոս առաքեալը, ուրեմն և Ս. Գրիգորը ձեռնադրութիւն ընդունեց հայ եկեղեցում. (Սո-փերք Հայկ. Զ. եր. 31. Գիրք Թղթ. եր. 532): Այս, երևում է, Ս. Գրիգորի պաշտամունքի հայ ազգայնացման, վերջին քայլն է:

Այս պատմութիւնների միպային լինելը աւելի նկատելի է դառնում այն տարածայնութեամբ, որ առաջ է գալիս, երբ համեմատում ենք նրանց ապացոյցները հին հայկական եկե-ղեցու և հին հայկական գրականութեան լեզուի փաստերի կենդանի վկայութեան հետ: Այդ փաստերը ակներև վկայում են, որ հայ տեղական եկեղեցու հիմքը դրուած է սիրիացիներից կամ սիրիացիների ազդեցութեամբ: Մինչդեռ Գրիգոր լուսա-ւորչի պատմութեան բոլոր խմբագրութիւնների մէջ բացառիկ ուշադրութիւն է նուիրւում յոյներին, Հայաստանի քրիստո-նէական լուսաւորութեան բոլոր գործը, այդ պատմութեան մէջ, պատկերացւում է որպէս Կեսարիայի յոյն եկեղեցու քարոզ-չական գործունէութեան արդիւնք: Ըստ էութեան՝ հայ ազգային խմբագրութեան մէջ այսպէս է գործը ձևակերպուած: Աւելի մի-տումնաւոր բան քան այդ է, դժուար է երևակայել: Կարելի է հասկանալ խիստ յունասէր Ղազար Փարպեցու յարձակումները հայերի սիրիական քրիստոնէութեան վերայ, կարելի է հաշտուել և այն բանի հետ, որ նա ասորի Բրքիշոյ կաթուղիկոսի հետ Հա-յաստան եկած ամուսնաւոր սիրիացիների (կրօնաւոր) «լոյծ կրօն»ը բաձրայօնութեամբ ծաղրելով՝ հակառակ է գտնում «սուրբ և ամբիծ կրօն»-ին, որ դրել և հաստատել է մեր բոլոր հայ եկե-ղեցիներում Գրիգոր Ս. նահատակ»ը (Ղազար Փարպ. եր. 54). սակայն չի կարելի չզարմանալ նոյն իսկ ազգային խմբագրու-թեան հեղինակի անարդար վերաբերմունքի վերայ դէպի հայ մայրենի եկեղեցու իսկական հիմնադիրները: Երբ միանգամ այդ-պիսի վերաբերմունքը անկասկածելի փաստ է, նրանից էլ ան-

*խուսափելիօրէն հետեւում է, որ հայ գրականութեան մէջ ազգային հոսանքի երեւան դալուց առաջ տեղի է ունեցել յունական եկեղեցական զօրեղ ազդեցութիւն, որը, բնականաբար, կարող էր առաջ մղել կեսարիական քարոզչի գործունէութիւնը։ Յոյն եկեղեցական հոսանքը կարող էր տեղական քարոզչից, որ գործում էր բիւզանդական անմիջական ազդեցութեան սահմաններում մի որ եւ է տեղ, ստեղծել համահայկական լուսաւորչի տիպ, դիտմամբ չտեսնելու տալով սիրիական եկեղեցական ազդեցութիւնը։ Հետեւանքին նայելով, յունական ազդեցութիւնը ոչ միայն ստեղծել է խսկապէս հարկաւոր տիպը, այլ եւ կարողացել է յաջողցնել որ բոլոր հայերը ճանաչեն նրան. այնպէս որ, ազգային ուղղութեամբ գրողներին մնում էր Ս. Գրիգորի, որպէս համահայկական լուսաւորչի, փառքը, որ իրանց ժամանակին արդէն հաստատած էր, առաւել եւս հռչակել։*

*Ս. Գրիգորի պատմութեան զարգացման առաջին շրջանից, երբ նրա քարոզչական գործունէութիւնը դեռ տեղական էր, ժամանակը չի պահել որ եւ է ժամանակակից մշակուած զրոյց։ Չեմ վիճում, թէ դեռ կարող է այն էլ խնդիր լինել. եղե՞լ է արդեօք այդպիսի սկզբնական զրոյցի ձեւ, գրի առնուա՞ծ է, թէ միայն բերանէ բերան էր խօսում։ Առ այժմ կարելի է գուշակել, թէ սկզբում, այդ մի աւանդութիւն էր Կապադովկիայի յոյն եկեղեցու նահատակ քարոզչի գործունէութեան մասին Լազիքի եւ Իմերեթիայի սահմանակից, արեւմտեան Հայաստանում, հռովմէական կայսերութեան մերձաւոր ազդեցութեան շրջանում։ Բոլոր խմբագրութիւններն էլ պահպանել են թէ Գրիգոր լուսաւորիչը եւ անգամ նրա սերունդը կենդրոնացած էին Հայաստանի այդ մասում, իսկ մեր արաբական բնագիրը այդ կենդրոնացման մի մանրամասնութիւն կրկնում է երկրորդ անգամ (եր 139.—հայ թարգ. 73)։*

*Կապադովկիական Կեսարիայի եկեղեցու սան եւ այդ եկեղեցու կարգած մի նման տեղական քարոզչի համատարած ստեղծագործող դերի վերայ կարող էին ի հարկէ պնդել իրանք յոյները, իսկ հայերից նրանք՝ որոնք ընդհանրապէս յունական եկեղեցականութեան կուսակիցներն էին եւ խմբուած էին ամենից առաջ, բնականաբար, բիւզանդական կայսերութեան կազմի մէջ գտնուող հայ գաւառներում եւ ընտելացած էին յունական կուլտուրային անմիջապէս։ Այսպիսի յունա-հայկական միջավայրը կարող էր տեղական քարոզչական գործը ընդհանրացնելու առաջին փորձը տալ։ Հայ կաթուղիկոսների եւ թագաւորների ցուցակում, որ թարգմանել է, անկասկած Ի. դարի գրող Եղնիկ քահանան,*

*ասուած է, որ «Գրիգորի գործերի կարգը նորոգեց մի երանելի տարօնեցի մարդ, որի անունն էր Մասրոպ»[1]. ուրեմն հայ գրերի յայտնի գտնողը։ Չափազանց հետաքրքիր է, որ նոյն ինքն հայ աւանդութեամբ էլ Մեսրոպին է վերագրւում յունական քարոզիչ Գրիգորի մասին զրոյցի առաջին մշակութիւնը (նորոգութիւնը)։ Ըստ այսմ, ինչպէս հայ տառերի գիւտը, իսկապէս՝ սիրիական ծագումն ունեցող հին հայկական գրերի՝ յունական ձևերով կատարելագործելը, ինչպէս Ս. Գրքի առաջին թարգմանութիւնը, իսկապէս՝ նրա սիրիական հայ հին թարգմանութեան յունարէն բնագրի համեմատ սրբագրելը, այսպէս և Ս. Գրիգոր Լուսաւորչի գործերի առաջին ընդարձակ խմբագրութիւնը պատկանում է, անկասկած, յունասէր գրողներին, ըստ աւանդութեան, Մեսրոպին և նրա աշխատակիցների խմբին, գլուխ ունենալով Սահակին (Պարթև)։ Գուցէ այստեղ նոյն Մեսրոպ անունը և նրա մի քանի գործակիցների անունները իսկական տեղից տեղափոխուած են. բայց հիմք չկայ կասկածելու, թէ սահմանափակ շրջանի նահատակ քարոզիչ Ս. Գրիգորի մասին տեղական զրոյցի առաջին անգամ մշակութիւնը, և ամբողջ ժողովրդի, կամ լաւ ևս ամբողջ ժողովուրդների, այսինքն հայերի և վրացիների քրիստոնեայ դառնալու պատմութեան վերածելը պատկանում է հին հայ-յունասէրներին, որոնք ապրում էին քաղկեդոնականներից առաջ։ Եթէ այդ խմբագրութիւնը աւելի յետոյ, քաղկեդոնական ծագումն ունենար, ինձ թւում է, դժուար կըլինէր բացատրել հայ ազգային, անպայման հակաքաղկեդոնական եկեղեցու ծոցում՝ Ս. Գրիգորի գոյութիւնը, մանաւանդ նրա ընդարձակ հռչակը և նրա համազգային պաշտամունքը Հայաստանում։ Թէ Ս. Գրիգորի մասին զրոյցի հնագոյն մշակութիւնը պատկանում է, հաւանօրէն, Մեսրոպին, յամենայն դէպս, Եզնիկի մատնանիշ արած հելլենասէրների շրջանի գրողին, առ այս ցուցմունք կայ Ղազար Փարպեցու յայտնի նամակում էլ։ Մերկացնելով սիրիական կուսակցութեան պատկանող հայ հոգևորականութեան կատաղի յարձակումները իւր համախոհների վերայ, այս, ոչ պակաս կրքոտ հելլենասէրը հաւաստիացնում է (եր. 438), որ այդ բոլորը տեղի է ունեցել իւր ժամանակով և ինքն ականատես է եղել, և շարունակում է. «իսկ զյառաջագոյն գրելոցս սուրբ արանցն, զորս*

1. Ն. Գ. Ադոնցի պատճէնին համեմատ «կարգք գործոց Գրիգորի նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ (sic]· որում անուն **Մ**ասրովպ (sic) ճանաչէր»

ի պատմութեանն նահատակին Գրիգորի՝ դրոշմեալ յիշատակէ [Մեսրոպ?], զի՞նչ ևս ասացից,—զարդար և զարժանաւոր բարեպաշտ կաթուղիկոսէն՝ զՍրբոյն Ներսեսէ, և զկրօնաւոր առաքինույն և զմեծ լուսաւորչէն Հայոց՝ զտէր Սահակայ և զայլոց բազմաց, որոց ոչ բացեալ ի բարեբան զբերանս իւրեանց ի վերայ աշխարհիս այսորիկ՝ վախճանեցան»: Ագաթանգեղոսի պատմութեան մէջ այդպիսի բան չկայ, որին դիմումն անէր Ղազար Փարպեցին: Հեղինակի անուան աչքի ընկնող բացակայութիւնը թերևս յառաջ է եկել նրանից, որ այն չէր համապատասխանում աւանդական Ագաթանգեղոսին, և գուցէ, այնտեղ եղել է, ինչպէս գրում է Եզնիկը, «Գրիգորի կարգք»-ը[1]) վերանորոգողի «Մեսրոպ» անունը:

Ձեռքի տակ չունենք Ս. Գրիգորի ընդարձակ գործունէութեան մասին վկայող գրոյցի առաջին մշակուածը: Երևի դրանից էլ քաղուածներ են բերում երբ մատենագիրները համառօտակի յիշումներ են անում Ս. Գրիգորի գրքին կամ Ս. Գրիգորի պատմութեան», թէև այն կարող էր ուրիշ անուն էլ կրել: Պէտք է կարծել, որ արաբաց Գէորգ եպիսկոպոսը «Հայոց վարդապետ Ս. Գրիգորի պատմութիւնը» անելիս՝ այդ պատմութեան, աւելի ստոյգ՝ նրա յոյն թարգմանութեան վերայ է յենւում, որովհետև նրա տեղեկութիւնը, թէ Ս. Գրիգորը եղել է Նիկիայի ժողովում (de Lagarde, Anal. Syr. եր. 123, [24]—[66], 125, [3]), չկայ մեզ յայտնի ուրիշ խմբագրութիւններից ոչ մէկի մէջ էլ:

Հին յիշատակարանները, ի հարկէ, գիտական, հնախօսական հետաքրքրութիւն են ներկայացնում. սակայն այն ժամանակ Հայաստանում այդ հետաքրքրութիւնը դեռ չկար: Քրիստոնէական կեանքը, ամեն մի նոր կուլտուրային յատուկ միամտութեամբ Հայաստանում առաջ էր գնում առանց յետ նայելու, և առաջ բերելով նոր խնդիրներ՝ ինչ որ նրանց չէր համապատասխանում, կորստեան էր դատապարտում: Այդպիսի կորստեան դատապարտուած գրական գործը կարողանում է փրկուել միայն, եթէ իւր ժամանակին թարգմանուած է լինում այնպիսի ազգի գրականութեան մէջ, ուր առաջ չէ բերում կենսական սուր, և մասամբ կուսակցական հետաքրքրութիւն, և ուր կարողանում էին շահագրգռուել նրանով, որպէս մի յայտնի եկեղեցու պատմութեան հետ ծանօթացնող ընդհա-

1) Մի ուրիշ ցուցումն էլ կայ, որ այս Մեսրոպը գրել է Ս. Ներսէսի Վարքը (Զարբանալեան Հայ. հին դպրութեան պատմ. եր. 563. Սոփ. Հայկ. VI եր. 137).

*նուր քրիստոնէական յիշատակարանով։ Կրկնում էր* mutatis mutandis *պատմութիւնը փոխ առած բառերի, որոնք պահպանում են ուրիշ լեզուներում հին ձևը և այն ժամանակ, երբ իւր բնաշխարհում վաղուց արդէն ընդունել են նկատելի փոփոխուած կերպ, յաջողելով երբեմն անցնել զարգացման մի քանի աստիճաններ։*

*Գրիգոր լուսաւորչի պատմութեան մի այսպիսի, պատահաբար պահպանուած հին ձև ստանում ենք առաջին անգամ այժմ հրատարակուող բնագրով։ Ճշմարիտ է, նա նիւթի հնագոյն մշակուածը չէ, բայց այնու ամենայնիւ նա է այնպիսի ժամանակի խմբագրութիւն, որը հնացած և մոռացուած էր ծննդավայրում, իսկ նրա հետ ինքնատիպ խմբագրութիւնն էլ մոռացուած և կորած էր մայրենի գրականութեան մէջ։ Այն ահա այժմ մեր առաջին է արաբական թարգմանութեամբ։*

*Մեր յիշատակարանի սկզբում պակասում է Տրդատի և Գրիգորի մասին կենսագրական ներածութիւնը և նոյն Գրիգորի չարչարանքի մասերը։ Այս պատահական բացը (համապատասխան թերթերը ընկած են) լրանում է հարկաւոր կտորների համառօտ կրկնութեամբ Կեսարիայի Ղևոնդիոս եպիսկոպոսին ուղղած նամակում և Տրդատ թագաւորի՝ Կոստանտին կայսրի հետ խօսակցութեան մէջ։ Սակայն այնու ամենայնիւ բաց է մնում պատմական ներածութեան խնդիրը, յարուցուե՞լ են այնտեղ քաղաքական դէպքեր, ի՞նչ չափով են յարուցուած և ո՞րպիսի լուսաբանութեամբ։*

*Արաբական ընդօրինակութեան ժամանակը կարելի է որոշել միայն մօտաւորապէս, պալեօգրաֆական (հին գրչութիւնների գիտութիւն) հիմունքներով։* Mrs. Gibson*-ի ցուցակում ժամանակը ցոյց չէ տրուած, ինձ էլ չյաջողուեց ձեռագրիս թուականը գտնել. բայց գրութիւնից և ընդհանրապէս սովորական տեսքից դատելով՝ ձեռագիրը Ժ. դարից յետոյ չէ։ Քուֆիից դէպի սովորականը փոխուող գրութեան յատկութեամբ նա աւելի մօտենում է* («Kufi. inclining to Nashi») 885 *թուի արաբական բնագրի նմուշին, որ հրատարակել է* W. Wright*-ը* The Palaeographical Society. Facsimiles of Manuscripts and Inscriptions (Oriental Series XVI, London 1873—1883, Plate XX.—Arabic)։ *Հետաքրքիր է, որ այդ նմուշը առնուած է սրբերի վարքից և կրօնաւորների խրատից, որը նոյնպէս պատկանում է Սինայի սարի վանքին, որի համար գրել է Երուսաղէմին մօտ Սաբբինայի վանքի մի կրօնաւոր*[1]*։ Մեր ձեռագրի գրութիւնը մինչև*

---

1) *Տես նոյնպէս Սինայի* № 457 *մագաղաթեայ ձեռագրի նմուշը* (Gibson *եր.* 89). *դժբաղդաբար առանց թուականի.*

անգամ աւելի հին է երեւում։ Ցամենայն դէպս, անկասկած է, որ ներկայ ձեռագիրը արաբական թարգմանութեան ժամանակից շատ տարիներով յետոյ է, և բնագիրը մի քանի անգամ է արտագրուել, որով և կարելի է բացատրել ամեն տեսակ աղաւաղումների բազմութիւնն ու հրէշաւորութիւնը։

Արտագրողներին ենք պարտական հետեւեալ տեսակի կրճատումները.

1. Արաբական ներկայ բնագրում պատահաբար բաց է թողուած Յովհ. 14, 18 ցիտատը, որ կայ հայ բնագրում (եր. 79, 10)։ Այլ և «ուխտիւքս այսոքիւք» բառերով (ռուս. հրատ. 71, 26—27, նոյն Թարգ. եր. 7 15), անկասկած այս խօսքերն են ի նկատ առնուած։

2. Մամիկոնեանների տիտղոս «սպարապետ»-ը առանձին անձն է դարձած (123, 19, նոյն Թարգ. եր. 57, 18)։ Հազիւ թէ կարելի լինի թարգմանչին վերագրել այս անհեթեթութիւնը, քանի որ 115, 9—10 երեսում (նոյն Թարգ. եր. 49, 11—12), նա շատ լաւ մեկնում է այս բառը։

3. Ղեւոնդիոսը տալիս է միայն Յովհաննէս Մկրտչի նշխարը (129, 23, նոյն Թարգ. եր. 63, 26), որպէս թէ Աթանագինէի նշխարը չէ եղել հայ բնագրում (եր. 470) յիշուած, բայց յետոյ (131, 41—42, նոյն Թարգ. 66, 18—19) յիշում է և Աթանագինէի նշխարը. անկասկած է, որ արտագրողն է բաց թողել։ Թէև Սեբաստիայի նահատակ Աթանագինէի նշխարը Ս. Գրիգորը գուցէ ստացել է Սեբաստիայում և ոչ Կեսարիայում 1)։

Սոյն արաբական բնագիրը Թ. դարի առաջին կէսից հին չէ։ Այնտեղ յիշուած են ռուսներ (եր. 133, 24—25, սոյն Թարգ. եր. 67, 27)։ Իսկ ռուսներ կամ ռօսներ հարաւում առաջին անգամ յիշւում են Թ. դարից սկսած։ Նրանց յիշում է Պրուդենցիուսը 839 թուին և համարեա նոյն ժամանակին էլ՝ Մուսլիմ բ. Աբու Մուսլիմը (Marquart, Osteur. und ostas. Streifzüge, եր. 354), եթէ միայն Մարքվարտը ուղիղ է իւր ենթադրութիւնների մէջ, թէ Իբն-Խօրդադբէն ռուսների մասին իւր տեղեկութիւնը առել է Մուսլիմից։ Հազիւ թէ կարիք լինի կասկածել, որ Գրիգորի պատմութեան օրինակի մէջ ռուսների երեւալը աւելադրութիւն է, բնագրինը չէ։ Այդ վերսիան, բացի հայերից, երեք ժողովուրդ է ճանաչում, որ

---

1) Նայել նաեւ Ս. Հռիփսիմէի՝ Տրդատի հետ մաքառելու ժամանակի վերաբերութեամբ անհետեւողականութիւնը։ Երբեմն «յերրորդ ժամէ ցտասներորդն» (83, 16—17 նոյն Թարգ. եր. 18, 22—23)՝ երբեմն «ի տասներորդ ժամէ աւուրն ցերրորդն առաջնոյ գիշերոյ» (85, 22—28 նոյն Թարգ. եր. 21, 3—4)։

Ս. Գրիգորից մկրտութիւն են առացել, և դրանք են վրացիք, աբխազներ և ալաններ (եր. 135, [9], [13], 137, [9—18], սոյն Թարգ. եր. 68, [29—30]. եր, 69, [2—3])։ Այս երրեակ դաշնակցութիւնը կրկնւում է դեռ մի քանի անգամ, բայց աբխազների տեղ երբեմն երևում են լազեր (եր. 117, [36—37]. սոյն Թարգ. եր. 52, [17]), երբեմն ռուսներ (եր. 133, [24—25]. սոյն Թարգ. եր. 67, [27]), երբեմն համարեա անյայտ «Դ-ր-զ-կ-ի-թ» (137, [9]. սոյն Թարգ. 70, [27]) ժողովուրդ։ Սկզբում ես կարծում էի թէ այդ անունը նոյն Դերջան կամ մինչև անգամ Բագիկ-ն է (Отчетъ о работахъ на Синаѣ և այլն 23). սակայն առաջին ձևը հայ գաւառի անունն է, որ չի պատշաճում բնագրի ցոյց տուածին, ուր խօսքը հայերից տարբեր ժողովրդի մասին է, իսկ երկրորդ ձևը՝ ժողովրդի անուն, որ նկարագրւող պատմական դէպքերի բեմից շատ հեռի է. այլ և, ի դէպ, դատելով ըստ բնագրին՝ չընդունելով անունների տարբերութեան, ցոյց տուած երրեակ դաշնակցութիւնը պէտք է բաղկացած լինի, յամենայն դէպս, միևնոյն ժողովուրդներից։ Եւ իսկապէս, աբխազների տեղ լազերի երևան գալը ըստ էութեան գործը չի փոխում. աբխազ անուամբ այստեղ ենթադրւում են, հաւանօրէն, լազերը, որպիսի կոչում նկատելի է Զաքարիա Հռետորի մօտ էլ, ինչպէս նկատել է Գելցերը (Die sog. Kirchengeschichte de Zacharias Rhetor... von K. Ahrens and G. Krüger, եր. 382) և նրանից յետոյ՝ Մարքվարտը (Osteur. und Ostas. Streifzüge, եր. 174)։ «Դ-ր-զ-կ-ի-թ»-ի մէջ «դ» սկզբնատառը արաբականում նախընթաց բառի վերջին տառի սխալ կրկնութիւնն է. մնացած «ր-զ-կ-ի-թ»-ի ընթերցմամբ, կարծում եմ, մենք ունենք յունարէն լազիթի ձևը, արաբական լ-ն ր-ի սխալ փոփոխմամբ և, երկիր, կողմն նշանակող վրացերէն էթ վերջաւորութեան յաւելմամբ։ Բնագրում որից թարգմանուած է արաբերէնը, աբխազների անուան մէջ այսպիսի տատանումն հազիւ թէ լինէր. «աբխազներ» լազերի կամ լազիքի արաբական յետնագոյն աղաւաղումն է, նոյնպէս աբխազների փոխանակ ռուսներ, պէտք է համարել արաբ թարգմանչի կամ աւելի ճիշդ՝ յետնագոյն արտագրողներից մէկի սարքած, որ այդ անունները նոյնացնելիս՝ ղեկավարուել է իւր յատուկ դիտումներով։

Ոճի սարսափելի աղաւաղումն արդէն ոչ թէ արտագրութեանն, այլ թարգմանութեանն է։ Սակայն մեր յիշատակարանի աղաւաղուած լեզուն չի կարող նրա յետնագոյն ծագման ապացոյցը համարուել։ Արաբական գրական լեզուի յատկութիւնը, որպէս յայտնութեան գրքի—Կորանի—սրբազան լեզուի, պահպանւում էր աւանդաբար միայն մահմեդական շրջաննե-

րում։ Քրիստոնեայ գրողները չէին ունենայ ի հարկէ դէպի Կօրանը այն բարեպաշտութիւնը, ինչ որ անկասկած պէտք է ունենային և ունէին մուսուլման գրողները։ Հետևաբար արաբ կենդանի, խօսակցական լեզուի հեղեղը յետ մղելու արգելք չըկար։ Քրիստոնեայ գրողները առանց որ և է ասանդական զգուշաւորութեան կարող էին գրել արաբերէն, և նրանց գրուածքի մէջ հոծ աղաւաղումները չեն կարող ապացոյց համարուել թէ այդ գրուածքները յետնագոյն ժամանակի գործ են։ Նրանք միշտ էլ աւելի ժողովրդական լեզուով են գրել քան մահմեդականները։ Նոյնպիսի երևոյթ, նոյնպիսի պատճառով արաբ գրականութեան մէջ նկատելի է արաբերէն գրող հրէաների վատտակներում․ (I. Friedländer, Der Sprachgebrauch des Maimonides, 1902, I. եր․ XIII—XIV)․

Կարծես մի քանի թերի թողածներն ու դիտաւորեալ կրճատումները բուն արաբական վերսիայինն են, օրինակ—

1․ Արաբական վերսիայում (եր․ 81, [27]․ սոյն թարգ․ եր․ 17, [4]) Հռիփսիմէ անուան նշանակութիւնը, որ ծագել է ռիպտօ (ρίπτω) յոյն բառից (հայ եր․ 108, [25]) չէ բացատրուած․ մինչդեռ այդպիսի յունական ստուգաբանութիւնը յունարէնից թարգմանուած արաբերէնում, ոչ միայն հայերէն ազգային խմբագրութիւնից աւելի տեղին կը լինէր, այլ նաև շատ հասկանալի։ Սակայն ստուգաբանական բառախաղի այս զանցառութիւնը նրանով է բացատրւում, որ արաբ բնագիրը ընթերցողներին, որոնք յունարէն չգիտէին, հասկանալի չէր լինի։

2․ Զրոյցը, թէ ինչպէս մի այրի կին որքունկքից կերակրում էր Ս․ Գրիգորին, արաբական վերսիայում համառօտակի յիշուած է նրան վիրապից դուրս հանելու առիթով, (եր․ 93, [29]․ սոյն թարգ․ եր․ 28, [21])․ բայց մի բառով անգամ չէ յիշուած այն տեղ (եր․ 71, [36—37] սոյն թարգ․ եր․ 7, [26—27]), ուր հայ բնագիրը տալիս է այդ դէպքի մանրամասն նկարագրութիւնը (եր․ 82, [6])։ Սակայն հետաքրքիր է նկատել, որ արաբաց Գէորգ եպիսկոպոսը այս զրոյցը իւր տեղում զանցառութեան տալով հանդերձ, այնուամենայնիւ յապաւումով յիշում է (de Lagarde, յիշ․ յօդ․ եր․ 124,[8]—124,[10]․։ Դաշեան, յիշ․ յօդ․ եր, 15)։

Այնուամենայնիւ կարծում եմ, որ արաբական վերսիան զերծ չէ մի քանի կրճատումներից։ Մէկը—թարգմանի՞չն է թէ արտագրողը—գործը հեշտացնելու համար թոյլ է տուել իրան, մի քանի ոչ-էական կտորների կրճատումներ քարոզութիւնների մասումն էլ։ Քարոզութեան ընդարձակ մասը, որ կայ հայ ազգային խմբագրութեան մէջ, չէ եղել յոյն բնագրումն էլ, որից թարգմանել է արաբը, բայց մի քանի հատուածներ այս

քարոզութիւնից պահպանուել են արաբական վերախոյում․ օրինակ, Ս․ Գրիգորի քարոզութեան խօսքերը (եր․ 107, [20] սոյն թարգ․ եր․ 41,[32]) յիշեցնում են քարոզութեան միջի հայ ընդարձակ յաւելուածը (377—379), և շատ հաւանական է, որ առանձին տեղերի նոյնպիսի ուրիշ կրկնութիւններ էլ են եղել, եթէ տեղ տեղ դիտմամբ չեն կտրուել, միմիայն համառօտութեան համար։ Այդպիսի կրճատումն ունենք, հաւանօրէն, 99—[13] երեսում (սոյն թարգ․ եր․ 33, [30])։ Յայտնելով, որ Ս․ Գրիգորը այնուհետև սկսեց քարոզել Ս․ Գիրքը, վկայաբանութիւն գրողը սկսում է պատմել Հին Կտակարանի պատմութիւնը, բայց պատմութիւնը հէնց սկզբում ընդհատւում է։ Այն տեղ, ուր Ս․ Գրիգորը պէտք է սկսէր պատուիրանազանցութեան դէպքը պատմել, ներկայ արաբական վերախիան դնում է Ս․ Գրիգորի բերանը այս նախադասութիւնը․ «Թողցուք այժմ յիշել զչար ծանօթութիւն (պատուիրանազանցութիւն)», և շարունակւում է Ս․ Գրիգորի գործերի պատմութիւնը։

Չնայելով մեզ մատչելի արաբական օրինակի մատնանշած պատահական կամ յատուկ կրճատումներին, հենց այն ձևով ինչ որ մենք տեսնում ենք, այն հետաքրքիր է ամենից առաջ այն ժամանակամիջոցի և միջավայրի վերաբերութեամբ, որին կարելի կը լինի վերագրել․ դրա համար էլ կարևոր է մեզ պարզել արաբական վերսիայի ծագումն։

Ս․ Գրիգորի չարչարանքի վերև յիշուած արաբական բնագիրը թարգմանուած է անմիջապէս յունարէնից։ Այդ անկասկած է։

Կարող է միայն կասկած լինել—արա՞բ, թէ արաբացած սիրիացի է թարգմանել, որ մեր համար միևնոյնն է։ Միակ ձեռագիրը, որի մէջ գտնւում է մեր բնագիրը, ունի երկու թուականութիւն—կոպտական՝ երեսների վերայ և վրացական՝ տետրակների։ Արաբների քրիստոնէական ձեռագրերի մէջ կոպտական երեսահամարը սովորական երևոյթ է։ Երեսահամարների նոյնպիսի թուանշաններն էլ կոչւում են կոպտա-արաբական։ Բայց ուրիշ էլ ոչինչ չըկայ, որ կոպտական ազդեցութիւն ցոյց տար։ Յատուկ անունները յունական այս կամ այն վերջաւորութեամբ մէջ բերելը, նայելով թէ բառը յունարէն բնագրում ինչ հոլովով էր, չպէտք է շփոթել այն բանի հետ, թէ յունական մի քանի բառեր կոպտերէնում իւրացուած են յունական զարտուղի հոլովով (Stern, Koptische Grammatik, 1880 № 160, O. von Lemm, Eine dem Dionysios Areopagita zugeschriebene Schrift in koptischer Sprache, Sep,—Abdr, aus dem «Bull. de l'Acad. Imp. des Sciences de St. Pét.» 1900 մարտ, եր․ 287), և յամե-



նոյն դէպս, միայն այս մի հանգամանքի վերայ չի կարելի ոչինչ վճռական բան ասել։ Վրացերէն թուարկութիւնն էլ վկայում է թէ վրացիները, որ ինչպէս յայտնի է, բաւական ազդեցութիւն ունէին Սինայում, մեր այս ձեռագրի երեւալու ժամանակ, մասնակցութիւն են ունեցել քրիստոնէական արաբական գրական գործում։ Արաբական լեզուի աղաւաղ անկանոնութիւններն ու գրական ձեւերից աչքի ընկնող շեղումները հիմնաւորապէս ապացուցանում են որ թարգմանիչը արաբ չէր։ Սակայն արաբ դասական լեզուից այս շեղումները դեռ անհրաժեշտ ապացոյց չեն, թէ հեղինակը այլացեղ ծագումից է։ Nöldeke-ն այս իսկ հարցի առիթով Մայմոնիդի արաբերէնի մասին բացագանչում է. «Պէտք է ուշք դարձնել, թէ ինչպէս է գրում մի իսկական սեմական արաբ, որպիսին է Մուքադդասին».—«man beachte, wie ein so reiner arabischer Semit wie Mugaddasi schreibt!» (տե՛ս I. Friedländer-ի. յիշ. յօդ. եր. IX. ծանօթ. 4)։ Friedländer-ը այսպիսի արաբերէնի մասին մէջ է բերում Յեհուդայ-Իբն-Տիբբոն-ի բնորոշող կարծիքը որ յայտնել է Աբու-լ Վալիդի «Sefer—Harikma» (հրատ. Kirchheim, Ֆրանկֆուրտ Մայնի վերայ 1856 թ. եր. III) նրա թարգմանութեան ներածութեան մէջ, ըստ այսմ. «պատահում է որ մենք թարգմանական աշխատանքի մէջ խորասուզուածներս արական վերջաւորութիւնը իգականի տեղ ենք դնում, կամ եզակին՝ յոգնակու տեղ, և ընդհակառակն. արաբականի մէջ եղածները այդ տեսակ սխալներից են» (յիշ. յօդ. եր. XIII. ծանօթ.)։

Արաբական քրիստոնէական գրականութիւնը քիչ է ուսումնասիրուած։ Քրիստոնէական յիշատակարանների արաբ լեզուի վերայ աւելի սակաւ է ուշադրութիւն դարձուած։ Քիչ է ուշադրութիւն դարձուած նրա աղաւաղումների, ռամկաբանութեան և բազմազանութեան վերայ. մինչդեռ յայտնի է, որ արաբերէնը որպէս գրական լեզու դործ էին ածում զանազան երկրների, զանազան ծագման, զանազան դաւանութեան քրիստոնեաները—միաբնակներ, ուղղափառներ (քաղկեդոնականներ), արաբներ, ասորիներ, կոպտեր և այլն։ Սակաւաթիւ հրատարակուած յիշատակարանների մէջ այնուամենայնիւ գտնում ենք մի կարգ աղաւաղ ձեւեր և ինքնուրոյն արտայայտութիւններ, որոնք նկատելի են և մեր բնագրում, ինչպէս օրինակ, Studia Sinaitica № VIII, M. D. Gibson և Horae Semiticae-ի № III-ում A. Sm. Liwis հրատարակած բնագրերի մէջ։ Մեր յիշատակարանում թերեւս գործ ունենք արաբ կենդանի լեզուի յատկութիւնների հետ, որը կիրառութեան մէջ էր քրիստոնեաների և մասնաւորապէս քրիստոնեայ մելքիտների (քաղկեդոնականների) մօտ։ Մի կարգ աշխարհագրական անուններ

վրացական ձև ունեն։ Բայց անհրաժեշտ կարիք չըկայ այդ բացատրել նրանով թէ թարգմանիչը վրացի էր։ Նկատուած վրացական տարրը, անկասկած, մի քանի դէպքերում յունական բնագրինն են. այսպիսի դէպքերում այս երևոյթը ուրիշ կերպ էլ բացատրելի է։ Կարելի է մի հանգամանք յօգուտ վրացի հեղինակութեան ցոյց տալ. այն է յունական χ-ш (շ)-ի փոխուած. թէև այնուամենայնիւ, այդ ինքն ըստ ինքեան ոչինչ չի վճռում. դա պարզ յոյն բարբառային, բաւական սովորական երևոյթ է, որը յոյն բարբառի ազդեցութեան հետ նկատում ենք՝ յունական դարձուածները վրացերէնի փոխանցելիս, որ պատահում է Սինայեան վրացերէն Ժ. դարի ձեռագրի մէջ էլ։ Բայց, սակայն χ-ի այդպիսի ընթերցմունքը պատահական զուգադիպութիւն չէ լազերի հարևան փոքր ասիական յոյների արտասանութեան մէջ։ χ-ով յոյն բառերը լազերի լեզուի մէջ մտել են յատուկ այդպիսի առոգանութեամբ. օրինակ шilya շիլիա—(χιλιας) հազար։ Այդպէս էլ կարող էին լինել χ-ի հնչիւնը իվերացիների, ոչ արևելեան, այլ արևմտեան իվերացիների, ինչպէս յետոյ կը բացատրուի՝ լազերի հարևան մնգրելցիների ոչ գրական, այլ կենդանի լեզուի մէջ։ Այս հանգամանքում, արաբական թարգմանութիւնը հազիւ թէ կարող լինէր երևան գալ Ը.—Թ. դարից ուշ։ Վասն զի այդ ժամանակից սկսած արևմտեան վրացիների սովորութիւններն ու կարգերը (տրադիցիա) սկսում են վերջնականապէս տեղի տալ արևելեան վրացիների աւանդութիւններին, որոնք, ինչպէս երևում է, իսկապէս օտար էին Ս. Գրիգորի պաշտամունքին և քիչ էին հետաքրքրւում նրա մասին զրոյցներով։ Սակայն արաբական վերսիայի նոյն իսկ յունական բնագիրը շատ հին ժամանակի արտադրութիւն չէ։ Եթէ հիմք ունենայինք մտածելու, թէ ալան ասելով հեղինակը ի նկատի ունի հարևան աբխազներին, այն ժամանակ յունական բնագիրը պէտք է հասցնել ամենաշատը Ժ-դարին։ Իւ. Կուլակովսկին (Ю. Кулаковскій) բացատրում է, որ «ալանների լուսաւորուելը քրիստոնէական լուսով կատարուել է Նիկողայոս Միստիք-ի պատրիարքութեան օրով, և այն էլ, հաւանօրէն, այն ժամանակ, երբ նա երկրորդ անգամ բռնեց պատրիարքական աթոռը» այսինքն, 912—925 թ. (Христіанство у Аланъ, Виз. Времен., 1898, V, եր. 3. նոյնպէս 4—7, 7-9)։ Բայց ինչպէս յայտնի է ալանները, օրինակ, երբեմն Պրոկոպիոսի մօտ[1]) Ալբանացիների կամ

1) Պրոկոպիոսի (Гот. IV, 3. 469, Бон.) այսպիսի ալանները՝ որ բարեկամ էին պարսիկներին, սփռուած էին մինչև «Կասպից դռները» (հմմ. Г. Дестунисъ, Прокопія Кес. Ист. войнъ, П, եր, 225)։

Ալուանների ըստ Նոր-հայերէն Աղուանի յետնագոյն անունն է, իսկ այս ալանները Ժ–ից էլ դեռ մի քանի դար առաջ քրիստոնեայ էին: Այս Ալանիայում մոխ. Ալբանիայում Ժ. դարում ոչ թէ քրիստոնէութեան սկզբնաւորութիւնն է, այլ քաղկեդոնական շփոթութիւնների լուծումն, մի մասը վերջնականապէս միանում է քաղկեդոնական Վրաստանին մի մասն էլ հակաքաղկեդոնական Հայաստանին [1]:

Արաբական վերսիայում աբխազների յիշուելը կարող էր հաստատել որպէս terminus a quo Զ. դարը, երբ Յուստինիանոս Ա.–ի ժամանակ (527—565) նրանք քրիստոնէութիւն ընդունեցին (Прокопій, De bello gotthico, IV, 3. հրատ. Бон. եր. 472—473 [2]): Մեր յիշատակարանը նոյնպէս Զ. դարից յետոյ է, բայց դրա համար հարկ չկայ յենուել այն բանի վերայ, թէ այնտեղ յիշւում են աբխազները. մանաւանդ որ աբխազ տերմինը ներմուծուած է, հաւանօրէն, արաբ թարգմանչից կամ աւելի շուտ, արտագրողներից մէկի ձեռքով: «Աբխազներ» տերմինով, ինչպէս տեսանք, ցոյց է տրւում այն ժողովուրդը, որը ուրիշ դէպքում «լազերի» անունով է երևում: Հիմք չկայ կարծելու, որ այս ժողովուրդը յոյն բնագրում կրկնակ անուն ունենար: Մինչդեռ «լազեր» տերմինը անկասկած կար յոյն բնագրում, որովհետև նա արաբ թարգմանութեան մէջ պահպանել է յոգնակի թուի սեռական հոլովի յոյն վերջաւորութիւնը [3]: «Լազիկիէթ» ըն-

1) Հետաքրքիր է. որ Ю. Кулаковскій-ի ալանների պատմութեան ուսումնասիրութիւնը առանց հայերի չի գլուխ գալիս: ա. Ոսկեայ Հորդայի խանից հովանաւորուած ալանների Սիմէօն միտրոպոլիտը. որ տեղական եկեղեցու երկպառակութիւնների պատճառն էր (1354 թ.) ի միջի այլոց՝ «արգելք դրեց Թանի ... քահանաների վերայ, որ օրինականութիւններ չանեն» ... «Մի քանի օրթոդոքսների (քաղկեդոնական) զաւակներ մկրտուեցին հայ դաւանութեամբ (յիշ. յօդ. եր. 14). բ. 1364 թուին ալանների եպիսկոպոսական աթոռը բռնողն էր Մելիտինէի (Հայաստանում) միտրոպոլտի տեղակալը» (յիշ. յօդ. եր. 15).

2) Կուլակովսկու (Кулаковскій) ասածով՝ 547—548-ին անմիջապէս նախընթաց տարիներում (Որ Յուստինիանոս կայսրը Աւազգների՞ համար տաճար շինեց. Археолог. извѣстія и замѣтки, т. V. Москва 1897. եր. 34):

3) Լազերի բարձր պաշտօնական շրջաններում քրիստոնէութիւնը աւելի շուտ է մուտք գտել քան Աբխազիայում: Հետաքրքիր է Ս. Գրիգորի մասին գրքի համար համեմատութիւնը լազերի թագաւոր Զամնասկի (Դամնասի) որդի Ցաթիայի կամ Ցաթայի դարձի: Նա Կոստանդնուպոլսում ընդունեց քրիստոնէութիւնը, ամուսնացաւ Բիւզանդական մի բարձրաս-

*թերգման մէջ, ինչպէս ցոյց է տրուած, մենք ունենք այդ լիսկ լազերի երկրի յունարէն անուան վրացական ձևը. բայց աշխարհագրական անունների հետ այդպիսի վերաբերմունք օտար չէ յոյն բնագրին էլ: Վերջապէս յիշատակարանում խօսքը յատկապէս լազերի և Լազիքի մասին է այլ ոչ իսկական Աբխազների մասին: Լազիքը մի որոշ ժամանակ ընդգրկում էր ոչ միայն այժմեան Լազիստանը այլև Սև ծովի արևելեան ափը այժմեան Գուրիայի, Մնգրելիայի և անգամ Իմերեթիայի հետ միասին: Յունական լա́զօի կամ լա́զօի, հելլենացած ձևով պահպանուել է տեղական լազ(ն)ի* laz(n)i *տերմինը, որը իւր հերթին կարելի է մեկնել որպէս երկրի անուան զուառական ձև* zän (*զան*) *արմատից* la (*լա*) *յօդով*[1]: *Սուաներէնում այժմ էլ Մնգրելիան սովորաբար զան* (zän) *է կոչւում. (իսկապէս* զան *սկզբում նշանակում էր անձն, ժողովուրդ, բայց ոչ երկիր, ըստ այսմ, յոգնակի զանար մնգրելցիներ), մու-զն-ի* (mu-zn-i) *մնգրելցի լու-զն-ու* (lu-zn-u) *մնգրելական: Սրանով սակայն հիմք չըկայ, ի հարկէ ոչ ստուգաբանօրէն և ոչ էլ գործնապէս նոյնացնել «լազ և «մնգրելցի» (փոխուած) «մնգրէլ» տերմինները: Այստեղ պարզապէս գործ ունենք ցեղակից ժողովրդի քաղաքականապէս վերածնութեան հետևանքի հետ, մի ժողովրդի անունը դէպի միւս ժողովուրդը փոխանցելով: Վրաստանում էլ մօտ Ը. դարում «աբխազներ» տերմինը արևմտեան, յատկապէս Իմերեթիայի և Մնգրելիայի, Վրաստանի նշանակութիւն էր ստացել: Մինչդեռ լեզուաբանօրէն «մեգրել» (մնգրելցի) նշանակում է, ինչպէս այժմ կը տեսնենք, «Իվեր»:*

*Օտարները, ամենից առաջ հին ազգերը՝ Կովկասի աշխարհագրական տեղական անունները կամ փոխել են կամ թարգմանել: Վրաց լեզուի առօգանութիւնը, որ զարգացել է ցեղակից սեմական լեզուների հետ աննչաբար, հնարաւոր է դարձնում*

---

*տիճան մարդու աղջկայ հետ. եւ ստանալով* (518—524) *Յուստինիանոսից եկեղեցական իշխանութեան նշանները, վերադարձաւ կնոջ հետ հայրենիք՝ թագաւորելու* (Дестунисъ, Прокоп. и пр. *եր.* 434. *ծան.*)*: Ընդհանրապէս քրիստոնէութիւնը* լ ա զ ի ք *մտաւ աւելի վաղ: Զ. դարի սկզբում գուցէ եւ Ե.-ում լազերը Երուսաղէմում վանք ունէին: Այս կարելի է եզրակացնել այն փաստից, որ Յուստինիանոսը Երուսաղէմի անապատում նորոգեց լազերի տաճարը, որ այդ ժամանակ հաւանական է, հնացել էր,* (Прокопій, De aedificiis, V, 9):

1) *Հմ. Սուաներէն մուրքվամ* (murkvam) *աշտարակ. լամուրքվամ* (lamurkvam) *աշտարակի տեղ. Այժմեան սվաներէնում աշխարհագրական տերմինների մէջ լա* (la)*-ի փոխանակ լէ* (le) *ենք գտնում.*

«Իվերիա» աշխարհագրական տերմինի կովկասեան նախատիպը դուրս բերել, տերմինի, որ յաջողել է իւր բնագաւառում ոչ միայն փոփոխուել, այլ և զանազան ձևեր ընդունել ժամանակի կամ տարածման՝ այսինքն, տեղական բարբառների զարգացման համեմատ: Այստեղ այժմ հարկ է յիշեալ տերմինի բացատրութիւնը տալ. որովհետև նա իւր հերթին հնարաւորութիւն է տալիս, Ս. Գրիգորի գործերի արաբական վերսիայի մի տեղեկութեան էական-պատմական հիմքը նշմարել: Յոյն Իվերիա և Իվերէս փոխ. Իվերօի տերմինների բացատրութեան փորձերի պատմութեան չեմ կպչում: Միայն փաստն եմ պարզում, որ յոյները վրացիներին և Վրաստանը այդպէս են կոչում, ի զարմանս վրացիների, և յոյների հետևողութեամբ նոյն կոչումը տալիս են հայերն էլ, սղելով բառասկզբի անշեշտ Ի ձայնաւորը=Վիրք [1]: Յատկապէս որ հայերն էլ գործ են ածում այդ տերմինը, կարող է առանձին իմն զարմանք առաջ բերել, որովհետև հայերը, թւում է, թէ պէտք է իմանային, որ վրացիք իրանց աշխարհը «Քարթլէին անուանում (Քարթլ-ի Քարթվ-ի խօսքից. Սաքարթվելօ յետնագոյն ազգային — կուլտուրական, և աւելի շուտ, քաղաքական տերմին է), իսկ իրանց կոչում էին «քարթուէլ-ի»ներ: Բայց վրացիներն էլ ի փոխարէն՝ ի զարմանս հայերի՝ սրանց կոչում են «Սոմեխ-ի»ներ, իսկ աշխարհը՝ Սոմխեթ-ի (Սոմեխիա): Հայերի զարմանքից, այս դէպքում, չի կարելի մասն չհանել իրանց պատմական տեղագրութիւնը գիտեցող վրացիներին էլ, որովհետև անկասկած է, որ խ վերջացած անունները ինչպէս Կախի Մես-խ-ի, Կոլ-խ-ի Մոսո-խ-ի Ջաւա-խ-ի և այլն, յատուկ են վրացական ցեղերին որպէս ցեղ նշանակող տեռմին: Բայց բանն այն է, որ վրացիները հայերի հետ առաջին անգամ ծանօթացան վրացական Սամխեթ գաւառում բնակած իրանց ցեղակիցների միջոցով և այդ գաւառի բնիկ վրացի ժողովրդի անունը փոխանցեցին հայերի վերայ: Այս միակ դէպքը չէ վրացիների հետ: Վրացիները իրանց կենդանի լեզուի և մինչև անգամ իրանց հին գրականութեան մէջ էլ, (անկախ գրոց տերմինից) յոյներին կոչում են ոչ թէ հայերի պէս յոնիացիք, հելլեններ և կամ գրեկներ, այլ «բերձէններ» (բերձէն-ի):

Այս զարմանալի կոչումն, անկասկած, տեղական վրացական է. և, ի կատարեալ զարմանս, յատկապէս վրացիայն ցեղի կոչումն, որի միջոցով արևելեան վրացիները ծանօ-

---

1) Խորենացու աշխարհագրութեան մէջ Իվերիա փոխուած է Վերիա ==Veria.

թացել են յոյների հետ։ Միայն արևելեան վրացիները կարող էին առաջին անգամ տալ այդ անունին այդպիսի օտարոտի նշանակութիւն։ Ձ-ի և ի-ի մէջ դրուած է տեղ, երկիր ցոյց տուող ქნ յօղը յոգնականացուցիչ վերջաւորութեամբ (լրիւ՝ ქნ-en, կրճատ՝ ნ-n), ըստ նշանակութեան՝ համանիշ վրացական ք (խ) չ, և այլն վերջաւորութեան։ Բեր-ձ—իսկական արմատից, առանց (էն) յոգնականացուցիչ վերջաւորութեան կազմուել է բեր-ձ-ուլի—ածական հին ձևը, որ նշանակում է յունական։ Արդեօք ձ-ի և վրացերէն որդի նշանակող ძე-ի մէջ առընչութիւն կայ, այս բոպէիս չեմ կարող հաստատել։ Իրողութիւնն այն է, որ մեր աշխարհագրական տերմինի հիմքն է բեր (ber), իսկ արմատը բր (br)։ Միւս հնչիւնական ձևը այս ბრ (br) երկտառ արմատի է მრ (mr)։ Իմեր–էթ-ի աշխարհագրական տերմինի մէջ մենք ունենք աշխարհ նշանակող ქვ սովորական վերջաւորութեան վրացերէն ձևը. իսկ Իմեր–էլ–ի ազգագրական տերմինի մէջ—ցեղ նշանակող ქლ սովորական վերջաւորութեան վրացերէն ձևը, սրա մր արմատի იმერ կազմից։ Արմատը ինքն ըստ ինքեան նշանակում էր սկզբում ժողովուրդ. այս იმერ արմատը ნ (n) յոգնականացուցիչ վերջաւորութեամբ գործ է ածւում იმერ-ნ-ի ժողովրդի անուան նշանակութեամբ. որանից պարզ է, որ იმერ բառը ամենևին չի նշանակում «այն կողմ» (յայն կոյս), იმერ բառը չի կարելի նոյնացնել վրացերէն նոյն նշանակութիւնը ունեցող բառի հետ, որը ի դէպ, հնչւում է იმიერ և ոչ იმერ (համ. Усларъ, Древнѣйшія сказанія о Кавказѣ, եր. 303)։ Բացի որանից, չի կարելի Իմերեթիայի կոչումը բացատրել կարտալինցիների տեսակէտով, որոնց համար Սուրամի բարձրաւանդակի ետևի ամբողջ արևմտեան կողմը կոչւում է «Այն կողմը»։ Այս արևմտեան կողմի վրացական այլ ցեղերը, ինչպէս մնգրելցիները, գուրիացիները, իրանց երկիրը ամենևին իմերելներ (իմերեթեցի) չեն կոչում։ Այդ սահմանափակ շրջանի տեղական էտնոգրաֆիական անուն է։ Ի հարկէ իմերները հնումն աւելի ընդարձակ տարածութիւն էին գրաւում. Նրանց անունը, որպէս փշրանք, պահպանուել է Բաթումի նահանգի մի գաւառամասում (Իմերխեւ, որ նշանակում է, Իմերեան կիրճ), նոյն իսկ պատմական աշխարհագրութիւնից գիտենք, որ Իմերեթիա և Մնգրելիա տերմինները նոյնացած էին, այդ բանի համար կայ ինչպէս կը տեսնենք, լեզուաբանական հիմք. սակայն იმერ–ը է ընդհանուր տեղային տերմինի կրճատուած հին ձևերից մէկը, որը պահպանել է որպէս մնացորդ մի որոշ, սահմանափակ առանձնացած շրջան։ Իմեր տերմինի անթերի և հին ձևը կլինի Ցիմեր, փոխ. Ցիրեր։

Վրացերէն արմատները մեծ մասամբ եռատառ են, բաղկացած երեք բաղաձայներից: Երբ այս չափից պակաս է, այդ այն պատճառով է, որ նոր ժամանակներումս անհետացել կամ սղուել են կիսաձայն կամ թոյլ կոկորդային տառերը. օրինակ յ., եթէ նրանք չեն պահպանել իրանց համապատասխան շշող (յ-ին համապատասխան է գալիս ս), կամ չեն թանձրացել համապատասխան կոշտ (յ-ի համար՝ ხ, գ.) բաղաձայնի փոխուելով (համ. աբասխի, փոխ. աբխազի աբազգի): Փոխանակ յիմեր-ի իմեր բառի մէջ կրկնւում է նոյնպիսի երկտառի դէպքը, նոյնպէս և յբեր-ի տեղ՝ բեր: Վերջին ձևը կանոնաւորապէս յ-ն ս-ի փոխուելով՝ (սբեր), հանդէս է եկել Սպեր աշխարհագրական տերմինը. Սպերը և՛ հայ և՛ վրացի Բագրատունիների ցեղական կալուածքի և քաղաքի անունն է, որ գտնւում է Ճորոխի վերին հոսանքի մօտ: Հարկ չկայ բացատրել, որ Սպեր կամ Սպիր, փոխ. Իսպեր (Յիսպեր) կամ Իսպիր (Յի-Սպիր) գաւառը հնում աւելի ընդարձակ տարածութիւն էր գրաւում: Եւ նոյն տերմինն էլ տեսնում ենք յունական Սիս-պիր-իտ-իս-ի մէջ, ուր სი է համանիշը վրացերէն სი նախդրի փոխ (յ) ი՝ տեղ ցոյց տուող անուններէ մէջ, իսկ ით-ը երկիր, կողմն նշանակող ით, ეთ վերջաւորութիւնների գաւկորդն է: Սպեր տերմինի ուրիշ ձևերն էլ դեռ կան, որ պահպանել են ուրիշ լեզուները, բայց այստեղ շտապում եմ պարզելու ჯბერ իսկապէս յղեր ձևի գլխաւոր գաւառական շառաւիղները, որովհետև յետին ժամանակում ვ-ի փոխ. մ-ի՝ կոշտ ბ դառնալիս, վրացերէն հնչման համեմատ, պահանջւում է շրթնային վ-ն դնել բառի սկիզբը կամ երկու ձայնաւորների միջև: Նոյն հնչման համեմատ էլ, կանոնաւոր է, ինչպէս ցոյց է տրուած ჯ-ի՝ გ դառնալը. այսինքն կանոնաւոր է ჯვერ-ի տեղ გვერ ձևը: Սակայն տեղական բարբառները զարգացման նոյն շրջանում կանգ չառան, երբ ժողովրդի շրթունքներում յեղյեղւում էր გვერ-ի բարբառային զանազանութիւնը, այլ նրանց շարունակող կեանքում ვ-ն կամ դուրս ձգուեց (օրինակ գեր) կամ ვ-ն դարձաւ ու (գուր): Թէ այս և թէ այն ձևը գտնում ենք տեղական աշխարհագրական անունների մէջ: Գեր արմատից կազմուած է այն տեղի անունը, ուր բնակւում են გერ-երը, փոխ. გვერ-ները կամ ხვერ-ները. ე նախդիրի միջոցով՝ Եգեր: Այդ անունից կազմուած է սովորական მ նախդիրով, ელ վերջաւորութեամբ և ე կիսաձայնի սղմամբ մ-եգր-էլ-ի մնգրելցի, ինչպէս Եգրիպա-մ-եգրիպա-էլ-ի=եգրիպացի: Այժմ վրացիները մի միայն Մնգրելիայում բնակողներին են մնգրելցի համարում. բայց վրացական հին յիշատակարաններից երևում է, որ վրացիներին՝ Եգեր տերմինի աւելի ընդարձակ նշանակութիւնն էր յայտնի: Այդ

*բառից առաջ է եկել* ეგრ-ის-ი *անունը, որով հասկացւում էր ամբողջ արևմտեան Վրաստանը, մէջ առնելով այժմեան Իմերեթիան, Գուրիան, Իմեր—Խևին և այլն։ Եգեր աշխարհի անունը անփոփոխ պահպանուած է Մովսէս Խորենացու աշխարհագրութեան մէջ* (*հրատ Պատկանեանի*, 6, 16, 17)։ *Ը.—Թ. դարի այս աշխարհագիրը, ի հարկէ գործ է ածում այդ որպէս տերմին, Վիրքից տարբեր, որ իրանից շատ առաջ յատկացուած էր Վրաստանին, բայց նա այնուամենայնիւ Եգերքին աւելի ընդարձակ մեկնութիւն է տալիս, նրա կազմի մէջ թուելով Լազերին և Ճաներին, այսինքն՝ այսպէս կամ այնպէս նրա սահմանը մօտեցնելով խալական վրացիների բնակավայրի հարաւային սահմաններին։ Երկրի այդ անունից ծագել է Եգեր—ացիք հայերէն կոչումը այն ժողովրդի, որ զետեղուած է Հայաստանի հիւսիս արևմտեան կողմում պոնտացիների հետ* (*Մ. Խորենացի, պատմ. Բ.* 6)։ *Բաւական առաջ,* ეგერ-*ը յիշւում է Փաւստոսի մէջ* (*գ.* 7) *սուանների հետ* (*եգեր-սուանք*)։ *Մի ուրիշ ձևը ունենք կոշտ* გ.-*ով* (*գվեր-գուր*) *Գուրիա գաւառի կոչման մէջ։ Այդ անունի մէջ, որ դուրս է եկել Գվերիա-ից, կայ* ია *վերջաւորութիւնն էլ ինչպէս Իվերիա-յի մէջ է։ Արևմտեան Անդրկովկասում, քաղաքական միութիւն կազմող երբեմն շատ աւելի յայտնի վրացական այս ցեղի կամ լաւ ևս ցեղերի անուան բարբառային տեղական այլ և այլ տարբերութիւնները հենց տեղումը ճշդելու համար շատ նիւթեր կան։ Առայժմ բաւականանում եմ մերձաւոր եզրակացութեամբ.* 1. *հարաւ արևմտեան կողմում ապրող վրաց ցեղակից ժողովուրդներին էլ, արևելեան քարթվէլներին էլ յոյները* (*իվիրիօ*) *և նրանցից առնելով՝ հայերը «վիրք» են կոչում։* 2. *Վրացական ժողովրդի անուան* ბერ-*արմատի վերայ աւելացնելով ցեղ նշանակող տեղական գաւառական ձ-էն վերջաւորութիւնը, վրացիներն էլ, յատկապէս արևելեան վրացիները—քարթուէլները յոյներին, այսինքն համապատասխան սահմանակից երկրի յոյներին անուանում էին* (ბერ-ძენ-ი)։ *Հետևապէս, պարզւում է, որ իվերացիներ անուամբ պէտք է հասկանալ, այս բառի տեղական, ազգագրական նշանակութեամբ, ոչ թէ արևելեան, այլ արևմտեան վրացիներ, աւելի ճիշդ՝ միջերկրեայ, այսինքն, ծովափնեայ լազերից յետոյ վրացական ցեղերի երկրորդ շարքը, ցեղերի, որոնք անմիջապէս կից են լազերին և զետեղուած են Կովկասի ներքին շերտի վերայ կոր գծով Սպերից մինչև Սուանեթիան, հետևաբար պարփակելով, եթէ ոչ ամբողջ այժմեան Մնգրելիան, անշուշտ նրա մեծագոյն մասը։ Այս ցեղակից իվերական երկրի նշանաւոր մասը արևելեան վրացիները—քարթվէլները—լեզուով միացրել են իրանց*

հետ, մասնակից անելով նրան քարթվելական քրիստոնէական կուլտուրային, որ այժմ, վաղուց, շատ վաղուց դարձել է համավրացական ազգային։ Սկզբում, մօտաւորապէս մինչև Զ.—Է. դարը իվերական երկիրը հաւանօրէն պահպանել էր ամբողջովին իւր լեզուային առանձնութիւնը, քրիստոնէական կուլտուրայի վերաբերութեամբ այս իվերացիք լազերի հետ միասին, արևելեան վրացիներից—քարվէլներից տարբերուելու համար, (որի զանազան ապացոյցները կան), իսկզբանէ գտնւում էին յոյն եկեղեցու հետ բացառիկ և անմիջական հաղորդակցութեան մէջ։ Ըստ երևութին, այս իվերացիք էլ իրանց արևելեան եղբայրակիցների համար հարթեցին ճանապարհը դէպի Սուրբ Երկիրը։ Դուցէ այս իվերներից է առաջ եկել Երուսաղէմում Ե. դարում իվերական վանք հիմնող Պետրոս Մայումացին, որը մինչև ԺԷ. դարի վերջը յայտնի չէր արևելեան վրացիներին-աննալներին. (Н. Марръ, Житіе Петра Ивера. եր. X.)։ Ամենայն հաւանականութեամբ այս իվերացիների վանքերն էլ Ս. Երկրում նորոգեց Յուստինիանոսը (Прокопій, De aed, V. 9) միաժամանակ լազերի վանքի հետ (Նայել վերև. ծան. եր. 165 ծն. 4 սոյն Թարգ. եր. 106 ծն. 3.)։ Սենայում էլ նկատում ենք լազերի երևումն իվերացիների հետ զուգընթացաբար. լազերը գաղթել են այնտեղ, տեղական աւանդութեան համեմատ, վանքին սպասաւորելու համար (А. А. Васильевъ, Поѣздка на Синай въ 1902 году СПБ. 1904, եր. 47), իսկ իվերացիները գաղթել են որպէս, արևմտեան վրացիներից առանձին խմբ յարգուած, Սեբաստիայի քառասուն մանկանց վանքի կառուցանողներ (Пор. Успекскій, первое путешествіе въ Синайскій монастырь, 1856, եր. 195)։ Այս իսկ իվերացիք էլ լազերի հետ սկսել են, ամենայն հաւանականութեամբ, յետին ժամանակներում ներմուծել վրաց ազգային գրականութեան մէջ յունաց եկեղեցական ուղղութիւն։ Նրանք էլ, բնականաբար, դարձան յունաց կայսերական դաւանութեան՝ քաղկեդոնականութեան—տարածողները ցեղակից ժողովուրդների մէջ։ Այդ հեռաւոր ժամանակին, յոյն եկեղեցական ազդեցութիւնը, իհարկէ, յոյն կայսերական լեզուի հետ գրաւել էր սվաններին էլ[1]։ Սվաններէնում պահ-

1. Կիրիլլի եւ Մեթոդի հին սլաւոներէն վարքի համեմատ աբխազները (աւասգները) ունէին տեղական եկեղեցական լեզու (Marquart, յիշ. յօդ. եր. 190). սակայն այս վկայութիւնը վերաբերում է այն ժամանակին, երբ աբխազները, ոպէս կոչւում էին այդ ժամանակ արեւմտեան վրացիք, յիրաւի, ունէին եկեղեցական դրութիւն, բայց այն արդէն վրացերէն էր.

պանուել են բացառապէս յունական եկեղեցական ազդեցութեան հետաքրքիր հետքեր. օրինակ. Սվանները իրանց ժողովրդական լեզուով քահանային կոչում են բապ (յունարէն παπάς—), շաբաթը՝ սաֆտէն (յուն. σάββατον), մինչդեռ վրաց գրականութեան մէջ սեպհական բառերն են—առաջինի համար՝ մղդել-ի կամ խուցէս-ի, իսկ երկրորդի համար կարողացել են պահպանել նոյն բառի արևելեան ձևը շաբաթ-ի (հայերէն շաբաթ, սիրիական և եբրայական բառից), որ Հայաստանի միջոցով մտել է Վրաստան դեռ սիրիական եկեղեցուց: Հաւանականօրէն այսպիսի յունական ծագումն ունի ժողովրդական առացուածների մէջ մտած սվանական ստամին բառը, որ սափոր է նշանակում և բովանդակում է 5—6 շիշ: Այս, անկասկած, յունարէն ստամնոս բառն է որ կաւէ սափոր է նշանակում և յատկապէս՝ գինու սափոր, որ պահպանուած է ոչ միայն յունական ազդեցութեան ենթարկուած վրաց Ս. Գրքում (Մարկ. է, 4, 8) այլ և յունարէն բնագրով ուղղուած Ս. Գրքի հայ օրինակում, օրինակ. Մարկ. է. 4. ստամն ձևով: Մինչև որ կը տարածանար ցեղակից քարթուէլների ազգային կուլտուրական տիրապետութիւնը լազերի և իմերացիների մէջ, այդ տեղ յոյն եկեղեցական ազդեցութեան ոյժը շատ զօրեղ է եղել: Այդ հին ազդեցութեամբ էլ պէտք է բացատրել յունական բառերի բաւական մեծ քանակի ներկայութիւնը լազերի այն մասի մայրենի լեզուի մէջ, որ մասը չէ յարել ցեղակից վրացիների կուլտուրական շարժմանը, և բնականաբար, հարկադրուել է մի կայսերական քրիստոնէական դաւանութիւնը իր օտար յունական եկեղեցական լեզուի հետ միասին փոխել մի ուրիշ կայսերական, մուսուլմանական դաւանութեան, իրանց, լազերի համար օտար, արաբ և թուրք լեզուներով: Թէև արևմտեան լազերը հաւատարիմ են մնացել քրիստոնէական հաւատին, բայց ազգայնապէս այլասեռուել են, բոլորովին յոյն դարձել: Գործի այս իրական հանգամանքով աւելի հասկանալի է դառնում, որ յոյն Պրոկոպիոս գրողը որպէս քրիստոնեաների՝ նոյնացնում է լազերին և իմերացիներին. «այս ժողովուրդը քրիստոնեայ է», կարդում ենք Պրոկոպիոսի մէջ «և նա քրիստոնէական դաւանութեան կարգերը մեզ յայտնի բոլոր ժողովուրդներից աւելի լաւ է պահում» (Перс. в., I. 12, եր. 57): «Լազերը», գրում է նոյն պատմիչը, «աւելի լաւ քրիստոնեաներ են», բառացի, «բոլորից աւելի քրիստոնեայ են» (Дестунисъ. Прокоп. Кесар. Исторія войнъ և այլն I, եր. 140): Այս ամէն յիշածներս ի նկատի ունենալով հետաքրքիր է, որ առաջին միտրոպօլտի անունը, որին Ս. Գրիգորը ուղարկեց «Վրացիների»

այսինքն Իվերացիների-Մնգրելցիների մօտ Իբիր-բ-գ-խ-ու-ա (ռուս հրատ. եր. 137, 9, սոյն թարգ. եր. 70, 29) մնգրելական ազգանուան (ֆամիլիա) ձև է ներկայացնում, բաղկացած մնգրելական գ-խ-ու-ա բառով, այսինքն սքուա (squa) որ մնգրելերէն նշանակում է որդի[1]: Եւ, որ կարևորն է, այս առաջին հովուապետի մերձաւոր առնչութիւնը Սեբաստիայի քառասուն մանկանց, նրա ներկայութիւնը նրանց նշխարների գիւտի ժամանակ (ռուս հրատ. եր. 137, 13 սոյն թարգ. եր. 70, 27) հնարաւորութիւն է տալիս բացատրելու Մնգրելիայի գլխաւոր սրբութեան—այն է Մարտվիլի-ի վանքի անունը: Ամենքը լաւ հասկանում էին, որ «Մարտվիլ-ի» յունարէն μάρτυρ-մարտիրոս, նահատակ-բառի վրացերէն կանոնաւոր փոխադրութիւնն է, իսկ Մարտվիլի տաճարը Ս. Աստուածածնի վերափոխման է նուիրուած. և վանքի անունը իսկապէս անհասկանալի էր երևում: Շատ հաւանական է, որ վրացիների, յատկապէս իվերացի-մնգրելների առաջին միտրոպոլիտը, որ այնքան մօտ առնչութիւն ունէր Սեբաստիայի նահատակների նշխարների գիւտի գործին, իւր առաջին եկեղեցին կառոյց ի պատիւ Սեբաստիայի նահատակների: Դիւբուան ասում է, որ Մարտուիլի եկեղեցին կառուցուած է հեթանոսական բագինի տեղում (Дм. Бакрадзе, Кавказъ въ древнихъ памятникахъ христіанства. եր. 96): Ի հարկէ, այդ դեռ մեծ փաստ չէ, որ Մարտվիլում անպատճառ տեսնենք Սեբաստիայի ս. նահատակների տաճար: Ի դէպ, մեր նպատակի համար բաւական է մտաբերել Իվերիա Մնգրելիայի մի ուրիշ եկեղեցի Մարտվիլին հարևան, Նաքալաքեվ աւանում, որը ճշդելու համար հետախոյզները մերձենում են կլասիքական տեղեկութիւնների հայեցակէտով, տեղեկութիւններ, որոնք դեռ նախապէս քննուած չեն տեղական աշ-

---

1) Ամենայն հաւանականութեամբ Իբիր-բ--ի արմատն էլ տեղական ծագումն ունի: Ցոյց տամ նրա մի հնարաւոր բացատրութիւնը: Արաբական բնագրում արմատի ձևն է իսկապէս բ-ի-ր-բ (в-у-r-в) որը կարելի է առանց որեւ է դժուարութեան կարդալ ի-բ-յի-ր-եբ (i-в-yi-r-eb) այսինքն իվեր յոգնականացուցիչ եբ. փոխ. եպ տեղական վերջաւորութեան. որովհետեւ արաբերէնում պ հնչիւնի իսկական նշան չը կայ: Այդ վերջաւորութիւնը լազերէնում այժմ եպ-է հնչւում, մնգրելերէն—իվերերէն՝ էֆ. եւ վրացերէն-քարթվելերէն՝ եբ: Այսպիսի բացատրութեամբ Իբիր-բ-գխուա, փոխ. Իբերեբ-գխուա կը նշանակէր «Իվերացոց որդի», այսինքն իվերացի, եւ. յիրաւի, արաբական վերսիայում էլ տեղեկութիւն է տրւում, որ այդ միտրոպոլիտը վրացի փոխ. իվերացի էր.

*խարհագրութեան, ազգագրութեան, լեզուական և քրիստոնէական կուլտուրայի չափազանց բարդ հարցերում:*

*Մուրավէեվի առելով (յիշ. յօդ.* II. *եր.* 268—269), *Նաքալաքեվում կարելի է տեսնել միակ եկեղեցին, որ չէն է մնացել աւերակների մէջ: Նա կառուցուած է մասամբ անտաշ քարով, մասամբ աղիւսով, և իւր բիւզանդական ձևերով խորին հնութիւն է երևում: Կարելի է համաձայնել ուսումնական ճանապարհորդների կարծիքին, որոնք այդ եկեղեցին վերագրում են Յուստինիանոսի ժամանակին, որովհետև Պրոկոպիոսի պատմութեամբ յայտնի է, որ նա լազերի մօտ եկեղեցի շինեց, երբ նրանց թագաւորը քրիստոնեայ դարձաւ* [1]. *ուրեմն, այս եկեղեցին դուցէ վեցերորդ դարից է և հաւանօրէն նուիրուած էր Աստուածամօր անուանը, ինչպէս է Յուստինիանոսի շինած եկեղեցիների մեծ մասը: Բայց այստեղ նա կրում է քառասուն նահատակների անունը, որովհետև աջ կողմում ցոյց են տալիս քառասուն շրջանակներ, յատակի վերայ ուղիղ դասաւորուած, ուր, որպէս թէ թաղուած են Սեբաստիայի նահատակների սրբազան նշխարները: Տեղական աւանդութիւնը մինչև անգամ քառասուն նահատակների լիճ է անուանում Տեխուրա գետի այն գեղատեսիլ մասը, որով մենք հիանում էինք, և հաստատում է, իբր թէ, նրանք այնտեղ են չարչարուել: Սակայն պէտք է որ մի հիմք ունենայ այդպիսի աւանդութիւնը: Մուրավիեվի վերջին ենթադրութիւնը բոլորովին ուղիղ է: Այս աւանդութիւնը ամենայն հաւանականութեամբ կապ ունի Իվերիայում քրիստոնէութեան սկզբնաւորութեան այն պատմութեան հետ, որը պահպանել է մեր համար Ս. Գրիգորի մասին զրոյցի արաբական վերսիան, (ռուս հրատ.* 137. 9. *սոյն թարգ.* 70. 27)*: Դրա հետ կապ ունի (ռուս հրատ. եր.* 147. 15, *սոյն թարգ. եր.* 80. 27). *և այն՝ որ քառասուն նահատակների եկեղեցու որմերի նկարների մէջ, «մոռացուած չեն Կոստանտինն ու Հեղինէն, որոնք պատահում են Մնգրելիայի և Իմերեթիայի բոլոր եկեղեցիներում» (Մուրավիեվ, յիշ. յօդ. եր.* 270)*: Այսպիսի հանգամանքում հասկանալի է, որ Մարտվիլ կոչումն էլ բացատրւում է նրա առաջին եկեղեցու կառուցմամբ ի պատիւ նոյնպէս քառասուն նահատակների կամ, գուցէ, Ս. Յովհաննու Կարապետի, որի մասը գտնւում է այդ*

---

1) Մուրավիեվը այստեղ աբխազներին լազերի հետ է շփոթում.

վանքի աւանդատանը (յիշ. յօդ. եր. 253)։ Յովհաննու Կարապետի և Քառասուն Նահատակների պաշտամունքը, որ ներմուծել է Իվերիա Ս. Գրիգորից ձեռնադրուած առաջին միտրօպոլիտը, հետևողութիւնը կը լինէր հայերի հին յարգանքի առ Յովհաննէս Կարապետ, առ Աթանագինէ նոյնպէս և առ Քառասուն Նահատակները, որոնց նշխարները Հայաստան բերեց ինքն Ս. Գրիգորը։ Հետաքրքիր հնագոյն յիշատակարանը Մարտվիլում է «գուցէ Ը. դարից էմալի մի նմուշ,», որ փոքրիկ պատկերի մի կտոր է Յիսուսի նկարով»։ Յովհաննէս Կարապետը երկրպագութիւն է անում պատուանդանի վերայ կանգնած Փրկչին, երկու ձեռքը մեկնելով Նրան (Н. Кондаковъ, յիշ. յօդ. 74)։ Ի հարկէ, ոչ մեր արաբական վերսիան և ոչ էլ Նրա յունարէն բնագիրը չեն կարող վերաբերուել իսկական Իվերացիների բնակութիւն հաստատելու ժամանակին. բայց անկասկած, այդ արաբական վերսիայի մէջ ընկել են իրականութեան ...րձագանքներ, որ յառաջ են եկել մի որ և է աւելի հին, Իվերիա—Մնգրելիայի մասին տեղական աշխարհագրական մանրամասնութեան և տեղեկան եկեղեցական ուղղութեան շրջանում՝ լաւ տեղեակ աղբիւրից։ Արաբական թարգմանութեամբ ներկայ խմբագրութեան հեղինակն էլ, ամենայն հաւանականութեամբ, ինկատի ունի բոլոր վրացիներին։

Յիշատակարանի թուականը ճշդելու համար ես աւելի կը յենուէի այն բանի վերայ, որ վարքագրութիւն կազմողը Դուինի վերայ նայում է որպէս մի հասարակ եպիսկոպոսական աթոռի վերայ (ռուս. հրատ. եր. 139, 15. սոյն թարգ. եր. 72, 30), բայց Դուինի մասին հարևանցի ասուածի մէջ էլ կայ թէութեան և անաքրօնիզմի (սխալ ժամանակագրութեան) մասն։ Յիշատակարանի ժամանակը լաւ ճշդող կարող է լինել և այն ցուցմունքը, թէ հայոց եկեղեցում ե՛րբ է սկսել յիշատակուել Կոստանտնի և Նրա մօր անունը։ Հեղինակը այս բանը այնպէս է յայտնում, որպէս թէ կամենում է արդարացնել մի որ և է նորամուծութիւն (ռուս հրատ. 147, 15,-16. սոյն թարգ. 80, 27-30)։ Սակայն արաբական վերսիայում իսկոյն աչքի է ընկնում արտաքին, անկախ մի ցուցմունք, որ վճռապէս խօսում է յօգուտ այն բանի, թէ Նրա յունարէն բնագիր խմբագրութիւնը Է.—Ը. դարերից հին չէ։ Այսպէս են մնայում աշխարհագրական մի կարգ անունների վրացական ձևերը։

Սոյն խմբագրութիւնը Ագաթանգեղոսից տարբերւում է ոչ միայն առանձին մանրամասնութիւններով, այլ մասամբ և յօրինուածքով, օրինակ, քարոզը (եր. 101-107. սոյն թարգ. եր. 35—42) որ արաբական վերսիայում դրուած է Ս. Գրի-

գործի տեսիլքից և նրա մեկնութիւնից յետոյ (ռուս հրատ. եր. 99—101, սոյն թարգ. եր. 33—35), Ագաթանգեղոսը զետեղել է տեսիլքից առաջ։ Եւ այս առաջ է եկել նրանից, որ Ագաթանգեղոսը մինչև տեսիլքը ներմուծել է վարդապետութեան մի ամբողջ գիրք (եր. 153—417)։ Միւս կողմից արաբական բնագրի մէջ էլ տեսիլքից առաջ կայ Ս. Գրիգորի մի փոքր վարդապետութիւնը (ռուս հրատ. եր. 97—99, սոյն թարգ. 31—34)․ բայց ոչ ճիշդ համանման Ագաթանգեղոսի խմբագրութեան մէջ եղածին (տես վերև ռուս հրատ. 162 եր. սոյն թարգ. եր. 101—102)։ Սակայն երկու խմբագրութիւններն ամբողջովին համեմատելու կարիք չը կայ. ցանկացողը ինքը կարող է այդ անել։ Համեմատում եմ միայն մի քանի տեղերը, որոնք բնորոշում են այստեղ յարուցուած հարցերը։

1. Արաբական վերսիան հոգածութեամբ կրկնում է (ռուս. հրատ. եր. 119, 25—26. սոյն թարգ. եր. 53, 32) տեղեկութիւններն այն մասին, թէ Ս. Գրիգորի նահատակութեան գործերի սկիզբը, բանտարկութեամբ և զանազան տանջանքներով, գրուել է Արշէն (Երէզ) մեծ քաղաքում։ Հայ ազգային խմբագրութիւնը համապատշաճ տեղում բաց է թողնում այս հետաքրքիր, իրան էլ լաւ յայտնի (եր. 39—48) մանրամասնութիւնը, որ անկասկած, տեղական նահատակ Ս. Գրիգորի գործերի սկզբնական նկարագրութեան խեչերանքն է։

2. Արևմտեան Հայաստանի, Լազիքին և Իվերիային սահմանակից, ծայրագաւառի նահատակը դարձել է լուսաւորիչ սահմանակից ժողովուրդների-հայերի, վրացիների, լազերի (աբխազների) և աղուանցիների (ալանների)։ Յոյնի կամ յունաէքի գրչի տակ յունական քարոզչի մասին զրոյցի այս բնական խոշորացումն լիովին պահպանուած է արաբական վերսիայի մէջ, մինչդեռ հայ ազգային խմբագրութեան մէջ մեր ուշադրութեան առաջարկւում է միայն իրանց—հայերի—մկրտութիւնը։ Սակայն Հայաստանին հարևան ժողովուրդների մկրտութիւնը Ս Գրիգորի ձեռքով, յամենայն դէպս, յոյն խմբագրութեան առանձնացնող նորամուծութիւնը չէ, որ պահպանուել է արաբական վերսիայի մէջ։ Այդ գիծը հաւանօրէն յատուկ է եղել և այն ժամանակ, երբ տեղական քարոզչի գործերը փոխակերպւում էին ընդհանուր առաքելական գործունէութեան պատմութիւն, եթէ կամենում ենք ենթադրել, որ Ագաթանգեղոսը, բաց ի մեր արաբական վերսիայի բնագրից ուրիշ աղբիւր էլ է ունեցել։ Նոյն գծի հետաքրքիր յիշատակութիւնը գտնում ենք հայ ազգային խմբագրութեան մէջ էլ։ Հայ խմբա-

գրութեան հեղինակը յատկապէս թւում է բոլոր յիշուած ժողովուրդների սահմանները և դեռ էլ աւել՝ որպէս Ս. Գրիգորի քարոզչական գործունէութեան շրջան, բայց այնպիսի ձևով, որպէս թէ խօսքը միայն Հայաստանի մասին լինէր[1]։ Այս հեղինակը, որ յայտնի է Ագաթանգեղոս անունով, ներկայ բնագրում խուսափում է ժողովուրդների անունները տալուց. նա չի յիշում, օրինակ, վրացիներին, սակայն, պէտք է կարծել, որ նրա ժամանակ արդէն վրացիները հակաքաղկեդոնական հայերի հետ ոչ միայն մի չէին, այլ եկեղեցու դաւանութեամբ էլ անջատուած էին։ Կար մի ժամանակ, երբ վրացիների քրիստոնեայ դառնալը Ագաթանգեղոսի մէջ էլ կապւում էր Ս. Գրիգորի գործունէութեան հետ, բայց վրաց լուսաւորիչ Ս. Նունէի մասին զրոյցի միջոցով։ Այս մասին մանրամասն տեղեկութիւն է տալիս Մ. Խորենացին (Բ. 86), յենուելով յանուանէ՝ Ագաթանգեղոսի պատմութեան վերայ, յատկապէս այնտեղի վերայ, որ քիչ վերև մէջ է բերուած. ուր, հաւանօրէն, յետին ժամանակներում Նունէի մասին դէպքը յապաւուելով, ստացուել է պատմական աշխարհագրութեան կատարեալ խեղաթիւրումն, ի մասնաւորի, Վրաստանի սահմանների մասերը դառնալով Հայաստանի սահման։ Ըստ Մովսէս Խորենացու՝ Ագաթանգեղոսը Վրաստանի այս սահմանները վերագրում է Ս. Նունէի քարոզչական գործունէութեան շրջանին։ Բացասական քննադատութիւնը այս դէպքումն էլ մեղադրում է Մովսէս Խորենացուն, որ նա անքարեխիղճ դիմումն է անում. բայց Մովսէս Խորենացին, այն ժամանակ էլ ինձ թւումէ, ճշմարիտ էր. և նրա ճշմարտութիւնը այժմ աւելի ևս տեսանելի է, երբ հաստատւում է, ինչպէս ցոյց է տրուած (ռուս հրատ. 63—64. սոյն թարգ. 83—84) նրա միւս նոյնպէս անքարեխիղճ համարուած դիմումն Ագաթանգեղոսին։

---

1. 485—486. «Եւ այսպէս (Ս. Գրիգոր) ընդամենայն երկիրն Հայոց՝ ի ծագաց մինչեւ ի ծագս ձգէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն աւետարանութեան. ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն Խաղտեաց. մինչեւ առ Կղարջօք. մինչեւ խսպառ ի սահմանս Մասքթաց (յուն. տարբ. ընթերց. + եւ Հոնաց») մինչեւ ի դրունս Ալանաց. մինչեւ ի սահմանս Կասպից (յոյն ընթերց. ցդրունս) ի Փայտակարան քաղաք արքայութեանն (ընդգծումն ռուս. հրատ.) Հայոց. եւ յԱմդացւոց քաղաքէն մինչեւ առ Մծբին քաղաքաւ. քերէր առ սահմանօքն Ասորւոց. առ Նոր-Շիրական երկրաւն եւ առ Կորդւօք մինչեւ յամուր երկիրն Մարաց. մինչեւ առ տամբն Մահքրտան իշխանին. (յոյն. տարբ. ընթերց. Մախուրտաց) մինչեւ յԱտրպատական ձգէր տարածանէր զաւետարանութիւն իւր»։

Սակայն Ս. Նունէի դէպքն, որ Վրաստանի դարձը կապում է Հայաստանի հետ, է սկզբնական անկախ զրոյցների յետնագոյն յերիւրանք, գուցէ և երկու եկեղեցիների որ և է ժամանակաւոր համակերպութեան արտայայտութիւն, եկեղեցիների, որոնք անջատուած էին արդէն, կամ վերջապէս մտել էին իւրաքանչիւրը իւր անկախ զարգացման ճանապարհի մէջ։

3. Արաբական վերսիայում (ռուս հրատ. եր. 147—148, այն Թարգ. 81, 82), նոյնպէս և հայերէնից յոյն Թարգմանութեան մէջ (եր. 85) Նիկիայի ժողովի կանոնները, որ բերել էր Արիստակէսը, Ս. Գրիգորը ընդունում է ուղղակի ի կիրառութիւն։ Արաբաց Գէորգ եպիսկոպոսի ասածին համեմատ, Գրիգորը, որ իւր բարեհայեցողութեամբ առաջուց կանոններ ու կարգեր էր սահմանել, անձամբ է շտապում Նիկիայում գումարուելիք ժողովին (de Lagarde, An. Syr. եր. 123, 23—26), անկասկած, ժողովի վճիռները կիրառութեան ընդունելու համար [1]։ Ագաթանգեղոսի բնագրի հայկական խմբագրութեամբ Լուսաւորիչը նոյն «լուսափայլ» կանոններին յաւելումն է արել («և նոյն լուսաւորական կանոնսն յաւելեալ» Ագաթ. եր։ 507, 22)։ Այստեղ ակներև է ջանքը, հաստատելու հայ ազգային եկեղեցու հին և նոր առանձնայատկութիւնների հնաւանդ լինելը, առանձնայատկութիւնների, որոնք օտար են յոյն եկեղեցուն, և որոնց ներմուծող ակամայ հանդիսանում է Ս. Գրիգորը [2]։

4. Կայսերութեան հարևան երկրների յունական քարոզչի

---

1) Դրա համար էլ Գէորգ եպիսկոպոսը վրդովւում է հայոց եկեղեցու առանձնայատկութեամբ, որը հաղորդութեան մէջ թոյլ է տալիս միայն անխառն գինի. Նա այսպէս վարուելու ապացոյցները վատաբանելով է մէջ բերում, (յիշ. յօդ. եր. 128, 5). բայց գործադրութիւնը ոչ յանցաւոր. թէեւ չի ընդունում, որ Հայաստան ներմուծած լինի անպատճառ Ս. Գրիգորը. միայն ենթադրում է դրա հնարաւորութիւնը. (յիշ. յօդ. 126. 25)

2) Ագաթանգեղոսի աւելադրութիւնը պատահական տարբեր ընթերցմունք չէ, յառաջացած առանց որ եւ է դիտման. կամ արտագրողի գրչից. ընդհակառակն. հայ ազգային եկեղեցու շահերի պաշտպանութեան համար խմբագրական դիտաւորեալ սրբագրութիւն է, այնպէս. ինչպէս այդ շահը հասկացւում էր Ը. Թ. դարում: Դրա համար էլ, այն միտքը, թէ Ս. Գրիգորը Նիկիական կանոններին յաւելումներ է արել. կրկնում է հայ ժողովների կանոնների հեղինակը. կանոնների հաւաքածուն կազմուած է. յամենայն դէպս՝ մշակուած է ազգային եկեղեցական, հակաքաղկեդոնական հոգով, եւ վերագրում է Յովհան Իմաստասէրին (Գիրք Թղթոց. եր. 220).

գործունէութեան մասին զրոյցը ամբողջ Հայաստանի քրիստոնէական գործի ազգային պատմութիւն դարձնելով և միանգամայն Ս. Գրիգորի միսիայի շրջանը էլ աւելի ընդարձակելով դէպ ի հարաւ, Ագաթանգեղոսը ի հարկէ, չէր կարող հաշուի չառնել, թէև թոյլ կերպով, հայոց եկեղեցական գործի իսկական դրութիւնը։ Նա չէր էլ կարող բոլորովին չտեսնելու տալ սիրիական ազդեցութիւնը։ Եւ անհաշտելին հաշտեցնելու ձգտման հետևանքն այն եղաւ, որ կեսարիական յոյն եկեղեցու սան և որբանեակ Ս. Գրիգորի ղեկավարութեամբ, Հռովմում կրթութիւն ստացած Հայոց Տրդատ թագաւորը ժողովում է հայ մանուկներին ուսուցանելու մի մասին ասորերէն, մի մասին էլ յունարէն (484 եր.)։ Ս. Գրիգորի մասին արաբական վերսիայի մէջ սիրիական լեզուի բնաւին չը յիշուիլը աւելի հին երևոյթ է [1])։

5. Կարծում է, որ սիրիական ազդեցութեամբ հայ գրականութեան մէջ մտած նիւթերի այսպիսի անհրաժեշտութիւնը կարող էր Ագաթանգեղոսին թելադրել սիրիական Բարշամինա անունով աստուած զետեղել Թորդանում (Ագաթ. եր. 455—456), ուր, արաբական վերսիայի համեմատ (ռուս հրատ. եր. 119, 10—11. սոյն թարգ. 53, 8) Զևսի տաճարն էր։ Յօգուտ այս բանի խօսում է մի հանգամանք էլ, այն է, որ արաբական վերսիայի մէջ սոյն տեղում մենք ունենք, Թորդանի մասին աւելի գիտակ անձի հաղորդած տեղեկութիւնը։ Նա այս քաղաքի անունը տալիս է աւելի լրիւ և պէտք է կարծել, աւելի հին ձևով այն է Միթրոդան։

6. Հայ ազգայնական խմբագրութեան բնագրին է պատկանում հեթանոս աստուածների անունների ազգայնացնելը, այսինքն յունական անունները հայկականի փոխելը. սակայն այս համեմատաբար յետնագոյն ժամանակի երևոյթ է. որովհետև թէ՛ ազգային խմբագրութիւնից կատարուած յոյն թարգմանութիւնը և թէ Մ. Խորենացու պատմութիւնը, ինչպէս և մեր արաբական վերսիան՝ յոյն անունները միայն գիտեն։ Ս. Գրիգորի պատմութեան մէջ յունական անունների նախապատուութիւնը կապ ունի և այն բանի հետ, որ նոյն իսկ նրա ազգային խմբագրութեան, այսինքն, Ագաթանգեղոսի մէջ էլ

---

1) Արաբական վերսիայում խօսում է Ալբիոս եպիսկոպոսի մասին (ռուս հրատ. եր. 139. 3-4. սոյն Թարգ. 72. 10-16). որ նա կրթուած էր զանազան գիտութիւնների մէջ հռոմների եւ «հեթանոսական» լեզուներով. այսինքն հաւանօրէն հին յունարէն. Յամենայն դէպս ասորերէնի մասին այստեղ խօսք չի կարող լինել.

անունները ընդհանրապէս կրում են յունական վերջաւորութիւն, օրինակ նոյն ինքն Գրիգորի անունը, մինչև անգամ բուն հայկական անունները, որպիսի են Տրդատ, Վրդան՝ յունական ոս, իոս, էս, էն-վերջաւորութիւնն ունեն-Գրիգորիոս, Տրդատէս, Վրթանէս: Եւ այս չպէտք է վերագրել այն բանին, որ Ագաթանգեղոսը յունարէն բնագրի կամ յունարէն որ և է աղբիւրի ազդեցութեան տակ է եղել: Այս կախումն ունի այն բանից, որ առաջին խմբագրութիւնը կազմուել է հայերէն այնպիսի յունասէր գրողից, որ ապրելիս է եղել այնպիսի հայ շրջանակում, ուր, անկախ գրական դաստիարակութիւնից, տարածուած էր հայ անունների յունացումն, ճիշդ այնպէս, ինչպէս մի ժամանակ Ռուսաստանի հայերի մէջ ընդունուած էր իրանց բուն ազգանունների енц կամ янц, ян վերջաւորութիւնը ռուսական ов փոխելը[1]):

7. Կարիք չկայ ասել, որ միայն հայ ազգային խմբագրութիւնն է զարդարուած ժողովրդական երգերով ու զրոյցներով. արաբական բնագրի խմբագրութեան մէջ չեն մտել Տրդատի մասին (Ագաթ. եր. 88,) ժողովրդական զրոյցների հատուածները, ժողովրդական արտայայտութիւնները հարսանեկան հանդէսների մասին «հարսանեաց զպարսն պարել և զկաքաւսն յօրդորել» (Ագաթ. եր. 112), Տրդատի Արարատ գնալու նկարագրութեան մէջ առասպելական դարձուածի հատուածը (Ագաթ. եր. 446), թէև նոյն ինքն Տրդատի անձնաւորութիւնն էլ, ամենայն հաւանականութեամբ վիպական է: Դա, ակներև ժողովրդական հէքաթների հերոս հսկան է (ռուս հրատ. եր. 113, 16—17. յոյն թարգ. 47 11, 12):

8. Արաբական վերսիայում (ռուս հրատ. եր. 71. 31. յոյն թարգ. եր. 7. 20). չը կայ հայ ազգային խմբագրութեան այն տեղեկութիւնը (եր. 80) որ վերաբերում է Գրիգոր լուսաւորչի հայր և Խաւրովի սպանող Անակին, Նրա պարթեւական ծագմանը ևլն. և շատ հաւանական է, որ այս բանը պատահական չէ: Արաբաց Գէորգ եպիսկոպոսը, որ ամենայն հաւանականութեամբ, օգտուել է յոյն բնագրով, չը գիտէ Ս. Գրիգորի պարթևական ծագումը. Նա ասում է, որ Գրիգորը «ծննդեամբ Հռովմից էր» (P. Lagardii Analecta syriaca, 1858, եր. 122):

---

[1]) Հետաքրքիր է այժմ յիշատակել, որ de Lagarde-ը ներկայ հայ բնագիրը համարում էր յունարէնից թարգմանուած. «Wie Trdatios, Trdates zeigen: die Armenier selbst werden ihren König nicht mit griechischer Endung genannt haben» (Ges. Abhandl., եր. 171,).

9. Իւր կարգին, արաբական թարգմանութեամբ յայտնի խմբագրութիւնը մեծ ուշադրութիւն է դարձնում Ս. Գրիգորի, սահմանակից երկրներում, վարած կեանքի և նրա յարաբերութեան վերայ, որ նա ունէր ոչ միայն Կեսարիայի այլ նաև Սեբաստիայի եպիսկոպոսական աթոռների հետ։ Ս. Գրիգորի Ղեոնդիոս արքեպիսկոպոսի մօտ գնալու մանրամասնութիւնը (ռուս հրատ. եր. 123. սոյն թարգ. 57.), նրա ձեռնադրութեան նկարագրութիւնը և յետ այնորիկ հովուապետական աստիճանի բարձրանալը (ռուս հրատ. եր. 127—129 սոյն թարգ. 62—65) յուղարկաւորուելը Կեսարայից (ռուս հրատ. եր. 129. սոյն թարգ. 65), յետ դառնալիս՝ Սեբաստիայի Պետրոս եպիսկոպոսի մօտ հիւր մնալը, և Ղեոնդիոս արքեպիսկոպոսի յանձնարարութեան համեմատ Սեբաստիայի եպիսկոպոսի ուղեկցութեամբ վերադարձը (ռուս հրատ. եր. 131, սոյն թարգ. 66) և ն. հայ ազգային խմբագրութեան մէջ կամ կրճատուած են կամ բոլորովին բաց թողուած։ Ազգայնականութեամբ տոգորուած հեղինակին, որ իրան Ագաթանգեղոս է կոչում, Կեսարիայի և Սեբաստիայի հետ կապը, բնական է, դիւրեկան չէր կարող լինել։

10. Արդէն իրական հնութիւն է այն, որ տեսնւում է արաբական վերսիայի (ըստ երևութին՝ մի անտարբեր վարիանտի) մէջ, որ այդ վերսիայի ընթերցման համեմատ (ռուս հրատ. եր. 121, 13. սոյն թարգ. 55, 10), Տրդատը Ս. Գրիգորի ուղեկցութեամբ Դերջանից Արտաշատ, իսկ Ագաթանգեղոսի համեմատ (եր. 460) Վաղարշապատ է գնում կնոջ, քրոջ և աւագանու հետ խորհրդակցելու՝ հովիւ ընտրելու համար։ Այս տարբեր ընթերցմունքը նշանակութիւն է ստանում կապուելով այն բանի հետ, որ պարզւում է Արտաշատի և Վաղարշապատի վերաբերութեամբ, ծանօթութեան 10 յօդ. f. պրակով ռուս. հրատ. եր. 205, սոյն թարգ. ծանօթ. 1.)։

11. Ս. Գրիգորի զրոյցի համար հին է արաբական վերսիայի և այն մանրամասնութիւնը, թէ Կոստանտինը իմանում է Հայոց թագաւոր Տրդատի դարձը և ուրախանում (ռուս հրատ. եր. 141, 23. սոյն թարգ. 75, 11). դրանով առաջ է գալիս Կոստանտին կայսրի և Հռոմայ կայսերութեան քրիստոնէութեան առաջնութիւնը։ Այս դէպքում խօսքը ի հարկէ ոչ թէ իրական դրութեան (Հայաստանում քրիստոնէութիւնը մուտք է գտել Տրդատից շատ առաջ) մասին է, այլ նոյն զրոյցի տեսակէտից՝ եղելութեան տրամաբանական արտայայտութեան մասին։ Հայոց ազգային խմբագրութեամբ դուրս է գալիս, որ Կեսարիայի կայսերական եկեղեցին քարոզիչ է ուղարկում Հա-

*յաստան, և հարևան տէրութիւնը քրիստոնեայ է դարձնում այն ժամանակ՝ երբ բուն կայսերութեան մէջ կայսրը դեռ կռապաշտ է* (*եր.* 499)։

12. *Արաբական վերսիան աւելի իրական է Ս. Հռիփսիմէի և ընկերների նահատակութեան վերաբերութեամբ։ Նրանց աղօթքները պատահաբար են յիշում և բոլոր եղածների մասին զեկուցանում են որոտմամբ չփոթութեան մէջ ընկած ամբոխից կենդանի մնացածները* (*ռուս հրատ.* 81. 22, 26 *սոյն թարգ.* 16 27—30)։ *Ազգային խմբագրութեան մէջ ասւում է, թէ «այնտեղ պատահաբար կային գ ր ո ղ ն ե ր, որոնք գրում էին բոլոր բառերը, և նրանք կարդացին թագաւորին առաջ»* (*եր.* 109)։ *Սակայն այստեղ էլ հայկական բնագիրը չի պաշտպանում իրանից* (*ըստ* de Lagarde-*ի եր.* 39) *կատարուած յունական թարգմանութեամբ, որից պարզւում է, թէ գ ր ո ղ ն ե ր ի մասին աւելադրութիւնը բոլորովին յետին ժամանակի նորածութիւն է։*

13. *Վերջապէս յոյն յայանի խմբագրութեան հեղինակը, որ երևան է գալիս արաբական վերսիայով՝ վկայ և ականատես է ոչ ամենի այլ միայն մի մասի, իսկ միւս մասի համար նրա աղբիւրներն են «արժանահաւատ մարդիկ»* (*ռուս հրատ. եր.* 148. *սոյն թարգ.* 82)։ *Իսկ հայ ազգային խմբագրութեան հեղինակը ներկայանում է որպէս Տրդատ թագաւորի ատենադպիր, որը որպէս ականատես գրել է բոլորը իւր տիրոջ հրամանով* (*եր.* 510)։ *Հարկ չկայ ասել, թէ ո՞վ է աւելի մօտիկ ճշմարտութեան։ Սակայն Ագաթանգեղոսը հարկաւոր է համարում աւելացնել,* (*եր.* 510—511), *որ իւր ձեռքի տակ եղած նիւթից նա ընտրութիւն է արել և մուծել է իւր պատմութեան մէջ նշանաւոր և կարևոր տեղեկութիւնները, ինչ որ աւելի հեղինակի հայեացքով, ընթերցանութեան համար հասկանալի է,* [1])։

---

1) Գրողի Ագաթանգեղոս անունի համար, որ միայն հայ ազգային խմբագրութեան մէջ կայ (արաբական վերսիան անանուն է)։ Այժմ կարելի է ընդունել Գուտշմիդի սրամիտ բացատրութիւնը. այն է յունական «աւետաբեր» ստուգաբանութիւնը՝։ Բայց գուցէ առաջ էր, մինչեւ ազգային խմբագրութիւնը Ս. Գրիգորի մասին սոյն գիրքը յունասէր հայերից Ագաթանգելիէ էր կոչւում. «Եւանգելիէ»-աւետարան կոչման նման. իսկ մեր խմբագրողը միայն գրքի յունարէն վերտառութիւնը փոխել է յատուկ անուան ձեւի (այդպիսի անուն յիրաւի կար) եւ այդպէս էլ իրան անուանել է։ Եւանգելիէ-ն հայերի մէջ կոչւում է «աւետարան» թարգմանուած մայրենի բառով, ինչպէս եւ վրացիների մէջ է. բայց վրացերէն դեռ պատահում է յունական անուն էլ «Եւանգելէ» ձեւով, թէեւ շատ սակաւ եւ հաւանորէն

Արաբական վերսիայի մէջ այնպիսի մանրամասնութիւններ էլ կան ի հարկէ, որ նրա բնագրի հեղինակինն են: Այստեղ հետաքրքիր է ցոյց տալ մի տեղը, որը յայտնում է հեղինակի քաղկեդոնական լինելը: Արաբական բնագրի խմբագրութեան քաղկեդոնական լինելու օգտին մասամբ խօսում է այն, որ նա մուտք է գտել Սինայի քաղկեդոնական օրթոդոքս վանքի մէջ, և երևում է մի ձեռագրում, որ վաւերացրել է քաղկեդոնական մի վրացի, նրա տետրակները թուահամարելով վրացերէն տառերով, գուցէ և արտագրելով այն: Քաղկեդոնական խմբագրութիւն լինելը նկատելի է և նրանով, որ խմբագրութիւնը Է. դարից հին չլինելով՝ հնաւոր է համարում հայերի, վրացիների, լազերի (աբխազ) և ալանների (ազուանից) եկեղեցական միութիւնը, որը այդ ժամանակ կարելի էր երևակայել միայն քաղկեդոնականութեան հողի վերայ: Հեղինակը, ի հարկէ, այնքան էլ միամիտ չի երևում, որ հայերի և հարևան ժողովուրդների մէջև քրիստոնէութեան առաջին քարոզութեան պատմութեան մէջ պարզօրէն ներմուծէր իւր ժամանակակից օրուայ չարիքի չահագրգռութիւնը: Բայց Ս. Գրիգորի տեսիլքի մէջ ընթերցողն էլ կարող է թոյլ տալ մարգարէական տարր: Այստեղ, մեկնութեան մէջ մացնելով հազիւ նկատելի մանրամասնութիւն մոլորեցուցիչ առաջնորդների մասին՝ հեղինակը բաւական սուր կերպով ակնարկում է հայ տեղական եկեղեցու յարաբերութիւնը դէպի կայսերական քաղկեդոնականութիւնը, քաղկեդոնական սովորական տեսակէտով այս յարաբերութիւնը պատկերացնելով որպէս հեթանոսական հերձուած ընդհանրական եկեղեցուց, և որպէս հայ հովիւների սողոսկումն՝ հրապուրելու դէպ ի հեթանոսութիւն ընդհանրական եկեղեցու հարազատ որդիներին էլ: «Յետ այսորիկ, ասէ Ս. Գրիգոր, տեսի զբազմաթիւ հօտ (այծեաց), գոյն նոցա էր սեաւ. անցանէին նոքա ընդ ջուրսն, որ տեղային յերկնից, և նոյնժամայն փոխէին յօդիս և ի գառինս և փայլէին որպէս զլոյս և առ նոցա լինէր նման ձեան: Ի հօտից յայսցանէ բաժանեցաւ խումբ մի, և վերստին դարձաւ յառաջին գործն իւր եղև սեաւ, որպէս էին

---

ներմուծուած է յունական անմիջական ազդեցութեամբ, բայց առանց առանձին իմն յաջողութեան: Հաւանական է, որ նոյն բառը յունարէն հայերի մէջ էլ գործածական էր: Ես կարծում եմ. որ առածիս հետ կապ ունի արաբական վերսիայի (134. 5-6. սոյն Թարգ. 64, 25—29) «Սակս սրբոյն Գրիգորի. որ ի տղայ տիոց կրթեցաւ ի գիտութեան Աստուծոյ. յուսումն բարեաց եւ սուրբ գրոց». «բարեաց» բառը պէտք է հասկանալ բարեհամբաւել. բարոզել աւետարանել խօսքը.

յառաջ և փոխեցաւ ի գայլս» ևն. (ռուս հրատ. 99, 32 37. սոյն թարգ. 34, 26—33): Եւ այնուհետև Ս. Գրիգորը լսում է մեկնութիւնը. «Իսկ որ ինչ վասն մաքուր հօտին յասր սպիտակ՝ այնոքիկ են, որք փայլին մկրտութեամբ և սրբով Հոգւով ի ձեռն հովուաց իւրեանց: Իսկ այնոքիկ, որք յետոյ դարձան ի ճշմարտութենէ, եղեն անօրէնք, փոխեցան և դարձան ի գայլս՝ այդոքին են առաջնորդք, որք հետևին և զհետ իւրեանց զառածանեն զայլս և տանեն ուր և կամին» * (ռուս հրատ. 101. սոյն թարգ. 35).

Եթէ Ագաթանգեղոսը թոյլ է տուել իրան, իւր որոշ նպատակի համար ընտրել այնպիսի տեղեկութիւններ որ Ս. Գրիգորի ձեռքով ամբողջ Հայաստանի դարձի մասին զրոյցին, ի փառս հայ ազգային եկեղեցու, ազգային խմբագրութիւն տայ, ապաքէն մեր խմբագրութեան (արաբական) հեղինակն էլ նոյն նիւթի վերայ աշխատել է, անկասկած, իւր որոշ նպատակի շահի տեսակէտով: Նրա նպատակը պարզ է. այն է. կայսերութեան սահմաններից դուրս արևելեան բոլոր քրիստոնեայ ժողովուրդներին-հայերին, վրացիներին, լազերին (աբխազ) և ալաններին (ադուանք) ի Քրիստոս միահամուռ ծննդեան գաղափարովը միացնել բիւզանդական մեծ քրիստոնեայ կայսերութեան քաղաքական հովանաւորութեան տակ: Նրանց բոլորին հոգեւորապէս միացնել ի մի եկեղեցի յանձին նրանց ընդհանուրի հովուապետ հայ Ս. Գրիգորի, որ կրթութիւն և ձեռնադրութիւն էր ստացել յոյն եկեղեցում: Ի հարկ է, այդպիսի նպատակի համար պէտք էր սկզբնական տեղական, գաւառային յոյն քարոզիչ նահատակի մասին սկզբնական զրոյցն էլ ներկայացնէր բարեյաջող նիւթ: Բայց հեղինակը իւր աշխատանքի մէջ, բաց ի լազերի մասին յիշատակութիւնից, նոր մանրամասնու-

---

* Մեր պատմութեան տուեալներով այդ և դրա համանման Ս. Սահակի տեսիլքը վերաբերում է Ս. Լուսաւորչի ցեղից քահանայապետութեան վերջանալուն և նրանց անարժան յաջորդներին (Ղազար փարպ. Թիֆլ. 1907 թ. 58—75), իսկ մեր եկեղեցու աւանդութեամբ այդ տեսիլքը վերաբերում է Վարդանանց պատերազմի նախընթաց և հետևող դէպքերին:—«Պարթևական տեսանողին յառաջադոյն ազդեցութեամբն զհաւատոյ որդիս Սրբոյն Գրիգորի պսակաղարդ տեսեալ...: Որ զմերկացեալսն յանձառ լուսոյն զսևացեալսն ի գոյն ածեաց որոշելով ի սուրբ հօտէն ընտրեալ զքոյսն հաւաքեցեր...» (շարակ. սրբոց Ղևոնդեանց): Ծան. Հայ թարգ.

թիւններ քիչ է ներմուծել, և ի հարկէ, պատճառ չունէր զանց առնելու հին պատրաստի նիւթից որ և է բան, եթէ նա ձեռքի տակ ունենար տեղական զրոյցի մեսրոպեան խմբագրութիւնը՝ իւր նպատակին համապատասխան ընդարձակ նախագծով: Մեսրոպի մշակածը, ըստ երևոյթին, այս կողմից շատ աւելի մօտ էր մեր խմբագրութեան: Հայերէն լեզուով մեզ հասել է մի յիշատակարան ևս, որի նպատակը նոյնպէս է աւելի սերտ միացնել հայերին, վրացիներին և աղուաններին ընդհանուր գրագիտութեան գաղափարով, նրանց դարձնել բոլորին մի կուլտուրական մարմին ի դէմս նրանց բոլորի հայ ուսուցչի, որ գտել է հայերի. վրացիների և աղուանների տառերը, և որ նոյնպէս անպայման յունական կրթութիւն ունէր, յունարէն էր: Այս յիշատակարանը Մեսրոպի կեանքի և գործունէութեան պատմութիւնն է, որ վերագրւում է նրա աշակերտ Կորիւնին: Երկու խմբագրութիւն կայ: Նրանց այժմեան բնագիրը կրում է յետնագոյն ժամանակի ազգայնական ոգւով վերամշակութեան յայտնի հետքեր, բայց մի և նոյն դէպքում Մեսրոպի կեանքի յունասիրական սկզբնական խմբագրութեան հիմնական գաղափարը չէ մթագնուած: Նա թերևս կրկնել է Ս. Գրիգորի գործերի յունասիրական խմբագրութեան հիմնական գաղափարը. խմբագրութեան, որ ինչպէս պարզուեց, պատկանում է նոյն Մեսրոպի գրչին:

Ս. Գրիգորի գործերի արաբական վերսիայի գաղափարը քաղկեդոնական հեղինակը այսպիսով ուրեմն ժառանգել է իւր նախընթաց յունասէրից. այն ինքնուրոյն չէ: Սակայն այնուամենայնիւ չնայելով մեր խմբագրութեան հեղինակի դէպի տեղական եկեղեցին անարդար և մեծամիտ վերաբերմունքին, որ թելադրել է նրան նրա քաղկեդոնական դաւանութեան համոզմունքը, չի կարելի չխոստովանել, որ նա անձնապէս ունեցել է բարձր եկեղեցական գիտակցութիւնը: Այդ գիտակցութիւնը արմատացել է հաւանօրէն, հեղինակի ջերմ հաւատով դէպի իւրան հետաքրքրող ժողովուրդների ապագայ կրօնական եղբայրութիւնն ու հոգևոր բարգաւաճումն՝ արտաքոյ ազգայնական պառակտումների: Անյարմար է այստեղ քննել թէ երկրում այս հաւատը որքա՜ն արդարացաւ, և կարո՞ղ էր ընդհանրապէս արդարանալ: Այժմ աւելի հետաքրքիր է նկատել, որ Մեսրոպի կենսագրութեան մէջ մտցրած միտքը, անկասկած, այսպէս կամ այնպէս, իրականութիւն է արտայայտում: Եւ պէտք է կարծել, որ մեր հեղինակի լուսաւոր հաւատը և, հետևաբար, նրա վաստակի գաղափարը, որ պահպանուած է արաբական

վերսիայի մէջ՝ է նոյնպէս հեղինակին ժամանակակից տեղական իրականութեան արտայայտութիւն, թէև, անշուշտ սաստիկ իդէալականացրած։ Այս նշանաւոր չափով դիւրացնում է հեղինակի անձնաւորութիւնը ճշդելը, մանաւանդ եթէ համաձայնենք, որ խմբագրութիւնը քաղկեդոնականի է։ Հեղինակը չի կարող յոյն լինել, ինչպէս առաջ ինձ թւում էր։ Ցիրաւի, յօգուտ յոյնի հեղինակութիւն լինելուն է խօսում մի քանի անգամ կրկնութիւնը, Տրդատի հպատակական յարաբերութեան մասին դէպ ի Կոստանդին կայսրը։ Հռովմէական կայսրը հրաւիրում է հայոց Տրդատ թագաւորին, ի միջի այլոց, հարկ վճարելու համար (եր․ 141, 28, սոյն թարգմ եր․ 75, 20)։ Հայոց թագաւորը «դնայր առ թագաւոր մեծ քան զինքն խաղաղութեամբ առ ի կալ ընդ նորա իշխանութեամբ (եր․ և 143, 27․ սոյն թարգ․ 77, 20) հռովմէական կայսրը «պարտաւորեաց զնոսա (հայոց իշխաններին) հարկս հարկանել» (եր․ և 147, 11․ սոյն թարգ․ 80, 21)։ Զընդայելով հեղինակի այս յայտնի քաղաքական համակրութեանը դէպ ի քրիստոնեայ կայսերութիւնը, նկարագրուած ժողովուրդների վերաբերութամբ նրա սիրառատ և վերին աստիճանի մտերմական շահագրգռութիւնը, իմ կարծիքով, նրա ոչ յունական ծագումը անկասկած է դարձնում։ Գերազանց ուշադրութիւնը, որ նա դարձնում է հայերի վերայ, Տրդատի աւագութիւնը առասպելական գոյներով նկարագրելն և վրացիների, լազերի (աբխազների) ու աղուանների (ալանների) թագաւորների նուաստացնելն ու երկրորդական դարձնելը նոյնպէս պարզ ցոյց են տալիս, որ հեղինակը հայ էր․ բայց հայ քաղկեդոնական, որ իւր շարադրութիւնը ի հարկէ հայերէն է գրել։

Սակայն հայ քաղկեդոնականը, որ այնպիսի կենդանի հետաքրքրութիւն է ցոյց տալիս միաժամանակ և դէպի լազ, վրացի և աղուան եկեղեցիները, ծագմամբ, ամենից առաջ, կարող էր լինել Տայոց գաւառից (վրացերէն Տաօ, հայերէն Տայք)։ Այս բանի ապացոյցն է և նրա շահագրգռութիւնը դէպի իւր ծննդավայր Արտանուշի բդեշխութիւնը, որ դրուած է Հայոց Տրդատ թագաւորի ստորադրեալ իշխանութիւնների թւում (եր․ 115, 6–7․ սոյն թարգ․ 49, 6)։ Այս բանի ապացոյցն են աշխարհագրական անունների տեղական, վրացական ձևերը։ Եթէ հեղինակը տայեցի է, ուրեմն նա գրել է՝ մինչև Ը․ դարի կէսը, երբ դեռ գոյութիւն ունէր հայոց բդեշխութիւնը Արտանուշ գետի հովտում, ուր ի միջի այլոց բդեշխները հիմնեցին և Կաղմախ ամրոցը (Вахуштъ, Descript․ gèogr․, 118)։ Ը․ դարի

*Կէսից սկսած Տայք-Կղ՛արջքից սկսում է վրաց եկեղեցական կազմութիւնը. հայ քաղկեդոնական համայնքը վրացի է դառնում, և այդ օրից սկսած էլ հող չը կար, որ վրացիները, լազերը և աբխազները հայերի հետ միանալու գաղափարով առաջնորդուէին, այն էլ հայ հովուապետի գերիշխանութեան տակ։ Հայերի վերջին քաղկեդոնական կաթուղիկոսը, ըստ երևութին Ը. դարի առաջին քառորդից յետոյ չէ։*

*Այսպէս, ըստ իս, հայերի մէջ Ս. Գրիգորի պաշտամունքի զարգանալով գրականութեան մէջ ստացուեցին հետևեալ հիմնական բաժանումները, մի կողմ թողնելով սկզբնական բերանացի կամ գրաւոր զրոյցները գաւառային, արևմտահայ նահատակ քարոզչի մասին.*

*1. Ս. Գրիգորի մասին գիրքը, որ տարբեր անուններ է կրում, թերևս և Ագաթանգեղէ, յիրաւի. Մեսրոպի գործն է կամ վերագրւում է Տարօնեցի Մեսրոպին,—է Դ. դարի ուղղափառ յունասիրական խմբագրութիւն։ Այդ մեզ չէ հասել։ Հաւանօրէն թարգմանուել է այն յունարէն։ Թերևս 714 թուին այդ թարգմանութիւնից օգտուել է արաբաց Գէորգ եպիսկոպոսը։*

*2. Քաղկեդոնական խմբագրութիւնը Է.-Ը. դարերի գործ է, կազմուել է այն Տայոց գաւառում և թերատ պահպանուել է, յունարէնից թարգմանուած, այժմ հրատարակուող արաբերէնում։ Այն թարգմանուել է, հաւանօրէն, վրացերէն էլ։*

*3. Ագաթանգեղոսի պատմութիւնը Ը. դարի ազգային խմբագրութիւն է։ Նրանից շուտով էլ կատարուել է յունարէն թարգմանութիւնը, որը վերջին անգամ հրատարակեց* de Lagarde»*-ը։ Այն է միայն պահպանուել հայ լեզուով, բայց մի քանի յետնագոյն ուղղումներով ու յաւելումներով։*

---

*Մեզ մնում է բնագրի վերաբերութեամբ մի քանի դիտողութիւններ անել. Նրանք դասաւորուած են հետևեալ յօդուածներում. (մենք հայ թարգմանութեան մէջ դնում ենք միայն* 1 *յօդուածը)։*

*Սինայի Ս. Եկատերինի մատենադարանի* № 460 *ձեռագիրը, որ բովանդակում է ի թիւս այլ վկայաբանական նիւթերի Ս. Գրիգորի նահատակութեան արաբերէն բնագիրը, գրուած է*

*մագաղաթի վերայ, սկիզբը և վերջը, տեղտեղ, և մէջը պակաս է։ Երեսները թուահամարուած են կոպտերէն (ղպտի), տետրակների հիմնական թուարկութիւնը վրացերէն է եկեղեցական հասարակ տառերով։ Այս թուարկութեամբ դատելով՝ սկզբից պակաս է տասներկու տետրակ համարեա ամբողջովին, կայ միայն 10-րդ տետրի ութերորդ թերթը, ճակատի առաջին թերթը։ Ձեռագիրը այժմեան ձևով վերջանում է 34-րդ տետրակի առաջին թերթով։*



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

1. Վաղարշապատ. (սոյն Թարգ. եր. 28, 121. պարբ. 10: Ռուս հրատ. եր. 178. 205. Замѣч. § 10. Ծանօթ. առ f): «Պէտք է ի նկատի ունենալ, գրում է պ. Մառը, որ այստեղ և յատկապէս եր. 98, 12, (սոյն Թարգ. եր. 34, 3.) ուր ձեռագրի ընթերցումն ուղիղ Արտասատ փոխ. Արտաշատ է, հայ ազգային խմբագրութեան մէջ կոչւում է Վաղարշապատ: Որովհետև վերջին քաղաքի անունը արաբական բնագրում հազիւ երբէք է պահպանել իւր իսկական ձևը, այլ ամեն կերպ այլակերպուել է, հեշտ է թափանցել առեղծուածին, որ ցոյց տուած երկու դէպքում էլ մենք ունենք Վաղարշապատ քաղաքի անուան աղաւաղումն, որին հետևել է նրա շփոթումը Արտաշատի հետ. մանաւանդ որ 98, 12 (սոյն Թարգ. 34, 3.) ցուցումն էլ յարմար է գալիս Վաղարշապատին, ուր ցոյց է տրւում հայոց Նախաթոռ տաճարը և սովորական աւանդութիւնը, սակայն պէտք է յիշել, որ հայոց մէջ մի աւանդութիւն էլ կար, որը նոյն տաճարը Արտաշատումն է համարում (Փաւստ. III. 12, Ս. Պ. Բ., Վենետ. եր. 30): Ի դէպ, 92, 18, աւելադրութիւնը ես եմ արել, որով առաջարկուած թարգմանութիւնը դուրս է գալիս «Գնացին ընդ նմա ի քաղաքէն Արտաշատայ [ի Վաղարսապատ]. (եր. 93. սոյն Թարգ. 28, 20 28—29.) առանց աւելադրութեան՝ պէտք է թարգմանուէր. «գնացին ընդ նմա ի քաղաքն Արտասատ»:

—Պ. Մառի ակնարկած աւանդութեան աղբիւր Փաւստոսն ասում է. (Վենետ. եր. 30) «Ապա անցեալ ընդ կամուրջն Տափերայ, մտեալ ի քաղաքն մեծ Արտաշատ, յեկեղեցին դառնային և նստուցանէին զցանկալի մանուկն Յուսիկ յԱթոռ հայրապետական»:—Երասխն անցնելու համար այդ ժամանակ Արարատեան դաշտում յայտնի էր միայն Տափերայ կամուրջը Արտաշատի մօտ, որ գտնւում է Վաղարշապատից դէպի արևելք: Եւ Կեսարեայից վերադարձող Յուսիկը Տափերայ կամուրջից անցնելով պէտք է մտնէր Արտաշատ և ապա դառնար դէպի եկեղեցին, որ հաւանօրէն պէտք է Արտաշատից դուրս դէպի արևմուտք, և այս դէպքում, Վաղարշապատում համարել:

Եթէ «յեկեղեցին դառնային» բառին նշանակութիւն էլ չտանք, «և նստուցանէին զցանկալի մանուկն Յուսիկ յաթոռ հայրապետական» այն նշանակութիւնն ունի, ինչ որ տուած է նրա մասին Կեսարիայում ձեռնադրութեան ժամանակ. «... եկին հասին ի քաղաքն կեսարացւոց. ետուն ի կաթուղիկոսութիւն զՅուսիկն ձեռնադրել, զորդին Վրթանայ: Եւ նստուցին

զնա յաթոռն առաքելոյն Թադէոսի և յաթոռ իւրոյ հաւուն մեծին Գրիգորի. և դարձան անդէն մեծաւ խնդութեամբ» (Փաւստ. եր. 30)։ Ըստ իս «նստուցին յաթոռ», թէ՛ Կեսարիայում և թէ՛ Արտաշատում, ընդարձակ մտքով պէտք է հասկանալ, ապա թէ ոչ, հարկ կլինէր Կեսարիան էլ Ս. Գրիգորի աթոռ համարել։

2. Արտասատ (ռուս հրատ. եր. 99. նոյն թարգ. եր. 34). տես 1. ծանօթութիւն

3. Ի Վաղարշապատ քաղաք (ռուս հրատ. եր. 118. նոյն թարգ. եր. 48) տես դարձեալ 1. ծանօթութիւն։

Ռուս հրատարակիչը երկարօրէն և մանրամասնաբար բացատրում է ապացոյցներով արաբ. վերսիայի լեզուի և կէտադրութեան աղաւաղումները, որոնց պատճառով դժուար է եղել վերծանել գրուածքը, և ընթերցումն, ուրեմն և ռուս թարգմանութիւնը շատ տեղ կատարուել է ենթադրաբար։ Արաբ. վերսիայում աշխարհագրական անունների շփոթութիւններ էլ կան, որոնք հետևանք են, է որ սխալ գրչութեան մանաւանդ կէտադրութեան ժամանակ և է, որ աշխարհագրական անունների անծանօթութեան. Այսպէս օրինակ, Արտաշատ և Վաղարշապատ անունները շփոթուած են իրար հետ։ Հայ յատուկ անունների շփոթութեան մի պատճառն էլ այն է, որ յոյն թարգմանիչը հայ անունը շատ տեղ յունարէն է թարգմանել, և այդ թարգմանութիւնն էլ աղճատումով մտել է արաբ. վերսիայի մէջ։

4. Իշխանն Գիւղսի (ռուս հրատ. եր. 115, [6] և ЗВОРАО. Т. 7. եր. 202. կէտ. 4.։ Նոյն թարգ. եր. 49 [5])։ Գ. Մառը ծանօթութեան մէջ ասում է։ «Իրկեր Գիւղսի, ի տեղի Անգեղայ» Անգեղ է միայն իմ ենթադրութիւնը. Արաբական բառը տառադարձութեամբ h-б-я-с, հ-ր-ն-ս, որ առանց ռեղուլեալ իմ համար է non liquet — անհասկանալի, բայց այս ընթերցումն անուշադրութեան դէպքում հեշտութեամբ կը դառնայ ջ-ի-բ-ս. дж-я-б-с, տարբերութիւնը միայն կէտադրութեան մէջ է։ Այսպիսի ընթերցման ժամանակ 114, [4] (ռուս հրատ.) առանց ձգձգելու կարելի է ընդունել յոյն γύψ=անգղ-կամ արա ... հոլովը γυπός=անգեղ, և այսպէս կունենանք Անգղ-գաւառի անունը յունարէն թարգմանուած։ Որովհետև անգղ, աշխ. անգեղ, հայերէն նշանակում է ցին-коршунъ։

Այդպէս հայ Անգղ-բառ ենթադրութեան դէ. Մառի յունարէն թարգմանութեան մէջ թարգմանուել է γύψ կամ

-արա՝ սեռական հոլովը• γοπός անգղ, ցին• տառադարձութեամբ ħ-6-н-с==Գիպա:

Սոյն ծանօթութեան 5-րդ կէտում պ• Մառը (ռուս հրատ• 202• սոյն թարգ• եր• 49) Դեսպոտեաց-ի համար ասում է• «Դեսպոտեաց բառի մէջ յայտնապէս երեւում է, որ յոյնք յաճախ հայ յատուկ անունները, մանաւանդ երկրների անունները, թարգմանում էին: Բնագրի շարայարութեան համեմատ այս գաւառը պէտք է զուգադիպէր հայ Ծովդեայք-ին, սակայն Ծովդեայք անունը չկայ նոյն իսկ հայերէնից թարգմանուած յոյն բնագրում:

Դեսպոտեաց-ըստ պ• Մառի՝ հայ Շահապիվան բառի յոյն Σααπίανῶν-ի թարգմանութիւնն է: Շահապ նշանակում է սատրապ, իշխող, տէր, և Շահապիվանը յունարէն δεσποτείων կամ δεσπότων-է դարձրել, որը մտել է և արաբ• վերսիայի մէջ: (Ռուս հրատ• եր• 202• կէտ, 5:)

5• Կ-սատ-Ն• (ռուս հրատ• 117, [12]• սոյն թարգմ• 51, [15],)• պ• Մառը ծանօթութեան մէջ (եր• 206, § 11) համարում է հետեւանք նման տառերի շփոթութեան և ասում է «Կ-սատ-Ն արաբական փոխադրութեան մէջ (116, [7]) թերևս նոյնպէս տառերի շփոթութեան հետեւանք է, որ կարելի է բացատրել զանազան կերպով, բայց մի և նոյն մտքով, յատկապէս կարելի է ընթեռնուլ Կասալտոն, այս դէպքում՝ հայերէն Քասաղ—տուն բառի խնկական փոխադրութիւն, որ նշանակում է Քասաղի շրջան, [տառացի տուն]: Կարելի է կարդալ նաև Քասալէտոն փոխ• Քասալէտոն: Այս դէպքում Քասալէտոն պէտք է ընդունել երկրի անուն յունական հայցական կամ սեռական հոլովով վրացական «էր» (ეთ) յոդով• Κασαλετὴν—Κασαλετῶν: Հայերէնում Քասաղ յայտնի է որպէս գետի անուն, որի մօտ էր Վարդգէսի Արտիմէդ անուն քաղաք, որը կարող է աղաւաղուելով՝ լինել, կամ ʽΑσουήνον, ինչպէս կարդացւում է յունական արդի բնագրում համապատասխան տեղում (de Lagarde եր• 81, [1]), և կամ Աշոց, որ հայ ձևի յունական տառացի թարգմանութեան ["Αςων], ճիշդ՝ ընթերցումն է, որովհետև, յիրաւի, հայերէն բառերը յոգ• սեռ• «ոց» վերջանում են, որը արաբերէնում տառերի և կէտերի շփոթութեամբ դժուար չէ τῶν-ի հետ նոյնացնել ʼΑ[ρ]τζρουνίων (այժմեան յունական բնագրում ʼΑρζουρουνῶν-է):

Եթէ ընդունելի լինի նոյնացումն, (ռուս հրատ• եր• 115, [9]• սոյն թարգ• եր• 49• [10]•) М-т-з-нов^ш Մ-ա-զ-ն-այ, կարելի է «Α(р)црупiевъ—Արծրունեաց»-կարդալ:

Անուններն կարգում Կարդալէթ (ռուս• հրատ• եր• 139• [9]•

Յոյն Թարգ. եր. 72 22, և սոյն ծանօթութեան մէջ) պ. Մառը համարում է Կորճէք կամ Կորճայքը: «Կ-մ-ր-դ-լ-ա» (ռուս. հրատ. եր. 115, 13. Յոյն Թարգ. 49, 17) նոյն ընթերցումն ունի. (տես ռուս. հրատ. եր. 106. § 11, a): «Կ-մ-ր-դ-լ-ա», ասում է պ. Մառը, պէտք է կարդալ ,,Кордая" փոխ. ,,Корчайка"=«Կորդայ—Կորճայք».

**6.** Ի տաճարն Ապօղոնի (ռուս. հրատ. եր. 117, 14: Յոյն Թարգ. եր. 15, 16) բացատրութիւն տես ռուս. հրատ. եր. 64, 9-19 և 177, 1-9: Յոյն Թարգ. եր. 84, 13—26. և 119 13—25:

**7.** Ափրուջիա, պ. Մառը (ռուս. հրատ. ծանօթ. եր. 202 կէտ. 6) ասում է. «Ես չկարողացայ Ափրուջիան նոյնացնել Անի ամրոցի հետ: Փռիւգիան արաբերէն այդպէս է կոչւում: Այստեղ ի հարկէ Փռիւգիայի մասին խօսք լինել չի կարող. բայց շատ հաւանական է, որ արտագրողները հայ քաղաքի, իրանց անծանօթ, անունը շփոթել են յայտնի աշխարհագրական անունի հետ: Սակայն այդ էլ կարծել է տալիս, որ բնագրում չէ եղել յունական ʼΑνί—փոխ. ʼΑνία անունի արաբ պարզ փոխադրութիւնը, որից դժուարին կը լինէր Ափրուջիա շինել ....: Թերևս Ափրուջիա բառը առաջ եկած լինի արտագրողի մասամբ աղաւաղումից և մասամբ էլ «սրբագրութիւնից» համարելով այդ բառը Փռիւգիա, և այդ իւր կարգում բարեխիղճ փոխադրութիւն է յունական ἄκραν ʼΑνία (յամուրն Անի) ընթերցման, երբ թարգմանիչը բացի ακραν-բառը յատուկ անուն համարելուց, որպէս նրա մասն, կարող էր շփոթել ν-υ-ի հետ և ըստ այնմ էլ արաբերէնը տառադրել:

—Ափրուջիա արդեօք Ախուրեան կամ լաւ ևս Արփաչայ անունների հետ առնչութիւն չունի. գուցէ քաղաքի անունը արաբ թարգմանիչը կամ արտագրողները նոյնացրել են գետի անունի հետ:

**8.** Երկոքին սոքա-տես սոյն Թարգ. եր. 57, 19. և 99, 13-16: Ռուս հրատ. 123, 20. 159, 35:

**9.** Բուսաց-տես սոյն Թարգ. 67, 27. 99–100: Ռուս հրատ. 133, 24-25. 160:

**10.** Ա-դ-ի-թ.-տես սոյն Թարգ. 70 13. ռուս հրատ. 137 2: Պ. Մառը որ և է բացատրութիւն չէ տուել: Իսկ հայ ազգային Ագաթանգեղոսում ցոյց տրուած տեղը խօսւում է մանուկների մասին, որոնց ժողովեց Տրդատ յոյն և ասորի դպրութեան վարժեցնելու, որոնց մէջ էին և քրմերի մանուկները:

**11.** Դ-ր-գ-կ-ի-տ. տես սոյն Թարգմ. եր 70 և 100. Ռուս հրատ. եր. 137, 9 և 160:

**12.** «Յղեաց նա զԱղբիանոս ի գաւառս Բագրեւանդայ և առ ամենայն բնակիչս կողմանց Եփրատայ (սոյն Թարգ. 71, 23-24: Ռուս հրատ. 137, 30-31):—Ագաթանգեղոսի հայ բնագրում կարդում ենք.».... առեալ ձեռնադրութիւն ի նմանէ, որ առաջնոյն Աղբիանոս անուն, որ ապա կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու (եր. 487):

Աղբիանոսին ընդհանրապէս մեծ դեր է յատկացւում արաբական վերսիայում (սոյն Թարգ. եր. 73) գրելով. «.... զսուրբն Աղբիանոս կացոյց (ս. Լուսաւորիչ) գլուխ ամենեցուն ի կառավարել զերկիրն ....

Աղբիանոսը Հայաստանի հարաւակողման եպիսկոպոսն էր «կողմանցն Եփրատական գետոյն» աւելի ընդարձակ մտքով ընդունելով: Հայրապետական աթոռի գահակալութեան վերաբերութեամբ նրա սերունդը Լուսաւորչի սերնդի հետ մրցում էր:

---

Աւելորդ չենք համարում դնել այստեղ պ. Ն. Մառի հետևեալ բացատրութիւնները.

—Պ. Մառը Դրունք Կեսարիոյ բառը չի կարողանում պարզել. մի արուարձան է այն, թէ Կեսարիայի հռովմէական հին անունն է Porta Caesarea, (Ռուս հրատ. եր. 199. § 7. կէտ 3).

—Պ. Մառը ասում է, չը կարողանալով սկզբում ճշգել արաբերէնը թարգմանեցի благовѣститель (Ռուս հրատ. եր. 81, 37—38.) այդպէս և մենք թարգմանել ենք աւետարանիչ. (սոյն Թարգ. եր. 17, 19.) պէտք է լինի ռուսերէնը «и сдѣлалъ его прославленнымъ передъ врагами» (ռուս հրատ. եր. 191. 32-38). ուրեմն սոյն թարգմանութեան մէջ (եր. 17, 19) պէտք է ուղղել. «և արար զնա փառաւորեալ առաջի թշնամեաց» կամ «և փառաւորեաց զնա առաջի թշնամեաց»:

—Երրորդութիւն (Ռուս հրատ. 131, 22. սոյն Թարգ. եր. 65, 20) տեղը կամ թաղը այդպէս էր կոչւում, ըստ պ. Մառի, (Ռուս հրատ. եր. 211. կէտ. 6.) այդտեղը հաւանօրէն Ս. Երրորդութեան եկեղեցի լինելու պատճառով: Հայաստանում առաջին եկեղեցին ևս ըստ հայ Ագաթ. (եր. 472) Ս. Գրիգորից կառուցուեց Ս. Երրորդութեան անունով:

—Տէրն Տարօնի „Архонтъ Тарона“ (սոյն հրատ. եր. 49, 30. ռուս. հրատ. 115, 20) պ. Մառը ասում է (ռուս. հրատ. եր. 204—5) պէտք է փոխել՝ Տէրն Արծրունեաց:

## ՑԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ.


Աբխազք, Աբխազաց 48, 49, 68, 69, 71, 83, 100, 104, 105, 106,

Աբու-լ Վալիդ 103.

Աբրահամ Նահապետ 14, 42.

Աբրահամ քերական 91.

Ագաթանգեղիէ 122, 127.

Ագաթանգեղոս 83, 84, 87, 88, 90, 91, 97, 115—119. 121, 122, 124, 127. 132, 133

Ա-դ-ի-թ—70. 132.

Աթենաս 54.

Աթինոգէն-Աթանագինէ 66, 67, 99, 114, 115.

Ալանիա 105.

Ալանք 48, 49, 52, 67—71, 83, 100, 104—106.

Աղբիանիոս եպսկ, 71, 73. 133

Աղբիոս եպս. Մամիկ. 72.

Աղուանք, Ալուանք 105,

Անակ հայր Ս. Գրիգորի 120,

Անգել-Անգղ-Դիպս 49. 130

Անի 94. 132.

Անտիոքոս եպիսկոպոս Կարդալէթի 72.

Աշտիշատ (Տատիսատ) 66.

Ապպողոն 51. 132:

Ասխէն (Աշխէն) 46, 59, 64, 67.

Աոն (Աշոյք) 74. 131

Ասպետ 49.

Աստեանք (Հաշտեանք) 71.

Ատրապատական 72.

Արարատ գաւառ 11, 55, 72.

Արարատ լեառն 47. 120.

Արեւմտեան Հայաստան 116.

Արզէն (Երէզ) 53. 116.

Արեւմտեան Կովկաս 110.

Արիստակէս 73, 74, 81, 118.

Արծրունիք 131—133.

Արմաթան 49.

Արսամունիք 72.

Արսուկ եպս. Սերադայ 72.

Արսէն Կաթուղիկոս Վրաց 92.

Արտանուջ 48, 126.

Արտասատ (Արտաշատ) 7, 26-28, 34, 51, 55, 72, 121. 129, 130

Արտաւազդ Մամիկոնեան 57.

Արտաւազդ պետ պատրկաց Հայոց 74.

Արտեմիդ չաստուածուհի 51, 53.

Արտիթ եպսկ. Մաղխազաց 72.

Արտիմէդ 131

Արփաչայ 132

Ափրոդիտէ 66.

Ափրուջիա 53.—132

Բաբելոն 17.

Բագաւան 68, 70.

Բագրեւանդ 71. 133

Բաս եպս, Բեկուղաց 71.

Բասեանք 71.

Բարշամինա 119.

Բդեաշխ 49.

Բզուն 72.

Բիկուղաց 71

Բիւզանդացիք 91.

Բրքիշոյ կաթուղիկոս 94.

Գայեանէ կոյս 8, 11, 13, 14,

18—20, 24, 25, 35, 47, 79, 83։
Գեղցեր 100։
Գինաարեթիոս իշխան Մաղխազաց 72։
Գէորգ եպիսկոպոս արաբաց 91, 97, 101, 118, 120, 127։
Գիլանք 71։
Գիպս (Անգղ) 49։ 130
Գուրիա 106, 110։
Գուրգարք 49։
Գութշմիտ 122։
Գրիգոր Լուսաւորիչ 4—8, 26—30, 35, 36, 39, 40, 44,—48, 50—84, 86—105, 107, 114—125, 127, 130, 133
Գրիգորիոս 120։

Դանիէլ 17,
Դատիաս հազարապետ արքայի 74։
Դարանաղիք 53, 72, 73, 77,
Դեսպոտիք 49։ 131
Դերջան—Դերձան 54, 71, 100, 121։
Դը—Լագարդ 97, 101 118, 122, 127 131
Դիոկղետիանոս 8, 11, 60, 75, 79։
Դիոս 53։
Դիւբուա 113
Դմ. Բակրաձէ 113,
Դուին 72։ 115
Դ-ր-զ-կ-ի-տ 70, 100։ 133
Դրունք Կեսարիոյ 64։ 133

Եգեր 109, 110։
Եգիպտ—մ՛եգիտ-էլ-ի 109։
Եգիպտոս 33։
Եգր-իս 110
Եզնիկ կողբացի 90։
Եզնիկ քահանայ է. գարի 95, 96, 97։
Եզր կաթուղիկոս 93։
Եկատերինէի վանք 127։
Եսայի մարգարէ 42,
Եսթեր 18,
Երասխ գետ 129։
Երուսաղէմ 84, 87, 89, 98, 106 111։
Երրորդութիւն—Սեբաստիայի մօտ տեղ 65, 133
Եւանգելիէ-Աւետարան 122։
Եւթաղիոս եպիսկոպոս 71։
Եւսեբիոս եպիսկոպոս 71։
Եւսեբիոս եպս. Հռովմայ 78,
Եփրատ 54, 58, 68, 71։ 133

Զարևանդ (Зуридонъ) 49։
Զաքարիա կաթուղիկոս 91
Զաքարիա-Հռետոր 100
Զևս 52, 53, 55։ 119։
Զուարթնոց եկեղեցի 93։

Թադէոս առաքեալ 94։ 130
Թիլ աւան 54։
Թովմաս 71։
Թորդան (Միթրոդան) 53։ 119

Իրակլիբէթ 71։
Իբիր-բ-զ-խուա 70։ 113
Իբն-Խորդադբէն 99։
Իմերէլ 108։
Իմեր, իմեր-խևի 108, 110
Իմերեթիա 95, 106, 108, 110։ 114
Իսահակ նահապետ 14,
Իսրայէլ (եբրեր) 10։
Իվեր, Իվերիա 106, 107, 110, 113,—116
Իտալիա 77։

Լազիք, Լազիստան 52, 95,

99, 100, 105, 106, 110, 116
Լանգլուա 90,
Լիկիանոս, Լիկինոս պատրիկ 68, 78.
Luigï Carrer. 90.

Խաբիբա-Հաբիբա (Ագապէս) եպսկ. Սուսբարետացւոց 72.
Խոսրով հայր Տրդատայ 120.
Խորխոռունիք 49.

Ծովդեայք 131
Ծոփք 49.

Կախի, (Կախեթիա) 107
Կաղմախ 126
Կապադովկիա 59, 71, 95.
Կասալտուն 131
Կարդալէթ 72. 132
Կարմիր Ծով 17.
Կարրինէր Ա. 83, 84.
Կեսարիա (Մազակա Մաժակ) 56—59, 62, 64, 67, 74, 76, 77, 95, 98, 99, 121. 129, 130, 133
Կիրիակոս եպիսկոպոս Արսամունեանց 72,
Կիւրիոն կաթղկս. վրաց 92.
Կորիւն 125.
Կղարճք 127.
Կ~մ~ր~դ~լ. 49. 132
Կոլ~խ~իդի 107.
Կոմիտաս կաթուղիկոս 90.
Կ. Պօլիս 105.
Կոստանդին կայսր 75, 77, 78, 80, 81, 83, 84, 93 98. 114, 115. 121, 126.
Կովկաս 52, 106.
Կորդուաց 49.
Կորճայք, կորճէք 131
Куликовскій 104, 105.
Կուսարօղուկտա Խոսրովի—դուխտ 26—28, 46, 59, 64, 67,
Կ~սատ~ն 51. 131
Կոլ~խ~ի 107
Կօսիք 49.
Կօրան 100, 101.

Համազասպ 89.
Հայաստան, Հայք 11, 12, 24, 26, 36, 48, 49, 53, 59, 63—66, 70, 71, 72, 74—84, 86, 87, 89, 91—95, 97, 105, 110 112. 115,—119, 121, 124
Հաշտեանք (Աստեանք) 71.
Հեղինէ դշխոյ 80, 84, 89. 114
Հնդիկք 33.
Հռիփսիմէ կոյս 8, 11, 13, 14, 17—21. 23—26, 35, 37, 46, 60, 79, 83, 90, 99, 101. 122
Հռովմ 8, 11 12, 24, 60, 75, 77—79, 81, 120, 121

Ղազար Փարպեցի 89, 94, 96, 97. 124
Ղևոնդեանց շարակ. 124
Ղևոնդիոս եպիսկոպոս Կեսարիոյ 57—59, 62—64, 66—68 74, 76, 77, 98, 99, 121,

Ճան 110
Ճորոխ 109.
Ճրագալոյց Աստուածայայտնութեան, և Զատկի 90

Մազակա, Մաժակ (Կեսարիա) 57
Մաղխազունիք, Մաղխազք 49, 72.
Մամիկոնեանք 49, 72, 99.
Մայմոնիդ 103.
Մանիարէթ 73

Մանուաս 74·
Մասիս գաւառ 47·
Մասրոպ, Մեսրոպ 96, 97, 125, 127·
Մարիամ Աստուածամայր 52, 113, 114
Մար-Աւգինա-Մարուգէ (Ս. Եւգինէոս) 90·
Մարտվէլի 113, 114, 115,
Մարքվարդ 99, 100·
Մելիտինէ 105,
Մեծ Սոփէնք 71·
Մես-խ-ի 107·
Միթրոդան (Թորդան) 53·119
Միջագետք 49·
Մնացորդաց գիրք 87·
Մնգրելիա 106, 108,—110· 113 114, 115,
Մոկսոեն 71·
Մոսո-խ-ի 107
Մովսէս եպս. Իբակլիբէթի 71·
Մովսէս Խորենացի 83, 84, 87, 107, 110· 117· 119·
Մուսլիմ Բ. Աբու-Մուսլիմ 99·
Մուրավիեվ 113, 114·
Մուքադդասի 103
Մ-տ-զ-ն. 49· 131·
Mrs Gibson 98
Մ-ֆ-ն-ս 49
Յակոբիկ 91·
Յայէլ 18,
Յեխուդի-իբն-Տիբբոն 103·
Յեսու Սիւնակեաց 91·
Յովհան Իմաստասէր 118
Յովհաննէս աւետարանիչ 32
Յովհաննէս եպս. Կուանի-տացւոց 72·
Յովհաննէս Մկրտիչ 41, 63, 66, 67, 99· 114, 115,
Յովհան Ոսկեբերան 91·
Յովնան 17·
Յուստինիանոս 105,106, 111· 114·
Յունաստան 92·
Յուսիկ 129, 130

Նաբուգոդոնոսոր 26·
Նաքալաքեվ 113, 114
Ներսէս Մեծ 89, 97·
Ներէս Գ. Շինող 93·
Նիկիայի ժողով 81, 97· 118,
Նիկողաոս Ադոնց 90· 96
Ն. Մառ, բ, 83, 86, 111, 129—133
Նիկողայոս Միստիք 104·
Н. Кондаковъ 115
Նոյ 14, 15,
Նունէ կոյս 86, 117, 118,
Nöldeke 103,

Շատիսատ (Աշտիշատ) 66
Շուշան 17·

Ոսկի-Հորդա 105·
Ուտիք 49·

Պարսկաստան 23·
Paul de Lagarde 91· 120·
Պետրոս առաքեալ 78·
Պետրոս եպիսկոպոս Սեբաս-տիոյ 65—68· 121,
Պետրոս Մայումացի 111·
Պոնտոս, պոնտացւոց աշխարհ 59, 80·
Պրուդենցիոս 99·
Պրօկոպիոս 104, 112, 114·

Ջաւախի· 107·

Ռեբեկա 14, 17.
Ռշտունիք 49.
Ռուսաստան 120

Սաբինա 98,
Սահակ Պարթև 89, 96; 97.
Սատաղ'ա 71.
Սառրա 14, 18,
Սաքարթվելօ 107.
Սեբաստիա 58, 65, 66, 70, 71, 99, 113, 114, 121.
Սեբաստիայի 40 մանկունք 113, 114, 115, 121'
Սեղբեստրոս Հռովմայ եպս. 76, 83, 84.
Սև ծով 106.
Սիմէօն միտրոպօլիտ 105.
Սինա, 83—85, 98, 103, 104, 111. 123, 127
Սինակարեան բնագիր 84.
Սիրագ 72.
Սիւնիք 49, 71.
Սոմխեթիա, Սոմե-խ-ի 107.
Սուանեթիա 110.
Սուանք 111, 112.
Սուրամ 108,
Սուսքարետացիք 72
Ս. Երկիր 111,
Սուքիաս Վ. Պարոնեան 90.
Սոփրոնիոս 71.
Սպեր 109, 110.

Վաղարշապատ 12, 28, 48, 72, 80,—81 121. 129, 130
Վանական վարդապետ 89.
Վարդգէս 131
Վարդան վարդապետ 89.
Վիրք, Վրաստան 48, 49, 52, 68,—70, 84—87, 100. 105——107, 110, 112, 117, 118

Վ. Ր. Րօզէն 85.
Վրթանէս—Վարդան 73, 74, 120, 130

Տայք 126, 127.
Տայք Կղարջք 127.
Տասատէս, Տաճատ 74.
Տարօն 49, 66, 72, 133
Տափիրայ կամուրջ 129
Տեխուրա գետ 114
Տիրիկէս եպիսկոպոս Ատրա-պատականի 72.
Տրդատ Տրդատէս 5, 7, 11, 12, 26, 37, 48, 50—52, 54—57. 59, 64, 67, 69, 72,—78, 80, 81, 90, 98, 99. 119, 122, 126, 132

Րագիկ 100,
Րուսք 66, 67, 99, 100. 132

Ցաթիա, Ցաթա արքայորդի Լազաց 105.

Փարիզ 90.
Փաւստոս Բիւզանդացի 84, 110. 129, 130
Փիլոն 88.
Փղշտացիք 14.
Փոքր Սոփէնք 71
Փռիւգիա 132
Փօտ պատրիարք 91

Քանան (երկիր) 14
Քասախ գետ, Քասալտուն 131,
Քարթլ 107.
Օղա 27, 28.
Friedländer 103

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Երես | տող վեր. | տող ներք. | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|---|
| 3 | — | 3 | փչեցեն | փչիցեն |
| 6 | — | 17 | զհեթանոս | զհեթանոսս |
| 7 | — | 12 | աանել | տանել |
| 12 | 2-3 | — | զարս [77]։ ի կանանց | զարս [77] ի կանանց |
| 15 | — | 7 | տարակուսեմք | տարակուսիմք |
| 17 | — | 12 | աապոյ | տապոյ |
| 25 | — | 9 | նորա | նոցա |
| 31 | — | 13 | զլխոր | զլխորս |
| 32 | 11 | — | լրիւ իւրով Հայր | լրիւ իւրով։ Հայր |
| 36 | 1 | — | անոքիկ | այնոքիկ |
| 41 | 19 | — | էի մեռեալ որպէս | էի որպէս մեռեալ |
| 43 | — | 13 | ընդ ոտիք | ընդ ոտիւք |
| 49 | 5-6 | — | Անգելայ | Անգեղ |
| 49 | — | 14 | Գուգարաց | Գուրգարաց |
| 69 | — | 14 | էառ ալիք | էառ, ալիք |
| 71 | 6 | — | ի Փոքու | ի փոքու |
| 72, | 9 | — | [132] | [139] |
| 72, | — | 14 | Տերիկէս | Տիրիկէս |
| 75, | — | 15 | Նա նմա (Տրդատ) | Նա (Տրդատ) նմա |
| 109 | 19-20 | — | զուկորդ | զուգորդ |
| 115 | — | — | 215 | 115 |



